ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1961 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ






# ԴԵՊԻ ԳՈՐԾ

ՍՄԿՊ XXII համագումարն ընդունեց պարտիայի նոր Ծրագիրը, կոմունիստական հասարակարգի կառուցման կոնկրետ, գիտականորեն հիմնավորված պլանը: Սովետական ժողովուրդն այն ընկալեց որպես իր սեփական ծրագիրը, իր հարազատ ու կենսական գործը, որպես իր կյանքի ու գործունեության մեծագույն նպատակը:

Կոմունիստական հասարակարգի կառուցման համար պահանջվում է նյութատեխնիկական ամուր բազա: Այդ նպատակով նախատեսվում է առաջիկա երկու տասնամյակների ընթացքում մեր երկրում ստեղծել այդ բազան, որը հնարավորություն կտա ՍՍՌՄ-ում ապահովելու աշխարհում աշխատանքի ամենաբարձր արտադրողականություն և կենսամակարդակ ու դրանով իսկ շահելու մրցությունը կապիտալիզմի հետ:

Վիթխարի են մեր աշխատանքների պլանները: Նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծումը հնարավորություն կտա արդյունաբերական արտադրանքն առաջիկա քսան տարում ավելացնել ոչ պակաս քան վեց անգամ, գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը՝ 3,5 անգամ: Կոմունիզմի հաստատման համար անհրաժեշտ է նաև նյութական ու հոգևոր բարիքների առատություն: «Ապահովել հասարակության անընդհատ առաջադիմությունը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում — նյութական և կուլտուրական բարիքներ տալ հասարակության յուրաքանչյուր անդամի՝ ըստ նրա աճող պահանջմունքների. անհատական կարիքների ու ճաշակի—այս է կոմունիստական արտադրության նպատակը»:

ՍՄԿՊ XXII համագումարի կենսանորոգ մթնոլորտի շնորհիվ արմատական տեղաշարժեր են կատարվում մեր կյանքում, լայն ասպարեզ է բացվել աշխատավորական մասսաների ստեղծագործական նախաձեռնության, ինքնագործունեության և ակտիվության զարգացման համար: Աշխատավորներն ավելի լայնորեն են ներգրավվում պետության և արտադրության կառավարման գործում: Պարտիան ընդլայնում է իր ղեկավար և ուղղություն տվող ներգործությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ավելի ամրապնդելով իր կապերը ժողովրդի հետ: Եվ, վերջապես, պարտիան մերկացրեց, գաղափարապես ջախջախեց և իր ճանապարհից դեն շպրտեց անձի պաշտամունքի տիղմում թաղված հակապարտիական խմբին, անսկզբունք ֆրակցիոներներին:

Այժմ գլխավորը՝ ՍՄԿՊ Ծրագրի կենսագործումն է, որը, ինչպես ընկեր Խրուշչովն է ասում, կախարդանքներով ու կոչերով չի կատարվելու: Կոմունիզմը կարելի է կառուցել և այն կկառուցվի միայն ու միմիայն միլիոնների ստեղծագործական աշխատանքով: Պարտիայի նոր Ծրագրի ուժն ու կենսունակությունը

սովետական մարդկանց անձնվեր աշխատանքի մեջ է, նրանց եռանդի ու բանականության նպատակահարմար օգտագործման մեջ:

Կոմունիզմը և աշխատանքն անբաժանելի են: Մասսաների աշխատանքային գործունեությունը հասարակության առաջադիմության վճռական պայմանն է. աշխատանքը միշտ եղել ու մնում է մարդու ստեղծագործական եռանդի դրսևորման գլխավոր ոլորտը, հասարակության կյանքի հիմքը: Առանց աշխատանքի, առանց նյութական բարիքների արտադրության, մարդիկ չեն կարող ապրել ու զարգանալ: Սակայն միայն սոցիալիզմի ժամանակ աշխատանքն ստացավ իր իսկական կոչումը, այն դարձավ իրոք պատվի ու փառքի գործ: Աշխատավորներն առաջին անգամ սոցիալիստական կարգերում հնարավորություն ունեցան ծավալելու իրենց ունակություններն ու տաղանդները: Նոր կյանքի կառուցման տարիներին պարտիան դաստիարակեց կոմունիզմի գործին նվիրված այնպիսի մարդիկ, որոնց բարոյական բարձր հատկություններն ու հերոսական գործերը ողջ աշխարհին հիացմունք են պատճառում:

Կոմունիստական հասարակությունը, որը հիմնվում է բարձր կազմակերպված արտադրության և զարգացած տեխնիկայի վրա, փոխում է աշխատանքի բնույթը, մեծապես թեթևացնում է այն, բայց հասարակության անդամներին չի ազատում աշխատելու անհրաժեշտությունից: Առաջիկայում կառուցվող նյութական նոր հիմքի վրա սոցիալիստական աշխատանքն աստիճանաբար վերանելու է կոմունիստականի, այսինքն դառնալու է կենսական անհրաժեշտություն:

Դա կլինի մի հասարակություն, որի դրոշի վրա գրված է լինելու՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների»: Բայց այն բնավ չի լինի անարխիայի, անգործության ու դատարկապորտության հասարակություն: «Ով չի աշխատում, նա չի ուտում» մեծ սկզբունքը գործելու է նաև կոմունիզմի օրոք: «Մարդը գեղեցիկ ու փառավոր է իր աշխատանքով, իր գործունեությամբ,— ասաց XXII համագումարում իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը,— նրանով, ինչ նա ստեղծել է, ինչ կերտել է: Աշխատանքի մեջ են դրսևորվում մարդկանց ընդունակություններն ու տաղանդները, մարդու հանճարը. աշխատանքի մեջ է մարդկության անմահությունը»:

Կոմունիզմի ժամանակ աշխատանքը և կարգապահությունը ծանրություն չեն լինի մարդու համար: Հասարակական բարօրության համար կատարվող աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջ, այն կդադարի սոսկ ապրուստի միջոց լինելուց և կդառնա իսկական ստեղծագործություն, հաճույքի աղբյուր: Բայց ընդհանուրի բարօրության օգտին կատարվող կամավոր այդ աշխատանքը, ըստ հակումների աշխատելու մարդկանց ներքին պահանջը, սովորությունը երբեք էլ չի նշանակում, որ կոմունիստական հասարակության մեջ աշխատանքը կլինի ինչ-որ չգիտակցված, բնազդական սովորույթ. ընդհակառակը, հասարակության անդամների համար աշխատանքը կլինի գիտակցված անհրաժեշտություն, որովհետև կոմունիստական բարձր գիտակցականությունը, աշխատասիրությունը, կարգապահությունը նոր մարդու անկապտելի հատկություններն են:

Համաժողովրդական աշխատանքի պրոցեսում այժմ արդեն ստեղծվում են ոչ միայն կոմունիզմի նյութական ու հոգևոր արժեքներ, այլև աճում է մարդկանց գիտակցությունը, ձևավորվում է ապագայի քաղաքացին, կոմունիզմի ակտիվ կառուցողը: Աշխատանքի ու հանրային տնտեսության նկատմամբ կոմու-



նիստական վերաբերմունք զարգացնելը նոր մարդու դաստիարակության գլխավոր միջոցն է, այն կազմում է մեր դաստիարակչական ողջ աշխատանքի էությունը:

Այժմ արդեն մեր Հայրենիքի միլիոնավոր մարդիկ հանդես են գալիս որպես նոր, կոմունիստական աշխատանքի ներկայացուցիչներ: Օրավուր ստվարանում են ապագա պիոներների շարքերը, որոնց նշանաբանն է աշխատել ու ապրել կոմունիստաբար. երբ 1960 թվականի մայիսին այդ շարժման մեջ ընդգրկված էին հինգ միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ապա պարտիայի XXII համագումարի նախօրյակին նրանց թիվը հասավ քսան միլիոնի: Մեր ռեսպուբլիկայում ավելի քան 3400 բրիգադներ, ցեխեր ու հերթափոխություններ պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար: Այդ մարդկանց համար աշխատանքն արդեն դարձել է բարոյական պարտք:

Ժողովուրդը կոմունիզմի կառուցման վճռական ուժն է, նոր հասարակարգի հաղթանակը մասսաներն են կռում: Բայց կոմունիստական հասարակությունը կազմավորվում է ոչ թե տարերայնորեն, այլ մասսաների գիտակցական գործունեությամբ: Որպեսզի սովետական յուրաքանչյուր մարդ իր տեղը գտնի կոմունիզմ կառուցողների շարքում, անհրաժեշտ է դաստիարակել մասսաներին, զարգացնել նրանց նախաձեռնությունն ու ակտիվությունը, ուղղելով այն ստեղծագործական պլանաչափ աշխատանքի:

Ժողովրդական մասսաներին ուղղություն տվող և կազմակերպող ուժը եղել ու մնում է Կոմունիստական պարտիան, սովետական ժողովրդի փորձված ավանգարդը: Նա է հանդիսանում հասարակության ռևոլյուցիոն վերափոխման ղեկավարը, ժողովրդի կամքի արտահայտիչը: Կոմունիստական շինարարության մեջ մասսաների դերի աճման համընթաց բարձրանում է պարտիայի դերը: Դա օրինաչափ երևույթ է, պայմանավորված մեր երկրում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական, քաղաքական խոշոր տեղաշարժերով:

Կոմունիստական շինարարության ներկա էտապում գլխավորը կազմակերպական աշխատանքն է, մասսաների կազմակերպումը: Առաջադրված խնդիրների հաջող լուծումը մեծ չափով պայմանավորված է նրանով, թե պարտիական կազմակերպություններն ինչպես կկարողանան զարգացնել աշխատավորների ձեռներեցությունը, եռանդը և ճիշտ նպատակամղել նրանց խանդավառությունը:

«Համագումարն ընդգծում է,— ասված է ՍՄԿՊ XXII համագումարի բանաձևում,— որ պարտիական ղեկավարության ուժը մասսաներին կազմակերպելու և նրանց ջանքերը գլխավոր խնդիրների լուծման նպատակին ուղղելու կարողությունն է, շատ մարդկանց տաղանդները, գիտելիքներն ու փորձը մեծագործությունների համար ի մի ձուլելու արվեստը: Միշտ հիշելով լենինյան այն ցուցումները, որ մեր պարտիան ուժեղ է մասսաների գիտակցականությամբ և ակտիվությամբ, հարկավոր է է՛լ ավելի եռանդուն կերպով բարձրացնել աշխատավորների կոմունիստական գիտակցությունն ու քաղաքական ակտիվությունը, նրանց է՛լ ավելի սերտորեն միավորել պարտիայի շուրջը»:

Այդ նպատակով հարկավոր է մշտապես կատարելագործել պարտիական ղեկավարության մեթոդները, կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի ձևերն ու եղանակները, վճռականորեն բարձրացնել պարտիական կազմակերպությունների մարտունակությունը և բոլոր կոմունիստների ակտիվու-

թյունը: Ամեն մի կոմունիստ պետք է լինի կոմունիզմի շինարարության ակտիվ ու գիտակից մարտիկ:

Պարտիական կազմակերպությունները բոլոր աշխատավորներին պետք է դաստիարակեն բարձր գաղափարայնության և կոմունիզմի նկատմամբ նվիրվածության, աշխատանքի ու հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով: Աշխատանքում ավելի շատ նախաձեռնություն, բանիմացություն, հմտություն և հաստատակամություն—այս է օրվա պահանջը:

Կոմունիզմի կառուցման ընթացքում արտադրության տեխնիկայի և աշխատանքի բնույթի մեջ եղած խոշոր փոփոխությունների, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հիման վրա մեր երկրում կվերացվեն ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունները: Ներկայումս արդեն տեղի է ունենում ֆիզիկական ու մտավոր աշխատանքի օրգանական միաձուլման պրոցեսը: Տնտեսության բոլոր ճյուղերում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների (ավտոմատիկա, էլեկտրոնիկա, կիբեռնետիկա, ատոմային էներգիա և այլն) լայն արմատավորման, արտադրության տեխնիկայի արագ ու խոր վերակառուցման շնորհիվ առաջ են եկել բոլորովին նոր պրոֆեսիաներ. առաջավոր տեխնիկայով ու գիտելիքներով զինված բանվորի ու կոլտնտեսականի աշխատանքն իր մեջ զուգակցում են թե՛ ֆիզիկական և թե՛ մտավոր աշխատանքի տարրեր: Նյութական արտադրության ոլորտում աշխատողներից շատ-շատերն ունեն միջնակարգ կրթություն. առանց արտադրությունից կտրվելու մեզ մոտ միջնակարգ ու բարձրագույն դպրոցներում, տեխնիկական ուսումնարաններում ու դասընթացներում սովորում են հազարավոր բանվորներ ու կոլտնտեսականներ: Մեր մարդկանց կրթական ու տեխնիկական հասունության մասին են վկայում գյուտարարության ու ռացիոնալիզացիայի լայն ծավալումը, նորարարների ստեղծագործական որոնումները: Այժմ շատ դեպքերում մեր առաջավոր բանվորին դժվար է տարբերել ինժեներից, առաջավոր կոլտնտեսականին՝ գյուղատնտեսից: Մեր խնդիրն է՝ լուրջ ուշադրություն հատկացնել նյութական բարիքներ ստեղծող մարդկանց հետագա կրթության, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի անընդհատ բարձրացման հարցերին:

Անհրաժեշտ է աշխատավորներին դաստիարակել աշխատանքի առաջավոր փորձի հիման վրա, հանրային տնտեսությունը վարելու լավագույն օրինակներով, ամեն կերպ խթանել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների շարժումը: Դժբախտաբար ռեսպուբլիկայի շատ պարտիական կազմակերպություններ դեռևս քիչ ուշադրություն են նվիրում արտադրության առաջավորների, մեր փարոսների աշխատանքի ուսանելի փորձի ուսումնասիրման, ընդհանրացման և տարածման գործին, առանձին տեղերում սոցիալիստական մրցությունը չի կրում գործարար բնույթ: Մեր մամուլում՝ ամսագրերում ու թերթերում, դեռևս անբավարար է լուսաբանվում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների, արտադրության փարոսների փորձը: Մամուլի էջերում հազվադեպ են երևում դրական աշխատանքի գիտականորեն հիմնավորված ու վերլուծված ուսանելի նյութեր: Մեծ Լենինը մամուլի գլխավոր խնդիրն էր համարում՝ մասսաներին դաստիարակել սոցիալիստական առօրյայից վերցված կենդանի, կոնկրետ օրինակների ու նմուշների հիման վրա, ամենայն մանրամասնությամբ ծանոթացնել աշխատանքի առաջավոր փորձին, կոչ անելով սովորել լավից:



Այժմ պետք է ավելի վճռական պայքար մղել անցյալի մնացուկ՝ պորտաբուծության դեմ: Մեր քաղաքներում ու գյուղերում կան մարդիկ, որոնք չեն մասնակցում հանրային գործերին, ոչինչ չտալով հասարակությանը, ապրում են նրա հաշվին: Պարտկազմակերպությունների խնդիրն է՝ աշխատանքային ուղուց շեղված յուրաքանչյուր մարդու մասնակից անել հանրօգուտ գործունեության:

Բարձր գնահատելով աշխատանքի նկատմամբ բարոյական խթանների կարևոր դերը, Լենինը բազմիցս ընդգծել է, որ միայն մասսաների խանդավառության վրա չի կարելի կառուցել սոցիալիստական հասարակություն և որ հսկայական է նյութական խթանների նշանակությունը: Ելնելով այդ դրույթից, պարտիան գտնում է, որ կոմունիզմի կառուցումը պետք է հենվի աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքների վրա, ճիշտ զուգորդելով աշխատանքի նյութական ու բարոյական ազդակները: Ըստ աշխատանքի վարձատրությունն առաջիկա քսանամյակի ընթացքում կմնա աշխատավորների նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման հիմնական աղբյուրը: Անհրաժեշտ է անընդհատ բարելավել աշխատանքի ու տեխնիկական նորմավորումը, աշխատանքի վարձատրման ու պարգևատրման սիստեմները, նյութական խրախուսման ձևերը և այլն:

Ավարտվում է յոթնամյակի երրորդ տարին: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները լուրջ հաջողություններ են ձեռք բերել մեր կյանքի բոլոր ասպարեզներում: Այդ հաջողություններն ուրախացնում են մեր աշխատավորներին և վստահություն ներշնչում, որ կոմունիստական շինարարության բոլոր նախագծումները կկատարվեն հաջողությամբ:

Համաժողովրդական սոցիալիստական մրցության ավանգարդում է Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը, որը պայքարում է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչման համար: Այստեղ մեծ գործ է կատարվում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները արտադրության մեջ արմատավորելու, տեխնոլոգիական պրոցեսները մշտապես կատարելագործելու և արտադրության ներքին ռեզերվները խելացիորեն օգտագործելու ուղղությամբ: Դա կիրովցիներին հնարավորություն է ընձեռել սիստեմատիկաբար գերակատարելու նախատեսված առաջադրանքները, թողարկելու բարձրորակ արտադրանք և տնտեսելու մեծ քանակությամբ հումք, էլեկտրաէներգիա, միջոցներ: Գործի վերածելով հարազատ պարտիայի XXII համագումարի որոշումները, նրանք ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 13-ին կատարեցին համախառն արտադրանքի տարեկան պլանը, խնայելով 1300 տոննա հիմնական հումք և այլն: Գործարանի 9 ցեխ, 28 բրիգադա և 15 հերթափոխություն արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչման:

Աչքի ընկնող հաջողություններ է ձեռք բերել Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոլեկտիվը: Այստեղ նոյեմբերի յոթին կատարվեց համախառն արտադրանքի 11 ամսվա պլանը, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ յոթ տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացված արտապլանային կուտակումը կազմեց 240 հազար ռուբլի: Պղնձարջասպի ցեխը նոյեմբերից աշխատում է 1962 թվականի հաշվին, իսկ քիմիական ցեխը, որն արժանացել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման, պայքարում է հաջորդ տարում հասնելու 1965 թվականի համար նախատեսված մակարդակին:

Ուրախալի լուրեր են ստացվում կոլտնտեսային գյուղից: Արտաշատի շրջանի Այգեզարդի կոլտնտեսությունը պատվով է կատարել գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը վաճառքի գծով ստանձնած իր սոցիալիստական պարտավորությունները. յուրաքանչյուր հեկտարից հավաքվել է 151 ցենտներ խաղող, 38 ցենտներ բամբակի հումք, յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել է 1750 կիլոգրամ կաթ: Ընթացիկ տարում Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզը գերակատարելով սոցիալիստական պարտավորությունը՝ երկրին հանձնեց 28 հազար տոննա բարձրորակ միրգ, ստանալով 400 հազար ռուբլու գերշահույթ: Կալինինոյի շրջանի Նովոսելցովո գյուղի կոլտնտեսությունը, հաղթահարելով անբարենպաստ կլիմայական պայմանները, մեծ հաջողությունների հասավ անասնաբուծության բնագավառում, ժամկետից շուտ կատարվեցին ու գերակատարվեցին պետությանը մթերքների վաճառքի առաջադրանքները, անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելացավ կաթի ու մսի արտադրությունը:

Սակայն չի կարելի չնկատել մեր աշխատանքի ստվերոտ կողմերը, թերությունները ու վրիպումները: Ռեսպուբլիկայում բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ դեռևս թերակատարում են իրենց արտադրական ծրագրերը. մի շարք գործարաններ ու կառույցներ չեն կատարում աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման և այլ որակական ցուցանիշների պլանը: Լրջորեն ետ է մնում կապիտալ շինարարությունը, ցածր են շինմոնտաժային աշխատանքների տեմպերը: Այսպես. Երևանի էլեկտրաշարժիչների գործարանը ո՛չ միայն սիստեմատիկաբար չի կատարում արտադրական պլանները, այլև շատ ցածր են նրա տեխնիկա-տնտեսական ցուցանիշները:

Դեռևս անբավարար է բնակարանային շինարարության վիճակը: Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարում խիստ քննադատության ենթարկվեց էլեկտրալամպերի գործարանի ղեկավարությունը և պարտկազմակերպությունը. չնայած ժամանակակից բարձր արտադրողական սարքավորումներին և արտադրության առկա հսկայական ռեզերվներին, ձեռնարկությունը տևականորեն ետ էր մնում, չէր կատարում արտադրական պլանը: Ավելին, արտադրանքի որակը խիստ ցածր էր, միջին աշխատավարձի աճը գերազանցում էր աշխատանքի արտադրողականության աճին: Վերադաս օրգանների լուրջ միջամտությունից հետո միայն վերջին ամիսներին սկսել է այստեղ դրությունը բարելավվել, ձեռնարկությունը դուրս է եկել վերելքի ուղին: Գյուղատնտեսության ասպարեզում դեռևս կան բազմաթիվ թերություններ, դժվարություններ և չլուծված խնդիրներ: Ունենք կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք ետ են մնում, չեն կատարում իրենց սոցիալիստական պարտավորությունները: Իջևանի շրջանի Փոլադ գյուղի կոլտնտեսությունը ընթացիկ տարում պարտավորվել էր ստանալ 1603 ցենտներ կաթ, բայց նոյեմբերի մեկի դրությամբ ստացել է միայն 832 ցենտներ, 275 ցենտներ մսի դիմաց՝ 246 ցենտներ և այլն: Հացահատիկի, կարտոֆիլի բերքատվության, կաթի ու մսի արտադրության առաջադրանքները մեծ չափով թերակատարել է Կիրովականի շրջանի Եղեգնուտի կոլտնտեսությունը և այլն:

Այս ամենը բացատրվում է նրանով, որ տնտեսության պարտիական ղեկավարման մակարդակը դեռևս չի համապատասխանում նոր խնդիրների մակարդակին, բացակայում է գործի խոր իմացությունը: Ներկայումս յուրաքանչյուր պարտիական կազմակերպության, յուրաքանչյուր պարտիական աշխատողի գործունեությունը պետք է գնահատել միայն ըստ գործարանի ու կառույցի,



կոլտնտեսության ու սովխոզի, գիտական հիմնարկի, շրջանի աշխատանքի կոնկրետ արդյունքներով:

Անհրաժեշտ է բարձրացնել կազմակերպչական աշխատանքը, պարտիական ղեկավարության մակարդակը, կազմակերպել աշխատավորների ուժերը և նրանց ջանքերն ուղղել տնտեսական շինարարության խնդիրների լուծման գործին: Բարելավել տնտեսության ղեկավարումը և պլանավորումը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումներով ստանալ առավելագույն տնտեսական արդյունք, ամեն կերպ արմատավորել տնտեսական հաշվարկը, ամեն կերպ հասնել տնտեսման ու խնայողության, կրճատել կորուստները, բարձրացնել արտադրանքի որակը և իջեցնել ինքնարժեքը — այս է պարտիական կազմակերպությունների կարևոր գործը:

ՍՄԿՊ XXII համագումարը պարտիական կազմակերպությունների հատուկ ուշադրությունը հրավիրեց կադրերի հետ աշխատանքը բարելավելու, նրանց ընտրության և դաստիարակության հարցերի վրա. ղեկավար աշխատանքում տեղ չպետք է գտնեն հետամնաց, գոռոզացած, կյանքից կտրված, գաղափարազուրկ և անսկզբունք մարդիկ:

Կատարելագործել տնտեսության կառավարման մեթոդները, այդ ամենից առաջ նշանակում է վճռական պայքար մղել աշխատանքում դեռևս եղած քարացածության, պահպանողականության դեմ: Արդի պայմաններում առաջնահերթ նշանակություն է ստանում պարտիական, պետական ու հասարակական վերահսկողության գործի ճիշտ կազմակերպումը, աշխատանքի թերությունների սկզբունքային ու համարձակ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բացահայտված թերությունների արագ վերացումը: Ավելի բարձր կազմակերպվածություն, հստակություն ու կարգապահություն աշխատանքում:

Մեր առջև ծառացած են մեծ խնդիրներ: Պարտիան սովետական ժողովրդին կոչ է անում աշխատել հաստատակամորեն հանուն կոմունիզմի հաղթանակի: Այդ խնդիրները լուծելու համար, XXII համագումարում իր զեկուցման մեջ ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը, անհրաժեշտ է իսկական հերոսություն: Բայց մեր պայմաններում հերոսությունը ո՛չ միայն խոյանք է, հաստատակամություն, ջանասիրություն: Դա միաժամանակ հմտություն է, գիտելիքներ, բարձր կուլտուրա, առաջավոր տեխնիկա, նորարարություն: Բոլոր սովետական մարդիկ պետք է աշխատեն այնպես, որ երբ կառուցվի կոմունիզմի պայծառ շենքը, յուրաքանչյուրը կարողանա ասել՝ այստեղ կա նաև իմ ավանդը:

Մեր երկիրը գտնվում է մեծ վերելքում, նվաճելով բարձունք բարձունքի ետևից: Մեր բոլոր ստեղծագործական ուժերը, եռանդն ու կորովը ներդնենք կոմունիստական շինարարության պլանները կենսագործելու համար:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱՑՈՒՅՑԸ ՈՒՂՂՎԱԾ Է ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄ

*Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ*

Պատմական գիտությունների թեկնածու

*Հիրավի, խորապես ճշմարտացի է հնչում ժողովրդական իմաստությունն այն մասին, որ կյանքում ամենաուժեղն իրերի տրամաբանությունն է։ Դրա մի նոր պերճախոս վկայությունն է ՍՄԿԿ XXII համագումարի ազդեցությունը, որով փաստորեն շնչում է ամբողջ աշխարհը։ Եվ դա օրինաչափ է, որովհետև համագումարի ընդունած որոշումներն ունեն համաշխարհային պատմական նշանակություն։*

*Արդիականության քաղաքական ու տեսական մեծագույն փաստաթուղթ է մեր պարտիայի Ծրագիրը՝ կոմունիզմի կառուցման Մանիֆեստը, որը վերաբերում է բովանդակ մարդկության ապագային։ Նրա նկատմամբ ոչ ոք անտարբեր լինել չի կարող։ Այն ամբողջովին գիտական է և ելնում է կյանքի հասունացած պահանջներից։ Ծրագրի գլխավոր առանձնահատկությունն այն է, որ մի կողմից համապարփակ է, այսինքն՝ տալիս է մարդկային հասարակության զարգացման ներկա էտապի ընդհանուր վերլուծությունը և ընդգծում, որ կոմունիզմը բոլոր ժողովուրդների զարգացման մայրուղին է և գլխավոր նպատակը, իսկ մյուս կողմից՝ խիստ կոնկրետ է, այսինքն՝ տալիս է ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման բազմակողմանիորեն մշակված պլանը, որպես մեր երկրի անմիջական խնդիր։ Ընդ որում կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում պարտիան դիտում է որպես սովետական ժողովրդի ինտերնացիոնալ խնդիր, որը համապատասխանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, բոլոր երկրների պրոլետարների, աշխատավորների շահերին։*

*Որքան մենք ժամանակով հեռանանք XXII համագումարից, այնքան ցայտուն կերևա նրա նշանակությունը, որովհետև այն հզոր լուսարձակի նման ցույց տվեց, որ մարդկության զարգացման ամբողջ ընթացքը օրակարգի հարց է դարձրել կապիտալիզմի կործանումը և կոմունիզմի հաղթանակը, որ մեր դարաշրջանը կոմունիզմի հաղթանակի դարաշրջան է։*



*Այժմ, քան երբևիցե, արագ է ընթանում մարդկային հասարակության զարգացումը, որը պատմական օրինաչափությամբ տանում է դեպի կոմունիզմ։*



*Հին աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման այդ պրոցեսը տեղի է ունենում մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշի ներքո։*

*Մեր իմաստուն առաջնորդ Վ. Ի. Լենինը սիրում էր կրկնել մեծ գերմանացի Գյոթեի խոսքերը՝*

Չոր է, բարեկամ, ամեն տեսություն,
Կյանքի ծառն է միշտ դալար և սիրուն։

*Ակներև է, որ այս թևավոր արտահայտության էությունն ամենևին էլ տեսության թերագնահատումը չէ, ինչպես կարող է թվալ առաջին հայացքից, այլ ընդհակառակը, թեորիայի ու պրակտիկայի միջև անխզելի կապի անհրաժեշտության հաստատումը. դորշ է կյանքից կտրված թեորիան և հավերժ կանաչ է ու կենսահաստատ կյանքից բխող ու կյանքի ուղին լուսավորող թեորիան։ Հենց այդպիսին է մարքսիզմ-լենինիզմը, որը գիտություն է պրոլետարիատի ու բոլոր աշխատավորների ազատագրական պայքարի ու հաղթանակի, կոմունիզմի կառուցման մասին։*

*Հայտնի է, որ մարդկության լավագույն զավակները դեռ հնագույն ժամանակներից երազել են ազատ ու բարեկեցիկ կյանք։ Ժամանակի ընթացքում ծնունդ առան նաև սոցիալիզմ ու կոմունիզմ հասկացությունները, որոնց հետ լուսամիտ մտածողները կապում էին մարդկանց երջանիկ ապագան։ Բայց դրանք բոլորը մնացին սոսկ երազողներ, որովհետև այն ժամանակ դեռևս չկար այդ երազները կենսագործող ուժը՝ պրոլետարիատը։ Առաջինը միայն Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսն էին, որ ավելի քան հարյուր տարի առաջ սոցիալիզմն ուտոպիայից դարձրին գիտություն և ցույց տվին, որ մարդկային հասարակության բնապատմական զարգացմամբ կապիտալիզմը ևս, որպես վերջին շահագործողական հասարակարգ, պետք է կործանվի ու իր տեղը զիջի միակ արդարացի հասարակարգին՝ սոցիալիզմին-կոմունիզմին, որի ժամանակ աշխատավոր մարդիկ կդառնան իրենց ստեղծած նյութական ու հոգևոր բարիքների տերը և կլինեն տնտեսական ու կուլտուրական բարձր մակարդակի վրա։ Բայց անցումը կապիտալիզմից դեպի սոցիալիզմ ոչ թե տարերային, այլ ռևոլյուցիոն պրոցես է, և նրա գլխավոր ուժը պրոլետարիատն է։ Այդպիսով, չնայած այն ժամանակ մարդկության վառ ապագան դեռ բավականաչափ հեռու էր, Մարքսը և Էնգելսը կոմունիզմի հարցը դրին գիտական ամուր հողի վրա՝ ամեն ինչ բխեցնելով հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափություններից։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը գրել է. «Մարքսի մոտ փորձի հետք անգամ չկա ուտոպիաներ հորինելու, դատարկ գուշակություններ անելու այնպիսի բաների մասին, ինչ որ չի կարելի գիտենալ։ Մարքսը դնում է կոմունիզմի հարցն այնպես, ինչպես բնագետը կդներ մի նոր, ասենք, բիոլոգիական տեսակի զարգացման հարցը, երբ մենք գիտենք, որ այն հենց այս կերպ է ծագել ու այսինչ որոշ ուղղությամբ է կերպարանափոխվում» (Երկեր, հ. 25, էջ 595)։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան դարձավ պատմության մեջ ամենամեծագույն ռևոլյուցիան, որովհետև աշխարհում կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դարագլխի սկիզբը դրեց։ Բացահայտելով այդ արմատական շրջադարձի էությունը՝ Վ. Ի. Լենինը գրել է. «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (Երկեր, հ. 31, էջ 491)։*

Բուրժուազիայի գաղափարախոսները հազարավոր հատորներ են գրել, որպեսզի ապացուցեն, թե մարքսիզմը երբեք չի իրականանա։ Բայց կյանքը դառը կերպով ծաղրեց նրանց։ Մեծ Հոկտեմբերից հետո սոցիալիզմն ստացավ իր որոշակի հասցեն՝ ՍՍՌՄ, որը և պատմական կարճ ժամանակամիջոցում դարձավ ո՛չ միայն աշխարհի ամենահզոր սոցիալիստական տերությունը, այլև մեր հինավուրց մոլորակի վրա առաջադեմ ուժերի ձգողության կենտրոնը։ Այդ առթիվ ճշմարտացի են հնչում ֆրանսիական գրող ու հրապարակախոս Պիեր Պասեի հետևյալ խոսքերը. «Ռուս ժողովուրդը՝ հիմնելով սովետական հասարակություն, հանդես եկավ պատմության պիոների դերում։ Նա առաջինն է ստեղծել այն հասարակական ձևերը, որոնք զարգացման շնորհիվ վաղ թե ուշ կդառնան համընդհանուր։ Դա հերոսական նախաձեռնություն էր»։

Եթե Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո ընկած ժամանակաշրջանի առաջին էտապը բնութագրվում է նրանով, որ Սովետական Միությունը շուրջ երեք տասնամյակ մնում էր որպես աշխարհի միակ սոցիալիստական պետությունը, շրջապատված գիշատիչ իմպերիալիստներով, ապա երկրորդ էտապը բերեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորում, որը խստորեն փոխեց ուժերի հարաբերակցությունը միջազգային ասպարեզում հօգուտ սոցիալիզմ-կոմունիզմի։ Ամփոփելով ու գիտականորեն ընդհանրացնելով միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման մեկդարյա հերոսական ուղու արդյունքները, ՍՄԿՊ Ծրագիրն արձանագրեց. «Բոլոր երկրների պրոլետարների քաջարի ու անձնվեր պայքարը մարդկությանը մոտեցրեց կոմունիզմին։ Սկզբում տասնյակ ու հարյուրավոր, ապա հազարավոր ու միլիոնավոր մարդիկ, ոգեշնչված կոմունիզմի իդեալներով, գրոհի գնացին ընդդեմ հին աշխարհի։ Փարիզի Կոմունան, Հոկտեմբերյան ռևոլյուցիան, սոցիալիստական ռևոլյուցիաները Չինաստանում և Եվրոպայի ու Ասիայի մի շարք այլ երկրներում՝ սրանք են կոմունիզմի հաղթանակի համար միջազգային բանվոր դասակարգի մղած հերոսամարտերի պատմական կարևորագույն սահմանագծերը։ Անցել ենք ժողովրդի երջանկության համար պայքարող մարտիկների արյունով ողողված հսկայական մի ուղի, փառապանծ հաղթանակների և ժամանակավոր պարտությունների ուղի, մինչև որ կոմունիզմը, որը մի ժամանակ սոսկ երազանք էր, դարձավ արդիականության մեծագույն ուժը, մի հասարակարգ, որը կառուցվում է երկրագնդի հսկայական տարածություններում»։

Ավելին, այժմ համաշխարհային սոցիալիստական սիստեմն ավելի ու ավելի է դառնում հասարակության զարգացման վճռական գործոնը։ Դա մեր դարաշրջանի գլխավոր բնորոշ գիծն է, կոմունիզմի հարաճուն ազդեցության բացահայտ ցուցանիշը։

Չի կարելի մոռանալ, որ արդի դարաշրջանի գիտական բնութագրումն ունի տեսական ու գործնական մեծ նշանակություն, որովհետև միայն ռեալ իրականության օբյեկտիվ հաշվառման ու ճանաչողության հիման վրա կարելի է մշակել մարքս-լենինյան պարտիաների ճիշտ ստրատեգիա ու տակտիկա։

Կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թ. և 1960 թ. խորհրդակցությունները, ՍՄԿՊ XXII համագումարն ու մեր պարտիայի նոր Ծրագիրը ցույց տվին, որ արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, դա երկու հակադիր սոցիալական սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական



և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի ու նրա գաղութային սիստեմի կործանման դարաշրջանը, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Այդ դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։

Պատմությունը լիովին ապացուցել է սոցիալիզմի առավելությունն ու գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ։ Շնորհիվ սոցիալիստական սիստեմի չտեսնված արագ տեմպերի վերացվեց Ռուսաստանի դարավոր հետամնացությունը, և ՍՍՌՄ-ը դարձավ առաջավոր տնտեսության ու կուլտուրայի երկիր։ Սովետական մարդիկ արդեն գրոհում են տիեզերքը՝ առաջ բերելով ամբողջ աշխարհի հիացմունքն ու սերը։ Հասնելով սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակին, սովետական ժողովուրդը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը և յոթ մղոնանոց քայլերով գնում է դեպի առաջ։ Նա պայքար է ծավալել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, արտադրողական ուժերի զարգացման հզոր վերելքի համար։ Սովետական Միությունն արդեն 1970 թվականին բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով կգերազանցի ամենահզոր կապիտալիստական երկրին՝ ԱՄՆ-ին, իսկ 1980 թվականին մեզ մոտ հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ։

Տնտեսության հետ միասին կզարգանան նաև կոմունիստական արտադրահարաբերությունները, կուժեղացվի մասսաների կոմունիստական դաստիարակությունը, և կձևավորվի ապագա հասարակության մարդը։ Գլխավորելով մեր հերոս ժողովրդի հաստատակամ առաջընթացը, Սովետական Միության Կոմունիստական պարտիան ի լուր ամբողջ աշխարհի հանդիսավոր կերպով ազդարարում է, որ սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։ Դա այն իդեալական հասարակարգն է, որն ազատ է ճնշման ու շահագործման ամեն մի ձևից, պատերազմներից ու նրանց արհավիրքներից։ Կոմունիզմը կոչված է ամբողջ աշխարհում և բոլոր ժողովուրդների համար հաստատելու Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն։

Կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում հանդիսանում է սոցիալիստական բոլոր երկրների համագործակցության մեջ կոմունիստական հասարակարգի ստեղծման բաղկացուցիչ մասը։

Սովետական Միության հետ միասին արագ քայլերով առաջ են գնում ժողովրդական դեմոկրատիայի երկրները, որոնք կառուցելով սոցիալիզմի հիմքերը, թևակոխել են զարգացած սոցիալիստական հասարակության շրջանը։ Սոցիալիստական բոլոր երկրները համակված են միևնույն գաղափարներով և նպատակներով. նրանք իրենց ազգային շահերը զուգակցում են ինտերնացիոնալ շահերին և իրականացնում եղբայրական բազմակողմանի համագործակցություն, արտադրության կոորդինացում, միասնական պլանավորում ու տնտեսական փոխօգնություն։ Հատկապես մեծ է Սովետական Միության դերը, որն անշահախնդիր օգնություն է ցույց տալիս ժողովրդական դեմոկրատիայի երկրներին։

Ընդհանուր առմամբ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ի հակադրություն կապիտալիզմի, աչքի է ընկնում քաղաքական, տնտեսական ու կուլտուրական նոր տիպի հարաբերություններով և հանդես է գալիս որպես միաս-

նական ու անխախտ միություն։ Բնականաբար, այդ միության եղբայրական համագործակցության շրջանակներում չի կարող պատահել, որ երկրներից մեկը հասնի կոմունիզմի լիակատար հաղթանակին, իսկ մյուսը դեռ գտնվի սոցիալիզմի կառուցման նախնական աստիճանում։ Եթե կապիտալիզմի համար բնորոշ է անհամաչափ զարգացումը, որն ավելի է խորացնում նրա հակասությունները և հանգեցնում թալանչիական ու ավերիչ պատերազմների, ապա սոցիալիզմի պայմաններում կապիտալիզմի լուծը թոթափած ժողովուրդների զարգացման մակարդակն արագությամբ համահարթվում է, և սոցիալիստական բոլոր երկրների համար բացվում է կոմունիզմին ավելի կամ պակաս միաժամանակյա անցնելու հեռանկար։

Սոցիալիստական երկրների համերաշխությունը թուլացնելու ամեն մի փորձ դավաճանություն է ո՛չ միայն իր երկրի ժողովրդին, այլև սոցիալիզմի համաշխարհային սիստեմին, միջազգային պրոլետարիատին։ Հենց դրան էլ ձգտում են իմպերիալիստները, որպեսզի սեպ խրեն սոցիալիստական երկրների միջև։ ՍՄԿՊ-ն և բոլոր երկրների կոմպարտիաները դատապարտում են Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարներ Էնվեր Խոջային և Մեհմետ Շեխուին, որոնք վարում են պառակտիչ գիծ։ Նրանք, կառչելով Ստալինի անձի պաշտամունքից, իրենց երկրում սերմանում են արատավոր բարքեր, կիրառում են ռեպրեսիաներ։ Նրանք չեն ուզում հասկանալ, որ անհատի պաշտամունքի և Մոլոտովի, Կագանովիչի, Մալենկովի ու մյուսների հակապարտիական ֆրակցիոն խմբի մերկացումը բխում է մարքսիզմ-լենինիզմի ոգուց, Կոմունիստական պարտիայի իմաստնությունից ու խղճից, ժողովրդական մասսաների շահերից, կոմունիզմի հաղթական շինարարության անհրաժեշտությունից։ Եթե ալբանական ղեկավարների համար թանկ են իրենց ժողովրդի շահերը, ապա նրանք պետք է հրաժարվեն իրենց սխալ հայացքներից և կանգնեն սոցիալիստական համագործակցության ու միջազգային կոմունիստական շարժման միասնության ուղու վրա։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հանդիսանում է մարդկային հասարակության զարգացման բարձրագույն նվաճումը և ներկայացնում է ապագա համաշխարհային կոմունիստական հասարակության նախատիպն ու հիմնական կորիզը։ Օրեցօր աճում ու ամրապնդվում է այդ սիստեմը՝ հուրախություն ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության և ի սարսափ բոլոր աշխատավորների թշնամիների։



Մարդկության ճակատագրի որոշման հարցում վճռական դեր է կատարում երկու սիստեմների խաղաղ մրցությունը, որը տեղի է ունենում ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական, կուլտուրական, գիտանագիտական հարաբերությունների բնագավառներում։ Կյանքն անառարկելիորեն ցույց է տալիս, որ բոլոր այդ ասպարեզներում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հանդիսանում է առաջադիմության մարմնացումը և ընթանում է զարգացման վերընթաց գծով, իսկ կապիտալիստական սիստեմը կատարյալ ռեակցիա է և ապրում է վայրէջք ու անկում։

Հաղթանակած սոցիալիզմի երկրները համաշխարհային ռևոլյուցիայի զարգացման վրա իրենց գլխավոր ներգործությունն ունենում են տնտեսական



շինարարությամբ։ Հասարակական զարգացման ամբողջ ընթացքը ցույց է տալիս, որ սոցիալիզմի ու կապիտալիզմի տնտեսական մրցության մեջ առավելությունն ու հաղթանակը սոցիալիզմի կողմն է։ Այսպես, օրինակ, եթե համաշխարհային սոցիալիստական սիստեմի արդյունաբերական արտադրանքի ծավալը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ ավելացել է գրեթե 7 անգամ, ապա կապիտալիստական երկրներինը՝ $2^1/_2$ անգամից էլ պակաս։ Նախատեսվում է, որ սոցիալիզմի երկրների բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ 1980 թվականին կհասնի $^2/_3$-ի։ Ինչ խոսք, որ սոցիալիստական ճեպընթացը սլանում է շատ ավելի արագ, և նրա հետ այլևս չի կարող չափվել կապիտալիստական շոգեքարշը։ Պատահական չէ, որ տնտեսական այդ մրցահրավերը տագնապով են ընդունում իմպերիալիստական մոնոպոլիստները, որոնք նույնիսկ հարկադրական խոստովանություններ են անում սոցիալիստական սիստեմի առավելության մասին։ Այսպես. բանկիր Դոլանդ Դեվիդն ասել է. «Արբանյակի հետևից մենք տեսնում ենք հրթիռը, իսկ հրթիռի հետևից առաջավոր գիտությունն ու տեխնոլոգիան։ Սակայն այդ բոլորի հետևում կա ինչ-որ ավելի մեծ բան։ Դա մարդկային հաստատությունների սոցիալական սիստեմն է»։

Եթե սոցիալիզմն ու կոմունիզմն անշեղորեն աճում են ու հզորանում, ապա կապիտալիզմը գնում է դեպի թուլացում ու կազմալուծում։ Վ. Ի. Լենինը դեռ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից առաջ, երբ կապիտալիզմը տիրում էր ամբողջ աշխարհին, ապացուցեց, որ իմպերիալիզմը նեխող ու մեռնող կապիտալիզմ է, պրոլետարական ռևոլյուցիայի նախօրյակը։ Ներկայումս իմպերիալիզմն ապրում է իր մայրամուտը։ Ավելի է սրվում կապիտալիզմի սիստեմի ընդհանուր ճգնաժամը, որը թևակոխել է իր **Երրորդ** շրջանը։ Այդ էտապի գլխավոր առանձնահատկությունն այն է, որ նա սկսվել է ոչ թե պատերազմական ժամանակաշրջանում (ինչպես առաջին երկուսը), այլ խաղաղ պայմաններում և արտահայտվում է սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի նոր վերելքով ու իմպերիալիզմի հետագա թուլացմամբ։ Բնորոշ է, որ այժմ աշխարհի երեք միլիարդ բնակչությունից մեկ միլիարդն ապրում է սոցիալիզմի սիստեմի երկրներում, մեկուկես միլիարդը՝ տնտեսապես թույլ զարգացած երկրներում, որոնց մեծ մասն ազատագրվել է գաղութային լծից և միայն կես միլիարդը՝ մոնոպոլիստական կապիտալի երկրներում։ Բայց պետք է հաշվի առնել նաև այն, որ այդ կես միլիարդի մեծամասնությունն էլ կազմում են աշխատավոր մասսաները, որոնք օրեցօր ավելի են համակվում սոցիալիզմի գաղափարներով։

Կապիտալիզմը դարձել է մարդկային հասարակության առաջխաղացման արգելակը և դա էլ հանդիսանում է նրա անխուսափելի կործանման ապացույցը։ Բուրժուական արտադրահարաբերությունները դարձել են կապանքներ արտադրողական ուժերի զարգացման համար։ Մի կողմից կաշկանդվում է գիտատեխնիկական առաջադիմությունը, իսկ մյուս կողմից կապիտալիստական տնտեսությունն ստանում է միակողմանի՝ ռազմական բնույթ։ Ընդհանուր առմամբ բուրժուական երկրների էկոնոմիկան աչքի է ընկնում անկայունությամբ, անկումայնությամբ ու ճգնաժամերով, որոնք իրենց հետ բերում են բազմամիլիոն աշխատավոր մասսաների գործազրկություն ու պաուպերիզացիա։

Ճիշտ է, վերջին շրջանում բուրժուական երկրներում լայն զարգացում է ստանում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, բայց դա բոլորովին էլ սպեղանի չէ նրա համար և ոչ էլ «համարյա սոցիալիզմ», ինչպես փորձում են

հավատացնել ռևիզիոնիստները։ Իրականում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը կոչված է միավորելու մոնոպոլիաների և պետության ուժը մի ընդհանուր մեխանիզմի մեջ, որպեսզի կասեցնի բուրժուական կարգերի կործանումը, ճնշի ռևոլյուցիոն ու ազգային-ազատագրական շարժումները և նյութի ագրեսիվ պատերազմներ։

Կապիտալիստական սիստեմի հակաժողովրդական ռեակցիոն բնույթը ցայտուն կերպով արտահայտում է ամերիկյան իմպերիալիզմը, որը գործում է գանգստերական մեթոդներով, կատաղի պայքար մղում դեմոկրատական կազմակերպությունների դեմ, արմատավորում բռնության ռեժիմ, վարում ռասսայական քաղաքականություն։ Ատելությունը դեպի սևամորթները հասել է այն աստիճանի, որ Ֆլորիդայում պահանջել են արգելել «Երեք խոճկորներ» հայտնի գրքույկը, քանի որ այնտեղ ասվում է, թե գայլը կերավ սպիտակ ու խայտաբղետ խոճկորներին, իսկ սև խոճկորը խաբեց գայլին։

Ամերիկյան իմպերիալիզմն ուռճացել է ժողովուրդների արյան գնով և դարձել ո՛չ միայն համաշխարհային շահագործող, այլև համաշխարհային ժանդարմ։ Նա հանդես է գալիս որպես մեծ ու փոքր ժողովուրդների դահիճ, արխիռեակցիոն ու դիկտատորական ռեժիմների պաշտպան և աշխատավոր մասսաների ազատագրական շարժումների ոխերիմ թշնամի։ Ամենայն իրավամբ, ԱՄՆ–ի մոնոպոլիստական բուրժուազիան միջազգային ռեակցիայի գլխավոր հենարանն է։ Բայց, ինչպես ասում է անգլիական առածը, փաստերը համառ բաներ են և չի կարելի մոռանալ պատմության դասերը։ Այն պետությունը, որը դառնում է միջազգային ռեակցիայի պատվար, իր դեմ է հանում ժողովուրդների ցասումը և կործանվում։ Այդպես պատահեց ռուսական ցարիզմի և գերմանական ֆաշիզմի հետ։ Կասկած չկա, որ նույն անփառունակ բախտին կարժանանա նաև ամերիկյան իմպերիալիզմը։

Բուրժուազիայի հոգևոր աղքատության մասին է վկայում այն, որ նա իր գաղափարական-քաղաքական գլխավոր զենքը դարձրել է մերկապարանոց հակակոմունիզմը, այսինքն՝ բացահայտ զրպարտչական կամպանիան, գիտության ու պրակտիկայի հրեշավոր կեղծումը։ Հակակոմունիզմը բուրժուական իդեոլոգիայի դեգրադացիայի ծայրահեղ աստիճանն է և պատահական չէ, որ այդ սև դրոշի հետևից գնում են ամենակատաղի ռեակցիոներները՝ մոնոպոլիստները, ֆաշիստները, կղերականները և ուրիշներ։ Բայց նույնիսկ կապիտալիզմի ջատագովներն անգամ սկսել են հասկանալ, որ բուրժուազիայի գաղափարական այդ զենքն անպետք է գործածության համար։ Այսպես, ամերիկյան ոչ-անհայտ հրապարակախոս Ուիլյամ Բարրետը գրել է. «Հակակոմունիզմի քաղաքական բովանդակությունը վերածվել է անվերջ ու ձանձրալի դատարկաբանության այն մասին, թե կոմունիզմը վատ է... գաղափարների աղքատությունը, գաղափարներ, որոնց կարելի էր հակադրել կոմունիզմին, դառնում է խիստ ակնհայտ և խիստ վտանգավոր»։ Հիշատակության արժանի է նաև ամերիկյան ժուռնալիստ Սուլցբերգերի հայտարարությունն այն մասին, որ ԱՄՆ-ի «քաղաքականությունը դարձել է համանիշ հակակոմունիզմին։ Բայց միայն հակակոմունիզմը քաղաքականություն չէ։ Դա ցույց տվեց Հիտլերը»։ Բայց հազիվ թե ամերիկյան իմպերիալիստները լսեն իրենց հրապարակախոսին։ Այնուամենայնիվ ո՛չ հակակոմունիզմը, ո՛չ էլ կապիտալիզմի գունազարդումը զանազան կեղծ-դեմոկրատական անուններով («ժողովրդական», «մարդասիրական» և այլն), չեն կարող փրկել սապատավորին, նրան միայն գերեզմանը կուղղի։



Ուրեմն, դժվար չէ տեսնել, որ ժամանակը պատմական օրինաչափությամբ գործում է հօգուտ սոցիալիզմի-կոմունիզմի և դամբանական է կարդում զառամյալ կապիտալիզմին։ Բայց չպետք է մոռանալ, որ ինչքան էլ «պտուղը հասունանա», կապիտալիզմն ինքն իրեն գերեզման չի իջնի, մանավանդ որ իմպերիալիզմը դեռ բավականաչափ ուժեղ է և ժողովուրդների ազատագրման համար պահանջվում է ուժերի նոր լարում, ռևոլյուցիոն պայքարի նոր սխրագործություններ։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, իսկ կյանքն էլ հաստատում, որ հին աշխարհի արմատական վերափոխման համար պետք է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացությունը միացնել պրոլետարիատի ու բոլոր աշխատավորների, ճնշված ժողովուրդների ռևոլյուցիոն եռանդի ու պայքարի կազմակերպման հետ։ «Համաշխարհային իմպերիալիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— պետք է ընկնի, երբ յուրաքանչյուր երկրի ներսում շահագործվող և հարստահարվող բանվորների ռևոլյուցիոն գրոհը, հաղթահարելով քաղքենիական տարրերի դիմադրությունը և բանվորական արիստոկրատիայի չնչին վերնախավի ազդեցությունը, կմիանա մարդկության հարյուրավոր միլիոնների ռևոլյուցիոն գրոհի հետ, մարդկություն, որը մինչև հիմա պատմությունից դուրս է կանգնել, դիտվել է լոկ իբրև նրա օբյեկտը» (Երկեր, հ. 31, էջ 280)։

Կոմունիստները դեմ են ինչպես ռևոլյուցիայի, այնպես էլ կոնտրռևոլյուցիայի արտահանմանը, բայց նրանք հավատացած են, որ աշխարհի բոլոր ժողովուրդներն իրենց սեփական կամքով ու ուժերով վաղ թե ուշ կգնան դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ։ Սոցիալիզմի վերջնական հաղթանակը՝ համաշխարհային սոցիալիստական ամբողջ սիստեմի շրջանակներում դառնում է արդի միջազգային զարգացման հզոր գործոն և վիթխարի թափ հաղորդում մարդկության պատմության ընթացքի արագացմանը։ Դրան միանում է այն պատմական մեծ իրողությունը, որ այժմ աշխարհի համարյա բոլոր երկրներում կան կոմունիստական և բանվորական պարտիաներ, որոնք միավորում են մոտ 40 միլիոն մարդ, իրենց հետևից տանում ավելի սավար զանգվածներ և գլխավորում սոցիալիզմի ու կոմունիզմի համար մղվող տիտանական պայքարը։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանը հագեցված է ժողովուրդների ազատագրական պայքարով, որը դրսևորվում է սոցիալիստական ռևոլյուցիաներով, ազգային-ազատագրական հակաիմպերիալիստական ռևոլյուցիաներով, դեմոկրատական ռևոլյուցիաներով, գյուղացիական լայն շարժումներով, ժողովրդական մասսաների պայքարով՝ ֆաշիստական և բռնապետական ռեժիմների դեմ, համադեմոկրատական շարժումներով ազգային ճնշման դեմ և այլն։ Այդ բոլորը միահյուսվում են համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի մեջ և հիմնովին խարխլում ու կազմալուծում կապիտալիզմը։ Պարզ է դառնում, որ մեր դարաշրջանը ռևոլյուցիաների դարաշրջան է, երբ, ինչպես Կ. Մարքսն էր ասում, «եռում է կախարդ պատմության ամբողջ կաթսան»:

Կապիտալիստական աշխարհի ռևոլյուցիոն փոխակերպումը սոցիալիստականի կարող է տեղի ունենալ երկու հիմնական ուղիով՝ խաղաղ և ոչ-խաղաղ։ Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ սկզբունքորեն «բանվոր դասակարգը, իհարկե, կգերադասեր խաղաղորեն իր ձեռքը վերցնել իշխանությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 4, էջ 348), և նա ինչպես միշտ, այնպես էլ առավել ևս ներկայումս, երբ աշխարհում սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերն անհամեմատ աճել են և, հետևապես՝ ստեղծվել են ավելի բարենպաստ պայմաններ, կանի





ամեն ինչ՝ մաքսիմալ չափով օգտագործելու այդ ուղին։ Ի դեպ, որքան ընդլայնվի ու հզորանա սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որը ոգեշնչում է բոլոր ժողովուրդներին և զսպաշապիկ հագցնում իմպերիալիստներին, այնքան ավելի հաճախակի կկիրառվի կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու խաղաղ ուղին, իսկ ապագայում, երբ կմնան միայն համեմատաբար թույլ կապիտալիստական երկրներ, այն ժամանակ այդ ուղին կդառնա համարյա միակը։

Նշանակում է, եթե նախկինում կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու խաղաղ ուղին առաջադրվում է որպես հնարավոր բացառություն առանձին երկրների նկատմամբ, ապա այժմ այն դիտվում է որպես սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման հիմնական ձևերից մեկը։

Սակայն դա չի նշանակում, որ արդեն այժմ օրակարգից հանվում են պայքարի ոչ-խաղաղ ձևերը. բոլորովին էլ ոչ։ Ո՛չ միայն ներկայումս, այլև քանի դեռ իմպերիալիզմը բավականաչափ ուժեղ է և գոյություն կունենա բուրժուական երկրների ռազմա-ոստիկանական ապարատը, այնքան ժամանակ պրոլետարիատը և բոլոր աշխատավորները հարկադրված կլինեն դիմելու զինված պայքարի, որպեսզի հաստատեն ու ամրացնեն իրենց քաղաքական իշխանությունը՝ ընդդեմ ամեն կարգի շահագործողների, ներքին ու արտաքին թշնամիների։

Այժմ պահանջվում է, որ կոմունիստական ու բանվորական պարտիաները, բանվոր դասակարգը հմտությամբ տիրապետեն քաղաքական-հասարակական գործունեության բոլոր ձևերին, որպեսզի նրանք կարողանան ըստ փոփոխված պայմանների կիրառել համապատասխան տակտիկա։

Ակներև է, որ զարգացած կապիտալիստական երկրներում հասունացել են սոցիալիզմին անցնելու նախադրյալները, և գնալով ուժեղանում է ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն պայքարը։ Այդպիսի երկրներում կոմունիստական պարտիաներն աշխատավորության պայքարի սլաքն ուղղում են ամենից առաջ մոնոպոլիաների դեմ և ստեղծում համադեմոկրատական, համազգային ճակատ, որը պրոլետարիատի գլխավորությամբ սկզբում կարող է իրականացնել ընդհանուր դեմոկրատական մեջոցառումներ, իսկ հետո անցնել սոցիալիստական խնդիրների կատարման։ Այդ ռևոլյուցիոն պայքարում, որը կարող է ծավալվել զանազան ձևերով, գլխավոր ուշադրությունը պետք է դարձվի քաղաքական իշխանության գրավմանը, պրոլետարիատի դիկտատուրայի, իսկական ժողովրդական պետության ստեղծմանը, առանց որի աներևակայելի է անցումը կապիտալիզմից սոցիալիզմին։

Ինչպես նշել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում պարտիայի Ծրագրի մասին տված զեկուցման մեջ, «արդի դարաշրջանում գործնականորեն ամեն մի երկիր անկախ իր զարգացման մակարդակից, կարող է ոտք դնել դեպի սոցիալիզմ տանող ուղին»։ Դա վերաբերում է նաև համեմատաբար հետամնաց, բայց գաղութային ճնշումից ազատագրված այն երկրներին, որոնք իրենց առաջադիմական ուժերի գլխավորությամբ բռնել են զարգացման ոչ-կապիտալիստական ուղին, մի ուղի, որը վերջիվերջո տանում է դեպի սոցիալիզմ։ Դրա ցայտուն օրինակն է ազատագրված Կուբան, որը ձեռնամուխ է եղել սոցիալիստական շինարարության և անմիջականորեն դարձել ազատության հուսալի փարոս Լատինական Ամերիկայի ժողովուրդների համար։ Ինչ խոսք, որ ամերիկյան իմպերիալիզմի քթի տակ փոքրիկ Կուբան պաշտպանում է իր ազատությունն ու անկախությունը ո՛չ միայն նրա հերոսական ժողովրդի անձնվեր



պայքարով, այլև ՍՍՌՄ-ի ու սոցիալիզմի ամբողջ լագերի գոյությամբ ու աջակցությամբ։ Այդ առթիվ Կուբայի Միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունների ղեկավարության անդամ ընկեր Բլաս Ռոկան ՍՄԿՊ XXII համագումարում իր ողջույնի ճառում ասաց. «Կուբայի ժողովուրդը կարողացավ պահպանել նորերս ձեռք բերած իր սուվերենությունն ու անկախությունը, ինքնուրույն կերպով որոշել իր բախտը և զարգացնել իր ռևոլյուցիան ո՛չ միայն շնորհիվ իր միասնության, անձնվիրության ու պայքարի, այլև շնորհիվ լատինա-ամերիկյան ժողովուրդների, Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների, Եվրոպայի և ամբողջ աշխարհի աշխատավորների անհողդողդ մարտական ու ներգործուն համերաշխության, և ամենից առաջ, սոցիալիստական երկրների համերաշխության, որոնք Սովետական Միության գլխավորությամբ Նրան ցույց տվին եղբայրական ու անշահախնդիր օգնություն»։

Կոմունիզմը հիմա դարձել է բոլոր ժողովուրդների մտքերի ու ձգտումների տիրակալը նաև այն պատճառով, որ այն իր հետ բերում է հավերժական խաղաղություն։ Սովետական Միությունը և սոցիալիստական բոլոր երկրները վարում են կայուն խաղաղության ու ժողովուրդների անվտանգության քաղաքականություն. Նրանք անում են ամեն ինչ, որպեսզի բոլոր ազատասեր ժողովուրդների հետ միասին ո՛չ միայն կանխեն համաշխարհային նոր պատերազմը, այլև հասարակության կյանքից ընդմիշտ բացառեն պատերազմները։ Սակայն դա ձեռնտու չէ մոնոպոլիստներին, որոնք ագրեսիվ պատերազմները և սպառազինությունների մրցավազքը դիտում են որպես շահույթի ու կողոպուտի աղբյուր։ Նրանց կամակատարներն են աջ սոցիալիստները, որոնցից Սպաակը գրում է. «Ավելի լավ է սարսափի հավասարակշռությունը, քան ամեն մի հավասարակշռության բացակայությունը»։ Սակայն թող իմպերիալիստներն ու նրանց գործակալները չմոռանան, որ եթե սանձազերծվի նոր պատերազմ, ապա այնտեղ նրանք կգտնեն իրենց վախճանը։

Դեռ 1919 թվականին Լենինը մարգարեաբար ասել է. «...Ինչքան էլ ծանր լինեն այն փորձությունները, որ դեռ կարող են մեզ վրա թափվել, ինչքան էլ մեծ լինեն այն աղետները, որ դեռ կարող է բերել մեզ միջազգային իմպերիալիզմի շունչը փչող գազանը,— այդ գազանը կկործանվի, և սոցիալիզմը կհաղթանակի ամբողջ աշխարհում» (Երկեր, հ. 29, էջ 268)։ Նշանակում է, պատմության բարոմետրը, ինչպիսի փոթորիկներ էլ գուշակի, այնուամենայնիվ ամենայն պարզությամբ ցույց է տալիս կոմունիզմի վերահաս հաղթանակը։

Բնորոշ է, որ կոմունիզմի վերելքն այժմ հարկադրված են խոստովանելու նաև նրա ոխերիմ թշնամիները և նույնիսկ հաշիվներ կատարելու նրա հաղթանակի մասին։ Արևմտագերմանական տնտեսագետ Ֆրից Բաադեն հանդես է եկել «Ով—ում 2000 թվականին» աղմկոտ գրքով, որտեղ պատեպատ է ընկնում կապիտալիզմը պաշտպանելու համար, բայց ստիպված ու սարսափահար նշում է, որ 40 տարի հետո աշխարհի բնակչության մեծամասնությունը կապրի կոմունիզմի օրոք և ամեն մի ոչ-կոմունիստի կընկնի հինգ կոմունիստ։

Մարդկության պատմության ներկա էտապի վերլուծությունը հաստատում է, որ կապիտալիզմն ընթանում է դեպի կործանում և հասարակական կյանքի բոլոր կողմերից աճում ու հզորանում է կոմունիզմը, որպես մեր դարաշրջանի ամենահզոր ուժը։ Այդպիսին է դարի ոգին ու ժողովուրդների պահանջը, որին զարնվելով կխորտակվեն իմպերիալիզմի բոլոր վայրագությունները։ Պատմության կողմնացույցի սլաքն ուղղված է դեպի կոմունիզմ։

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԲԱԶՄԱԿՈՂՄԱՆԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ա. ԹԵԼՈՒՆՑ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը, կոմունիստական հասարակության կառուցման գիտականորեն հիմնավորված և կոնկրետ պլանը ազդարարում և լիակատար մարմնավորում է նոր աշխարհի վեհ գաղափարը՝ «ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»։ Ծրագրի առանցքը կազմում է հոգատարությունը մարդու, նրա կյանքի պայմանների բարելավման, նրա բազմակողմանի զարգացման նկատմամբ։ Կոմունիզմը մարդկության և մարդկային անձի բարձրագույն ծաղկումն է։ Հենց նրա կառուցման պրոցեսում է ձևավորվում նոր մարդը, ստեղծվում են հոգևոր հարստություն, բարոյական անաղարտություն և ֆիզիկական կատարելություն ներդաշնակորեն մարմնավորող նոր մարդ դաստիարակելու հնարավորությունները։

Կոմունիզմի կառուցումն ու նոր մարդու ձևավորումը մի ամբողջական և միասնական պրոցես է։ Մարդիկ պրակտիկ գործունեության մեջ են աճում ու զարգանում, փոխում իրենց կյանքի պայմանները, կատարելագործում հասարակական հարաբերությունները և դրանով իսկ վերափոխում իրենց, իրենց հոգևոր աշխարհն ու աշխարհայացքը, բարոյական սկզբունքներն ու նորմերը, ընդունակ դառնում լուծելու հասարակական պրոգրեսի ավելի դժվարին խնդիրներ։ Նոր մարդու ձևավորումը պայմանավորված է որակական փոփոխություններով հասարակության կյանքի բոլոր բնագավառներում և հանգում է կոմունիստական աշխարհայացքի հաստատմանը, աշխատանքային դաստիարակությանը, կոմունիստական բարոյական սկզբունքների արմատավորմանը, կուլտուրական աճի ապահովմանը։

Հասարակության հետագա զարգացման ու վերափոխման և դրա հիման վրա նոր մարդու ձևավորման պայմանները նվաճված են շնորհիվ այն պատմական հաղթանակների, որ ձեռք է բերել սովետական ժողովուրդը նյութական, սոցիալական և հոգևոր կյանքի բնագավառներում։ Սովետական ժողովրդին է պատկանում այն պատմական ծառայությունը, որ նա պատմության մեջ առաջին անգամ բացեց մի դարաշրջան, որի հիմնական սկզբունքը, ինչպես կանխատեսել էր Մարքսը, ամեն մի ինդիվիդումի լիակատար ու ազատ զարգացումն է։ Սոցիալիստական կարգերում մեկընդմիշտ վերջ են տրված մարդու կողմից մարդու շահագործմանը, աղքատությանն ու գործազրկությանը, սոցիալական,



ազգային, ռասայական և այլ կարգի խտրականությանը, շահագործական կարգերի ծնունդ անմարդկային բարքերին ու նորմերին՝ մարդկանց փոխհարաբերության մեջ։

ՍՄԿՊ Ծրագրի հստակ, բովանդակալից, խիստ ռեալիստական ոգով տոգորված դրույթների մեջ բացահայտված են սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքի և հանրօգուտ գործունեության սոցիալական պայմանները, նրանց հոգևոր հարստացման, բարոյական բյուրեղացման, ֆիզիկական կատարելության արդի և հետագա հնարավորություններն ու լայն հորիզոնները։ «Հասարակության ամեն մի անդամի,— ասվում է Ծրագրում,— հավասար հնարավորություններ են տրված ստեղծագործական աշխատանքի և կրթության համար։ Անհետանում են մարդկանց միջև եղած կախման ու անհավասարության հարաբերությունները հասարակական և ընտանեկան կյանքում։ Յուրաքանչյուր քաղաքացու անձնական արժանապատվությունը պաշտպանում է հասարակությունը։ Յուրաքանչյուրի համար երաշխավորվում է զբաղմունքի տեսակի և մասնագիտության հավասար ու ազատ ընտրություն՝ ելնելով հասարակության շահերից։ Նյութական արտադրության համար հատկացված ժամանակի կրճատման հետ մեկտեղ ընդլայնվում են արտադրության, գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառում ընդունակությունները, ձիրքը, տաղանդները զարգացնելու հնարավորությունները։ Մարդկանց ազատ ժամանակը գնալով ավելի մեծ չափով կնվիրվի հասարակական գործունեությանը, կուլտուրական շփմանը, մտավոր ու ֆիզիկական զարգացմանը, գիտատեխնիկական և գեղարվեստական ստեղծագործությանը։ Ֆիզկուլտուրան և սպորտը հաստատուն կերպով կմտնեն մարդկանց առօրյա կենցաղի մեջ»։

Նոր մարդու դաստիարակման ու ձևավորման հիմնական բնագավառը արտադրությունն է, ստեղծարար, հանրօգուտ, բովանդակալից աշխատանքը։ Սոցիալիստական հասարակարգը վերջ է տվել այն արհամարհական վերաբերմունքին դեպի աշխատանքը, որ շահագործողական կարգերի անխուսափելի ծնունդն ու պորտաբույծ դասակարգերի տիրապետության այլանդակ արտահայտությունն էր։ Սոցիալիստական կարգերում ամեն մի հանրօգուտ աշխատանք, թե՛ ֆիզիկական և թե՛ մտավոր, հարգվում է, որովհետև աշխատանքը հասարակական հարստության, նյութական և հոգևոր արժեքների ստեղծման աղբյուրն է, արժեքներ, որ ստեղծում է ժողովուրդն իր համար։ Սոցիալիստական հասարակարգը կյանքի է կոչել աշխատանքի արտադրողականության բարձրացման տնտեսական և բարոյական բնույթի նոր խթաններ, ապահովում է տեխնիկական առաջադիմությունը, գիտության նվաճումների արտադրական կիրառումը, մարդկանց աշխատանքի պայմանների բարելավումը, բուն աշխատանքի թեթևացումը, արտադրողին բարձրացնում է արտադրության պրոցեսի ղեկավարի, կարգավորողի և հրամանատարի աստիճանի, աշխատանքը դարձնում հետաքրքրական ու բովանդակալից։

Կապիտալիզմի պայմաններում արտադրության ավտոմատացումը զարկ է տալիս գործազրկությանը, սոցիալական մղձավանջին։ Սոցիալիզմի պայմաններում ավտոմատացումը, տեխնիկական պրոգրեսը զուգորդվում են ամբողջ աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության, նրանց որակավորման անընդհատ բարձրացման հետ։ «Ավտոմատացումն ու կոմպլեքսային մեքենայացումը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— սոցիալիստական աշխատանքը աստիճանաբար կոմունիստական աշխատանքի վերածելու նյութական հիմքն են։

Տեխնիկական առաջադիմությունը զգալիորեն կբարձրացնի արտադրության կուլտուրային, բոլոր աշխատավորների մասնագիտական և հանրակրթական պատրաստությանը առաջադրվող պահանջները։ Նոր տեխնիկայի զարգացումը կօգտագործվի սովետական մարդու աշխատանքի պայմանները արմատապես բարելավելու և հեշտացնելու, աշխատանքային օրը կրճատելու և կենցաղը բարեկարգելու, ծանր ֆիզիկական աշխատանքը, իսկ հետո էլ ամեն տեսակ ոչ որակյալ աշխատանք վերացնելու համար»։

Կոմունիստական աշխատանքը, որի ծիլերը փարթամորեն աճում են արդեն, մարդկային նոր հարաբերությունների վառ արտահայտությունն է, նոր մարդու ձևավորման դպրոցը, բարոյական նոր նորմերի ծագման ու արմատավորման կենարար հողն ու կենդանի մարմնավորումը։ Այդ աշխատանքի հաղթանակի նախադրյալները գտնվում են գիտատեխնիկական առաջադիմության, աշխատանքի բարոյական խթանների ծավալման, աշխատավոր ժողովրդի կրթական ու կուլտուրական մակարդակի բարձրացման մեջ։ Կոմունիստական պարտիան ամենայն հոգատարությամբ աճեցնում է կոմունիստական աշխատանքի ծիլերը, ոգեշնչում ժողովրդին դեպի ազատ, ստեղծարար աշխատանք։ «Կոմունիստները,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— փառաբանում ու բարձրացնում են ազատ աշխատանքը որպես բոլոր մարդկանց կյանքի ու բարօրության աղբյուր, որպես հասարակության առաջադիմության ու ծաղկման գրավական»։

Կոմունիստական աշխատանքի նախաձեռնողները, արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորները արտադրության զարգացման նկատմամբ ցույց են տալիս այնպիսի հոգատարություն, որ միայն ազատ, ստեղծարար աշխատանքի պայմաններում կարող էր դառնալ մարդու անկապտելի հատկանիշը, ընկերական համագործակցության և փոխօգնության այնպիսի օրինակներ, որ միայն հասարակական նոր հարաբերությունների, սոցիալական հավասարության պայմաններում կարող էին դրսևորվել։ Նրանք ստեղծագործաբար արձագանքում են այն ջերմ հոգատարությանը, որ ցուցաբերում են պարտիան, սովետական ժողովուրդը այն ամենի նկատմամբ, ինչ առաջավոր է, զարգացող, հանրօգուտ, այն սիրուն ու հարգանքին, որն անդադրում ներշնչում է պարտիան դեպի աշխատանքը, մարդկային վարմունքի ու հանրակեցության նոր սկզբունքները, դեպի Հայրենիքը։ Նրանք հետազոտում են ապագայի ուղիները, մոտեցնում կոմունիստական աշխատանքի հաղթանակը, առաջինն իրականացնում պարտիայի վեհ կանխագծումները, կամրջում ներկան ապագայի հետ, գիտակցում իրենց անձնվեր աշխատանքի հասարակական նշանակությունը։ «Մեզնից ամեն մեկի մեջ ուրախության և բարձր պատասխանատվության զգացմունքներ է առաջացնում պարտիայի նոր Ծրագիրը,— ասաց Վ. Գագանովան իր ելույթում ՍՄԿՊ XXII համագումարում։— Մենք սկսում ենք ուրիշ աչքերով նայել այսօրվա իրադարձություններին ու երևույթներին, մոտենում ենք դրանց նոր, կոմունիստական դիրքերից։ Չէ որ ամեն մի ապրած օր ևս մի նոր աստիճան է պայծառ ապագայի ճանապարհին։ Եվ ինչքան ավելի արժանավոր ապրենք մենք այդ օրը, ինչքան ավելի լավ աշխատենք, ինչքան ավելի շատ բան անենք հասարակության համար, այնքան ավելի հաջող ու սրընթաց կլինի դեպի կոմունիզմ տանող մեր ուղին»։

Երբեք պատմության մեջ մարդու արժանիքները, հանրօգուտ գործունեությունը, ստեղծագործական նախաձեռնությունն այնքան բարձր հասարակական գնահատական չեն ստացել և այնքան մասսայական ընդօրինակման պայման-



ներ չեն ունեցել, ինչպես սոցիալիստական հասարակարգում։ Հատկանշականն այստեղ ո՛չ միայն այն է, որ ինքը՝ կյանքը պահանջում և պայմաններ է ստեղծում մարդու ստեղծագործական ձիրքերի, հոգևոր արժանիքների, բարոյական նոր նորմերի կիրառման ու ծավալման համար, այլև այն, որ մարդու աշխատանքի ու վարմունքի, խոհի ու զգացմունքի, կենցաղի ու բարքի մեջ առաջացող նորն ու խոստումնալիցը, առաջավորն ու հեռանկարայինը դառնում են հասարակության սեփականությունը և դրանով իսկ ստանում նոր որակ ու իմաստ, բազմապատկում իրենց նշանակությունն ու դերը։ Կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժումը, որի նախաձեռնողները արտադրության առաջավորներն էին, կարճ ժամանակամիջոցում դարձավ լայն մասսայական շարժում, ընդգրկելով 20 միլիոն մարդ։ 800 ձեռնարկություն, 187 հազար բրիգադա արժանացել են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների, ավելի քան 3 միլիոն առաջավորներ՝ կոմունիստական աշխատանքի հարվածայինների կոչման։ Նոր մարդը ձևավորվում է աշխատանքի մեջ, որը դառնում է կենսական անհրաժեշտություն ամեն մի գիտակից քաղաքացու համար։

Զարգացող սոցիալիստական արտադրությունը ո՛չ միայն նոր մարդու ձևավորման դարբնոցն է, այլև մարդկանց հոգևոր և ֆիզիկական զարգացման նյութական բազան։ «Սոցիալիզմի նպատակն է,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— ավելի ու ավելի լրիվ բավարարել ժողովրդի նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքները՝ հասարակական արտադրության անընդհատ զարգացման ու կատարելագործման միջոցով»։ Սոցիալիստական արտադրությունը կիրառելով տեխնիկայի ու գիտության ժամանակակից նվաճումները, ավելի ու ավելի մեծ չափերով է նյութական միջոցներ տրամադրում ժողովրդին՝ կուլտուրական շինարարության ու գիտության զարգացման համար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և դրա շնորհիվ աշխատաժամանակի կրճատումը հնարավորություն են տալիս բավարարելու աշխատավորների կուլտուրական պահանջմունքները, արտադրության մեջ բարձրացնում են հոգևոր գործոնի՝ գիտության դերը, որն ավելի ու ավելի է սերտաճում արտադրողի հետ։ Այս ամենը նոր մարդու ձևավորման, նրա հոգեկան հարստացման օբյեկտիվ պայմաններն են, որոնք իրենց դերը լայնորեն դրսևորում են շնորհիվ Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության, ամբողջ սոցիալիստական վերնաշենքի գործունեության, որն ուղղված է նյութական ու հոգևոր արտադրության զարգացման նպատակին։ Վ. Ի. Լենինի մշակած կուլտուրական ռևոլյուցիայի պլանի կենսագործմամբ սովետական ժողովուրդը դուրս եկավ հոգևոր ստրկության և խավարի աշխարհից, իր սեփականությունը դարձրեց մարդկության կուտակած կուլտուրական ու գիտական հարստությունները, հասավ ժամանակակից գիտության բարձունքներին և այժմ գլխավորում է գիտական պրոգրեսն ամբողջ աշխարհում։ Աշխատավոր ժողովրդի հոգևոր և կուլտուրական աճը սոցիալիզմի մեծագույն նվաճումն է, կոմունիստական հասարակության կառուցման կարևորագույն պայմանը։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների վրա կատարվող ծախսումները, որոնք կապիտալիստական երկրների բյուջեի աննշան մասն են կազմում, սոցիալիստական երկրներում անընդհատ աճում են, բավարարելով աշխատավորների աճող կուլտուրական պահանջմունքները։ Դրանք 1940 թվականին կազմում էին Սովետական պետության բոլոր ծախսումների 23,5 տոկոսը, իսկ 1960 թվականին՝ 33,2 տոկոսը։ Հատկապես աճում են ժողովրդական կրթությանը և գիտու-

թյան զարգացմանը հատկացվող միջոցները։ ՍՍՌՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները, որոնցում այժմ սովորում են ավելի քան 4,5 միլիոն ուսանող, տարեկան երկրին տալիս են 800 հազարից ավելի մասնագետ, այդ թվում՝ ավելի քան 120 հազար ինժեներ—3 անգամ ավելի, քան ԱՄՆ-ում։ ՍՍՌՄ-ում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թիվը հասնում է 12 միլիոնի, իսկ մտավոր աշխատողների ընդհանուր թիվը՝ 20 միլիոնի։ Գիտական աշխատողների թիվը, որը 1960 թվականին կազմում էր 354,2 հազար մարդ, ավելի քան 35 անգամ գերազանցում է 1914 թվականին Ռուսաստանում եղած գիտական աշխատողների թիվը և ավելի քան 1,8 անգամ՝ 1913 թվականին ժողովրդական տնտեսության մեջ զբաղված միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթություն ունեցողների թիվը։ Հայաստանում մինչև սովետական կարգերի հաստատումը չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն և գիտահետազոտական հիմնարկություն։ 1960 թվականին ռեսպուբլիկայում գործում էին 11 բարձրագույն ուսումնական հաստատություն և 57 գիտական հիմնարկ, որոնցում զբաղված էին ավելի քան 4000 գիտական աշխատող։ Ժողովրդի կրթական ու կուլտուրական մակարդակի աճը սոցիալիզմի անխախտ օրենքն է, Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության հոգատարության առարկան։

ՍՄԿՊ Ծրագրում նախատեսվում է առաջիկա տասնամյակի ընթացքում իրականացնել պարտադիր միջնակարգ ընդհանուր և պոլիտեխնիկական տասնմեկամյա կրթություն դպրոցահասակ բոլոր երեխաների, և 8-ամյա կրթություն երիտասարդության այն մասի համար, որ զբաղված է ժողովրդական տնտեսության մեջ և չունի համապատասխան կրթություն, իսկ հաջորդ տասնամյակում՝ ապահովել բոլորի համար լրիվ միջնակարգ կրթություն ստանալու հնարավորություն։

Մեծապես կընդլայնվի բարձրագույն ուսումնական հաստատությունների ցանցը, հատկապես երեկոյան և հեռակա, գործարան-բուհների, սովխոզների բազայի վրա գյուղատնտեսական ինստիտուտների, ժողովրդական համալսարանների և այլ ուսումնական հաստատությունների ցանցը, բոլոր ցանկացողների համար կստեղծվեն բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն ստանալու պայմաններ։ Աշխատավորների ավելի ու ավելի լայն զանգվածներ իրենց կրթական մակարդակով, մասնագիտական գիտելիքներով և ունակություններով կհասնեն տեխնիկական ինտելիգենցիայի մակարդակին, կվերանան մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները, իսկ հետագայում կվերանա ինտելիգենցիան որպես առանձին հասարակական խավ, որովհետև արտադրության մեջ ֆիզիկական և մտավոր աշխատանքը կմիանա, ամբողջ ժողովուրդն իր աշխատանքում կհամակցի մտավոր ու ֆիզիկական ընդունակությունները, բոլորը կունենան բարձրագույն կամ միջնակարգ կրթություն։

Կապիտալիստական հասարակարգում գիտությունը դառնալով արտադրության հզոր գործոն ու ֆունկցիա, միաժամանակ կտրվում է բուն արտադրողից, դառնում տիրապետող դասակարգերի և ինտելիգենցիայի մենաշնորհը. այդպիսին է և ամբողջ մտավոր աշխատանքը։ Սոցիալիստական հասարակարգում ստեղծվել են նախադրյալներ գիտության և արտադրողի միացման համար։ Առաջավոր բանվորներն սկսում են տիրապետել գիտության արտադրական կիրառման սկզբունքներին, ռացիոնալիզատորական շարժումն ընդունում



է մասսայական բնույթ։ Գնալով ավելի ու ավելի մեծ չափով կբարձրանա բանվորների դերը գիտության տեխնոլոգիական կիրառման մեջ, որի նախապայմանը բանվոր դասակարգի աշխատանքային որակավորման բարձրացումն է։ Միայն 1960 թվականին 9600 հազար աշխատողներ սովորել են նոր մասնագիտություն ու բարձրացրել աշխատանքային որակավորումը, դրանցից 7660 հազարը, այսինքն՝ 82 տոկոսը եղել են բանվորներ։ Բանվոր դասակարգի շարքերը համալրողների զգալի մասն ունի միջնակարգ կամ մասնագիտական տեխնիկական կրթություն։

Գիտության և արտադրության կապի ամրապնդման գործում առաջնակարգ նշանակություն ունի դպրոցի և կյանքի կապի ուժեղացումը, պոլիտեխնիկական կրթությունը։

Պարտիայի Ծրագրում նախատեսված է պոլիտեխնիկական կրթության դրվածքի բարելավում, դպրոցի և կյանքի կապի հետագա ամրապնդում. բոլոր դպրոցներին կից կստեղծվեն ուսումնական արհեստանոցներ, քիմիական, ֆիզիկական և այլ կաբինետներ և լաբորատորիաներ, իսկ գյուղական վայրերում՝ նաև գյուղատնտեսական դպրոցամերձ հողամասեր, խոշոր ձեռնարկություններում ուսումնաարտադրական ցեխեր դպրոցականների համար։ Գյուղատնտեսական գիտական և ուսումնական հիմնարկները գերազանցապես պետք է գտնվեն գյուղական վայրերում, անմիջականորեն կապված լինեն գյուղատնտեսական արտադրության պրոցեսի հետ, որպեսզի ուսանողները սովորեն և աշխատեն, աշխատեն և սովորեն։ Աշխատանքի և ուսման միասնությունը բազմակողմանի պատրաստված մարդու դաստիարակության հիմնական պայմանն է։ Կոմունիստական հասարակություն կառուցողները պետք է զինված լինեն գիտությամբ և կարողանան իրենց գիտելիքները ներդնել պրակտիկ աշխատանքում։ «Կոմունիզմը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— գիտելիքներ է տալիս բոլորին. մասսաների գիտելիքներից, նրանց բարձր կուլտուրայից նա հաջող առաջընթացի ուժեր ու վստահություն է քաղում»։

Կոմունիզմի կառուցման պրոցեսում լայնորեն ծավալվում է մարդկանց հասարակական գործունեությունը, նրանց անմիջական մասնակցությունը երկրի տնտեսական ու կուլտուրական շինարարությանն ու պետական կառավարմանը։ Սոցիալիստական հասարակարգը ո՛չ միայն արմատապես բարելավել է մարդկանց տնտեսական դրությունը, այլև ազատել նրանց հոգևոր ու իրավական ճնշման կապանքներից, դարձրել իրենց բախտի կողքն ու տերը։

Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում ըստ ամենայնի ծավալվում է սոցիալիստական դեմոկրատիան և դրա հիման վրա՝ մասսաների քաղաքական ակտիվությունը, ստեղծագործական եռանդն ու նախաձեռնությունը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ «Անցումը սոցիալիզմից կոմունիզմին,— ընդգծված է պարտիայի Ծրագրում,— նշանակում է անհատի ազատության և սովետական քաղաքացիների իրավունքների ըստ ամենայնի զարգացում»։

Կոմունիստական պարտիան մերկացրեց անհատի պաշտամունքը և նրա այլանդակ հետևանքները, որոնք կաշկանդում էին ժողովրդական մասսաների ստեղծագործական եռանդն ու նախաձեռնությունը, քաղաքական ակտիվությունը, ստեղծագործական մտքի ծավալումն ու զարգացումը, խախտում սոցիալիստական դեմոկրատիայի ու օրինականության սկզբունքները, քաղաքական ղեկավարման ու տնտեսական կառավարման լենինյան նորմերը։ Քաղաքական

ղեկավարության նոր կուրսը, որը մշակվեց պարտիայի XX համագումարում և իր հաստատումն ու հետագա զարգացումն ստացավ XXII համագումարում, պայմաններ ստեղծեց ժողովրդական ստեղծագործության ծաղկման, թարմ մտքի ծավալման, մարդկանց հոգևոր զարգացման համար։ Պարտիան կերտեց իր հոյակապ ծրագիրը, ամփոփելով և իմաստավորելով մասսաների պատմական փորձը, հենվելով կոլեկտիվ մտքի ստեղծագործության վրա, քաղաքականապես, գաղափարապես ու կազմակերպչորեն ջախջախելով հակապարտիական խմբի ողորմելի ճիգերը՝ վերականգնելու անհատի պաշտամունքի մերկացված ու դատապարտված պրակտիկան։

Մասսաների քաղաքական ակտիվության բարձրացումը, նրանց գործարար հասարակական աշխատանքի մեջ լայնորեն ներգրավելը, հասարակական կազմակերպությունների դերի աճումը նախապայմաններ են ստեղծում հասարակական կառավարման ավելի բարձր սկզբունքին՝ հասարակական ինքնավարության անցնելու համար։ Այդ պրոցեսում աճում են մարդիկ, ընդլայնվում է նրանց մտահորիզոնը, վերափոխվում ներքնաշխարհը, բարձրանում հասարակական պարտքի գիտակցությունը, որը բարոյապես հղկում ու վեհացնում է մարդուն։ Հիրավի, այն ամենը, ինչ վեհ է և ուսանելի ամբողջ նախընթաց պատմության մեջ, առաջացել ու բարեբար պտուղներ է տվել շնորհիվ մարդկային այն գործունեության, որի նպատակը հասարակական շահերի պաշտպանությունն ու հասարակական առաջադիմության ապահովումն է։ Բայց մասնավոր սեփականության վրա խարսխված հասարակական հարաբերությունները պայմանավորում էին անհատապաշտական հոգեբանության տիրապետությունն իր այլանդակ հետևանքներով։ Սովետական մարդկանց հոգեբանությունը, նրանց բարոյական վարքագիծը կազմավորվում է այլ պայմաններում, խարսխվում այնպիսի հասարակական հարաբերությունների վրա, որոնք անհրաժեշտաբար կյանքի են կոչում հանրային շահի գիտակցումը շատերի, ապա և բոլորի կողմից ընկերասիրությունը, բարեխղճությունը, ազնվությունը, անհանդուրժողականությունը այն ամենի նկատմամբ, ինչ հակադրվում է կոլեկտիվիզմին, ինչ կրում է իր մեջ շահագործողական կարգերի այլանդակ գծերը՝ պորտաբուծությունը, անարդարությունը, անազնվությունը, կարիերիզմը, ազգային ու ռասայական խտրականությունը, գռփողականությունը, ստորաքարշությունը և այլն։

Կոմունիզմ կառուցողների բարոյական կերպարն ու աշխարհայացքը ձևավորվում են ոչ թե տարերայնորեն, այլ՝ գիտակցաբար, պարտիայի, պետության, հասարակական կազմակերպությունների ամենօրյա համառ ու գործարար դաստիարակչական աշխատանքի հետևանքով, մարդկանց կուլտուրական մակարդակի, քաղաքական ակտիվության բարձրացման միջոցով, հին աշխարհի գաղափարախոսության, մնացուկների ու տրադիցիաների դեմ մղվող անհաշտ պայքարում, մարդկանց հարաբերությունների մեջ հասարակական կարծիքի դերի բարձրացմամբ, հասարակական ներգործության միջոցների ծավալմամբ։ Հասարակական կարծիքի ու հասարակական ներգործության դերի բարձրացումը բացատրվում է նրանով, որ սոցիալիզմը ոչնչացրել է անհատի և հասարակության հակադրություն ստեղծող հողը, զուգորդել մարդու անձնական շահերը հասարակական շահերի հետ, վերջ տվել հին աշխարհի հակաբանական սկզբունքին մարդկային հարաբերությունների մեջ, որն արտահայտվում է մարդը մարդու համար գայլ դարձվածքով։ Սոցիալիզմի բարոյական սկզբունքը



կոլեկտիվիզմն է, որի սնուցող հողը արտադրության միջոցների հանրային սեփականությունն է, հանրօգուտ աշխատանքը, բարեկամական փոխօգնության հարաբերությունները։ Մարդկանց գիտակցության ու գործունեության մեջ հաստատվում է իսկական մարդկային սկզբունքը՝ մեկը բոլորի, բոլորը մեկի համար, մարդը մարդուն բարեկամ է, ընկեր ու եղբայր։

Կոմունիստական պարտիան դաստիարակում է մարդկանց մեջ հավատարմություն կոմունիզմի մեծ գործին, սեր սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ, հասարակական պարտքի գիտակցում, սոցիալիստական ինտերնացիոնալիզմ, եղբայրական համերաշխություն ժողովուրդների միջև։ Կոմունիստական պարտիան մշակել է կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսը, որը ներառնում է համամարդկային այն հիմնական բարոյական նորմերը, որ ժողովրդական մասսաները մշակել են հազարամյակի ընթացքում սոցիալական անարդարության, ճնշման ու ստրկության, բարոյական արատների դեմ մղած պայքարում, ժառանգել բանվոր դասակարգի ռևոլյուցիոն բարոյականությունը։ Կոմունիզմի կառուցման պրոցեսում այն հարստանում է նոր բովանդակությամբ։

Կոմունիզմի կառուցման պրոցեսում առաջնակարգ նշանակություն է ձեռք բերում սովետական հասարակության բոլոր աշխատավորների գիտական աշխարհայացքի ձևավորումը մարքսիզմ-լենինիզմի կուռ ուսմունքի հիման վրա։ Կոմունիզմը կառուցվում է մարդկանց գիտակցական գործունեությամբ, հասարակության զարգացման օրենքների գիտակցական կիրառմամբ։ Որքան ավելի բարձր է մասսաների գիտակցականությունը, հասարակական երևույթների գիտական ըմբռնումը, այնքան ավելի արագ, հիմնավոր ու վստահ են նրանք կատարում իրենց պատմական դերը, ազատվում ամեն տեսակի նախապաշարմունքներից, սնոտիապաշտությունից, հակագիտական աշխարհայացքի ու գաղափարախոսության ազդեցությունից։

Գիտական աշխարհայացքը խարսխվում է բնության և հասարակության զարգացման օրինաչափությունների իմացության վրա, կանխատեսում հասարակության զարգացման հեռանկարները, կողմնորոշում մարդկանց հասարակական իրադարձությունների բարդ պրոցեսում։ Այն հզոր գաղափարական զենք է կոմունիզմի համար մղվող պայքարում։ Պատահական չէ, որ կապիտալիստական աշխարհի պաշտպաններն ու գաղափարախոսները ոչնչի առջև կանգ չեն առնում կեղծելու ու աղճատելու, արատավորելու ու «փշրելու» կոմունիստական աշխարհայացքը, մարդկանց ետ պահելու նրա կենարար ներգործությունից։ Բախվելով գիտական աշխարհայացքին՝ ջարդուփշուր են եղել կապիտալիստական աշխարհի բոլոր գաղափարական զենքերը, մեկը մյուսի հետևից սնանկացել մոդայական, գիտության հետ պչրվող փիլիսոփայական սիստեմներն ու հոսանքները. իսկ գիտական աշխարհայացքը ուղի է հարթել իր համար, ավելի ու ավելի հոծ մասսաներ համախմբել իր դրոշի տակ, որը կոչում է աշխատավոր մարդկությանը՝ վերափոխելու աշխարհը, դարձնելու այն իսկական մարդկային։ Այն դարձել է սոցիալիզմ ու կոմունիզմ կառուցող միլիոնավոր աշխատավորների աշխարհայացքը։

Սովետական մարդկանց աշխարհայացքը ձևավորվում է նրանց պրակտիկ գործունեության և ուսուցման պրոցեսում, կապիտալիստական ռեակցիոն գաղափարախոսության, կրոնական աշխարհայացքի, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարում։ Բարձրացնելով իրենց

կրթական մակարդակը, տիրապետելով գիտությանը, կենսագործելով կոմունիզմի վեհ գաղափարները՝ մարդիկ դառնում են պատմության գիտակից կերտողներ, մաքրում հասարակությունը հին աշխարհի արատներից, կերտում կոմունիստական հասարակության հոյակապ շենքը, որը լուսավորվում է կենսահաստատ գաղափարներով և ծառայում մարդկային երջանկությանը։



Կապիտալիզմի ջատագովները հասարակության առաջադիմության հնարավորությունը կապում են կապիտալիզմի գոյության հետ, ճգնելով ապացուցել, որ կապիտալիզմի կործանումը հավասարազոր է քաղաքակրթության վախճանին, հասարակության անկմանն ընդհանրապես։ Նրանք զրպարտում են կոմունիզմը, պատկերելով այն որպես մի հասարակարգ, որը հոգեպես աղքատացնում է մարդուն, զրկում նրան անհատականությունից, բնավորության ամբողջականությունից ու կամքից։ Նրանց իդեալը անհատապաշտ մարդն է, որը կյանքի իմաստը գտնում է միայն անձնական շահի մեջ և իր հոգևոր ուժերը ծառայեցնում անձնական շահի բավարարմանը։ Իսկապես կոմունիզմը ժխտում է հասարակական այն կարգերը, որոնք մարդուն դարձնում են անհատապաշտ, բարոյապես ու հոգեպես այլանդակում ու արատավորում նրան։ Կոմունիզմը ոչ թե աղքատացնում է մարդուն, այլ վեհացնում նրան, հարստացնում հոգեպես, մաքրում բարոյապես, դարձնում հասարակական առաջադիմության իսկական կրողն ու իրականացնողը։ Կոմունիզմը իրականություն է դարձնում մարդկության լավագույն իղձերն ու տենչանքները։

Սովետական մարդկանց պատմական սխրագործությունը լավագույն ապացույցն է այն բանի, որ մարդկության փրկության և առաջադիմության ուղին վարձու ստրկության և հոգևոր ճնշման ոչնչացումն էր, որ, ինչպես կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, միայն սոցիալիզմից է սկսվում «արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական և անձնական կյանքի բոլոր ասպարեզներում» (Երկեր, հատ. 25, էջ 615)։

Պատմությունն արդեն վաղուց է դատնորեն հեգնել և քամուն տվել բուրժուական հերյուրանքները սոցիալիզմի և սոցիալիստական կարգերի մարդկանց մասին։ Այդ կարգերն են ապահովել սովետական մարդկանց տիտանական գործունեությունը ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության ծաղկման բնագավառում, որի շնորհիվ անցյալում հետամնաց երկիրն այժմ դարձել է կուլտուրայի ու գիտության միջնաբերդն աշխարհում։ Սովետական մարդիկ առաջինն ուղղեցին արբանյակներն ու տիեզերանավերը դեպի տիեզերքի տարածությունները։ Ժամանակակից գիտատեխնիկական ռեոլյուցիան, որի համար չափազանց նեղ են կապիտալիստական կարգերը, իր իրագործման լայն հնարավորություններն ու պայմանները գտնում է կոմունիզմ կառուցող երկրում։ Այս ամենը սովետական մարդկանց ստեղծագործական խիզախման, բանականության և եռանդի պտուղներն են, նրանց հոգևոր հարստության լավագույն ապացույցը։

Կոմունիզմը ստեղծվում է մարդկանց ստեղծարար աշխատանքով։ Աշխատանքային գործունեությունը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— կդառնա իսկական ստեղծագործության, ուրախության աղբյուր։ Գիտատեխնիկական առաջադիմության բարձր տեմպերի ապահովումը և դրա հիման վրա աշխատանքի պայմանների թեթևացումը և ազատ ժամանակի ավելացումը կապահովեն մարդու բազմակողմանի զարգացումը, մարդու ստեղծագործական տվյալների ու ձիրքերի ծավալումը, որոնք կգտնեն լայն գործունեության ասպարեզ նյութական և հոգևոր արտադրության ամենատարբեր բնագավառներում։ Կվերանա մարդու գամվածությունը գործունեության որևէ առանձին տեսակին, առանձին մասնագիտությանը։ Բուն արտադրության մեջ արտադրողը կդառնա արտադրության իսկական կառավարողն ու հրամանատարը, արտադրության պրոցեսների կարգավորողն ու հսկիչը։ Հոգեկան և բարոյական բավարարումն աշխատանքով կվերածվի աշխատանքի հզոր խթանի։

Կոմունիզմն ու աշխատանքն անբաժանելի են։ Կոմունիզմն աշխատանքը կդարձնի ավելի հրապուրիչ, բովանդակալից, բայց ոչ բնավ ինչ-որ ժամանցի միջոց, թեթև խաղ։ Հասարակության զարգացման հետ միասին մարդկության առջև ծառանում են ավելի բարդ խնդիրներ, աճում են մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները, բարձրանում է հասարակության տնտեսական ու կուլտուրական կառավարման, մարդկանց բազմազան գործունեության պլանավորման ու կոորդինացման դերն ու նշանակությունը և համապատասխանաբար աճում են կազմակերպվածության, գիտակցական կարգապահության դերն ու նշանակությունը աշխատանքի և մարդկային բոլոր հարաբերությունների մեջ։

Նոր մարդու ձևավորման պրոցեսը բարդ և բազմակողմանի պրոցես է։ Այն ընդգրկում է մարդկային գործունեության բոլոր բնագավառները, պահանջում համառ աշխատանք, աշխատանքային և գաղափարական դաստիարակության բոլոր միջոցների լայն օգտագործում և կատարելագործում, դրական փորձի ու օրինակի լայն պրոպագանդա, բոլոր աշխատավորների լայն ներգրավում հասարակական գործունեության, հասարակական գործերի կառավարման մեջ։ Պարտիան հատուկ նշանակություն է տալիս աճող սերնդի դաստիարակությանը, ներունդ, որը կբազմապատկի սովետական ժողովրդի պատմական նվաճումները, հաղթական ավարտին կհասցնի հասարակության վերափոխման համար մղվող պայքարը, որը գլխավորում է Կոմունիստական պարտիան, մեր դարաշրջանի խելքը, պատիվն ու խիղճը։

Կոմունիզմի կառուցումը,—ուսուցանում է Կոմունիստական պարտիան,— ժողովրդի ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է. կոմունիզմի հաղթանակը կախված է մարդկանցից, և կոմունիզմը կառուցվում է մարդկանց համար։ Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար և նրա երջանկության մեջ է տեսնում իր գործունեության իմաստը։ Կոմունիզմի կառուցման պրոցեսում աճում են պարտիայի՝ որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի դերն ու նշանակությունը, աճում է նրա, մարքսիզմ-լենինիզմի վեհ ու կենսահաստատ գաղափարների կրողի, զարգացնողի և կենսագործողի դերը ժողովրդի դաստիարակության, հոգևոր զարգացման, նոր մարդու ձևավորման գործում։ Պարտիան իր վեհ գաղափարները դարձրել է ամբողջ ժողովրդի սեփականությունը, ծավալում է ժողովրդի ստեղծագործական եռանդն ու նախաձեռնությունը, ուղղում նրա ուժերը պայծառ նպատակի՝ կոմունիզմի հաղթանակի ուղին, որը տանում է դեպի Աշխատանքի, Ազատության, Հավասարության, Խաղաղության, Երջանկության հաստատումը բոլոր ժողովուրդների համար։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ


**ԱՐ. ՄԱՐՈՒԽՅԱՆ**

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


*Պարտիայի նոր Ծրագրում մեծ խնդիրներ են դրվում ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այնպես էլ սոցիալիստական գյուղատնտեսության առջև։ Ծրագրում ասված է, որ գյուղատնտեսության արտադրողական ուժերի հզոր վերելքը թույլ կտա լուծել իրար հետ սերտորեն առնչված երկու հիմնական խնդիրներ՝* «ա) հասնել բնակչության համար բարձրորակ սննդամթերքների և արդյունաբերության համար հումքի առատության, բ) ապահովել սովետական գյուղի աստիճանական անցումը կոմունիստական հասարակական հարաբերություններին և հիմնականում վերացնել քաղաքի ու գյուղի տարբերությունները»:

*Հայտնի է, որ ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության մեջ ընդլայնված վերարտադրությունն իրականացնելու, մթերքների արտադրությունն ավելացնելու երկու ուղի գոյություն ունի՝ էքստենսիվ և ինտենսիվ։ Էքստենսիվը արտադրության կազմակերպման, գիտության ու տեխնիկայի միևնույն մակարդակի պայմաններում ցանքատարածությունների ու անասնագլխաքանակի ավելացման միջոցով մթերքների արտադրությունն ավելացնելու ուղին է։*

*Արտադրության զարգացման էքստենսիվ ուղին հիմնականում յուրահատուկ է մանր գյուղացիական արտադրությանը. իր տնտեսական անզորության հետևանքով այն անկարող է լրացուցիչ կապիտալ ներդրումներ ու աշխատանքային ծախսումներ անել, գիտության ու տեխնիկայի նորագույն, առաջավոր նվաճումները կիրառելու միջոցով արտադրության կուլտուրան ու արտադրողականությունը բարձրացնել։ Հաճախ էլ գյուղում ստեղծված նոր կապիտալիստական հարաբերությունները, կալվածատիրական հին հարաբերությունների հետ միահյուսված (մանր տնտեսությունների քայքայումը, հողազրկության հետևանքով ազատ բանվորական ուժի աճը, գյուղատնտեսական մթերքների գների անկումը, հողի վարձակալման պայմանները և այլն), կաշկանդում ու նվազեցնում են կապիտալ ներդրումների էֆեկտիվությունը։*

*Այլ է գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման ուղին։ Այդ ուղիով գյուղատնտեսությունը զարգանում է արտադրության կազմակերպման ձևերի կատարելագործման, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով, միավորի՝ մեկ հեկտարի կամ մեկ գլուխ անասունի, ինչպես նաև հարյուր հեկտար հողատարածության հաշվով գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու միջոցով։ Լենինը, վերլուծելով գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ուղիները, ընդգծում էր, որ գյուղատնտեսության ինտենսիվացման ուղին արտադրության զարգացման ժամանակակից առաջադիմական ուղին է, որը բնորոշվում է նրանով, որ արտադրությունը զարգանում է, մթերքների արտադրությունն ավելանում է «... ոչ թե մշակելի հողի* ք ա ն ա կ ի *մեծացման միջոցով, այլ մշակման* ո ր ա կ ի *բարելավման միջոցով, հողի նախկին քանակի մեջ ներդրվող կապիտալի չափերի մեծացման միջոցով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 77, Երևան, 1951 թ.)։*

*Հիրավի, գյուղատնտեսության ինտենսիվ զարգացումը, որպես սննդամթերքների ու արդյունաբերական հումքի արտադրությունն ավելի նպատակահարմար եղանակով կազմակերպելու, գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման ռացիոնալ ուղի, իրեն միշտ էլ արդարացրել է։*

*Ընտրելով գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման ուղին, չպետք է բացառել նոր հողային տարածությունների (խամ ու խոպան հողերի) յուրացումը։ Սովետական Միությունը շատ ունի այդպիսի տարածություններ։ Նոր հողերի յուրացումը, անասնագլխաքանակի ավելացումը ևս պետք է կատարվեն ինտենսիվ ճանապարհով։ Սոցիալիստական գյուղատնտեսության ինտենսիվացումը բարձրացնում է հողի տնտեսական բերրիությունը, բարելավում հողերի օգտագործումը՝ որպես հողագործության հիմնական արտադրամիջոցի։*

*Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում արտադրության ինտենսիվացումը բխում է սոցիալիզմի տնտեսական հիմնական օրենքի օբյեկտիվ անհրաժեշտությունից։ Այն բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և բարելավում աշխատավորների նյութական բարեկեցությունը։*

*Սոցիալիստական գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացումը ավելացնում է ներտնտեսային կուտակումների չափերը և ընդլայնված վերարտադրությունն ավելի ծավալուն դարձնում, տնտեսությանը հնարավորություն տալիս ավելի շատ միջոցներ հատկացնելու ներտնտեսային կուտակումներին, հետևաբար՝ կապիտալ ներդրումներին։ Այսպես, օրինակ՝ 1940 թվականին Սովետական Միության կոլտնտեսությունների դրամական եկամուտները կազմել են 20,7 միլիարդ ռուբլի, որից կապիտալ ներդրումների ֆոնդին հատկացվել է 0,6 միլիարդ ռուբլի, իսկ 1959 թվականին՝ 136,9 միլիարդ ռուբլուց՝ 33,3 միլիարդ ռուբլի։*

*Սակայն կոլտնտեսային արտադրության ինտենսիվացումը, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, հարստացումը միայն ներկոլտնտեսային միջոցների հաշվին չի տեղի ունենում. դրանում շատ մեծ, տնտեսական զարգացման առանձին էտապներում նույնիսկ վճռական տեղ են գրավում պետական բյուջեով նախատեսված ծախսումները—վարկերը։ 1951/1955 թվականներին ՍՍՌՄ գյուղատնտեսության մեջ ներդրված 131 մլրդ ռուբլուց 64 միլիարդը, 1956/1958 թվականներին՝ 140 միլիարդից 67-ը ներդրվել է պետական բյուջեից. 1959/1965 թվականներին՝ 500 միլիարդից՝ 150 միլիարդը կհատկացվի պետական բյուջեից (հին մասշտաբի դրամով)։ Կապիտալ ներդրումների միջոցով ավելի ամրապնդվեց կոլտնտեսությունների նյութատեխնիկական բազան, և ավելացան նրանց անբաժանելի ֆոնդերը։ Ներկայումս կոլտնտեսու-*

թյունների անբաժանելի ֆոնդերը մեծ չափերի են հասել և 1940 թվականի համեմատությամբ աճել են մոտ 61 անգամ։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևորագույն ցուցանիշներից մեկն էլ նրա էներգետիկ բազայի զարգացումն է և դրա միջոցով գյուղատնտեսական արտադրական պրոցեսների մեքենայացման մակարդակի բարձրացումը։ Սովետական Միության գյուղատնտեսության էներգետիկ հզորությունը 1960 թվականի սկզբներին կազմում էր 141,1 միլիոն ձիաուժ, որից 136 միլիոնը եղել է մեխանիկական ուժ, 1916 թվականի 23,9 միլիոն ձիաուժ կարողության դիմաց, որից միայն 0,2 միլիոն ձիաուժն էր մեխանիկական։ Մեր ռեսպուբլիկայում մոտավոր հաշիվներով 1960 թվականին գյուղատնտեսության էներգետիկ միջոցները, 1916 թվականի համեմատությամբ, աճել են մոտ 8,5—9 անգամ։

Գյուղատնտեսության ինտենսիվացման, նրա էներգետիկ ռեսուրսների աճման շնորհիվ արագորեն ավելանում է աշխատողի էներգազինվածությունը։ Այսպես, եթե 1913/1917 թվականներին մեկ աշխատողին հասնում էր 0,5 ձիաուժ էներգամիջոց, ապա 1959 թվականի վերջերին այն բարձրացավ մինչև 4,7 ձիաուժի, կամ, եթե 1916/1917 թվականներին 100 հեկտար ցանքատարածության հաշվով էներգետիկ ռեսուրսները կազմում էին 20 ձիաուժ, ապա 1959 թվականին հասան 70 ձիաուժի։

Գյուղատնտեսության էներգետիկայի ռեսուրսների բազմակողմանի աճը, գյուղատնտեսական մեքենաների ճիշտ սիստեմներ ստեղծելը հնարավորություն տվեցին սովխոզներում ու կոլտնտեսություններում լայն կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու արտադրական պրոցեսները։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրում նշված է. «Հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է։ ...Գյուղատնտեսության վերելքի և գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ երկրի աճող պահանջների բավարարման գլխավոր ուղին բազմակողմանի մեքենայացումն ու հետևողական ինտենսիվացումն է՝ հասնել գիտության և առաջավոր փորձի հիման վրա բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում հողագործության ու անասնաբուծության բարձր կուլտուրայի, շեշտակիորեն բարձրացնել բոլոր կուլտուրաների բերքատվությունը և ավելացնել արտադրանքի ստացումը յուրաքանչյուր հեկտարից՝ աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով»։

Առաջիկա տասնամյակի ընթացքում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում տեխնիկական առաջադիմության միջոցով պետք է ավարտվի արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը, թե՛ հիմնական և թե՛ օժանդակ բոլոր պրոցեսներում ձեռքի աշխատանքը փոխարինվի մեքենայական, բարձր արտադրողական աշխատանքով։

Արտադրության միջոցների սոցիալիստական համաժողովրդական սեփականության պայմաններում տեխնիկական առաջադիմությունը, արտադրական պրոցեսների ավելի ռացիոնալ կազմակերպումը բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, պայմաններ ստեղծում ավելի կարճ բանվորական օրվա անցնելու և դրա հիման վրա աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար։

Ներկա ժամանակաշրջանում սոցիալիստական գյուղատնտեսության կա-



րևորագույն խնդիրն է՝ արագորեն բարձրացնել արտադրության կուլտուրան։ Տեխնիկական առաջադիմության հիման վրա, արտադրության ինտենսիվացման ընթացքում կլուծվի նաև այդ խնդիրը։

Պարտիայի Նոր Ծրագրում ասված է. «Տեխնիկական առաջադիմությունը զգալիորեն կբարձրացնի արտադրության կուլտուրային, բոլոր աշխատավորների մասնագիտական և հանրակրթական պատրաստությանը առաջադրվող պահանջները: Նոր տեխնիկայի զարգացումը կօգտագործվի սովետական մարդու աշխատանքի պայմանները արմատապես բարելավելու և հեշտացնելու, աշխատանքային օրը կրճատելու և կենցաղը բարեկարգելու, ծանր ֆիզիկական աշխատանքը, իսկ հետո էլ ամեն տեսակ ոչ որակյալ աշխատանքը վերացնելու համար»: Սա լրիվին և անվերապահորեն վերաբերում է նաև սոցիալիստական գյուղատնտեսությանը և կանխորոշում է նրա զարգացման սպասվելիք արդյունքները։

Ներկայումս Սովետական Միության գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը հասել է. վարի գծով 99 տոկոսի, հացահատիկների ցանքում՝ 97 տոկոսի, բամբակի և շաքարի ճակնդեղի ցանքում՝ 100 տոկոսի; հացահատիկի բերքահավաքի գծով՝ 92—94 տոկոսի, տեխնիկական կուլտուրաների բերքահավաքի՝ 60—75 տոկոսի և այլն։ Գյուղատնտեսության էներգետիկ ռեսուրսների արագ ու բազմակողմանի աճը արտադրության բուռն զարգացման ու աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման գլխավոր նախապայմանն է։ Ուստի, մեր ունեցած առաջավոր տեխնիկան պետք է ռացիոնալ օգտագործվի։

Գյուղատնտեսության էներգետիկ ռեսուրսների արագ զարգացման առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ գնալով ավելի լայնորեն է արմատավորվում էլեկտրաէներգիան։ Միայն 1940—1958 թվականներին գյուղատնտեսության մեջ օգտագործված էլեկտրաէներգիայի ծավալը աճել է մոտ 13 անգամ։ Այս նշանակում է, որ գյուղատնտեսության սոցիալիստական ինտենսիվացումը արագորեն բարձրացնում է գյուղատնտեսական աշխատանքի էներգազինվածությունը, արտադրական պրոցեսների մեքենայացման աստիճանը, բարելավվում աշխատանքային պայմանները և աստիճանաբար իրականացնում գյուղատնտեսական աշխատանքը արդյունաբերական աշխատանքի տարատեսակը դարձնելու պարտիայի ծրագրի առաջադրանքը։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևորագույն ցուցանիշներից մեկն էլ ժամանակին, ճիշտ հարաբերակցությամբ և անհրաժեշտ տեսակի ու քանակի պարարտանյութերի գործադրումն է։

Պարտիայի Ծրագրում գյուղատնտեսության արտադրական վերելքը ապահովելու համար առաջարկվում է. «Իրագործել գյուղատնտեսության ռացիոնալ ու համակողմանի քիմիացումը՝ լրիվին բավարարել գյուղատնտեսության պահանջները հանքային պարարտանյութերի ասպարեզում, մոլախոտերի, բույսերի ու անասունների հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարելու քիմիական միջոցների ասպարեզում. բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում ապահովել տեղական պարարտանյութերի լավագույն օգտագործումը»:

Ցարական Ռուսաստանի գյուղատնտեսությունը 1913 թվականին գործադրել է ընդամենը 188 հազար տոննա հանքային պարարտանյութ կամ մեկ հեկտար ցանքատարածության հաշվով՝ 1,5 կիլոգրամ. Սովետական Միությունում

1959 թվականին գործադրվել է մոտ 13 միլիոն տոննա, կամ մեկ հեկտար ցանքատարածության հաշվով 56,5 կիլոգրամ։ Իհարկե, այս քանակությունը դեռ բավարար չէ։ Բերքատվության բարձրացման յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքը կատարելու համար անհրաժեշտ է արտադրել առնվազն 31 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, միաժամանակ լայնորեն օգտագործելով տեղական պարարտանյութերը։

Հատուկ ուշադրություն պետք է դարձնել գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարի քիմիական միջոցների գործադրմանը։ Բույսերի պաշտպանության Համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հաշիվներով այդ նպատակով ծախսված մեկ ռուբլին (աշխատանքային ծախսումների կրճատման ու բերքի պահպանման միջոցով) հացահատիկի մշակության բնագավառում կբերի 5—10, տեխնիկական կուլտուրաների՝ 15—30, պտղաբուծության բնագավառում 30—40 ռուբլի եկամուտ։ Իսկ ընդհանուր տարեկան կարելի է ստանալ՝ 25 միլիոն տոննա հացահատիկի, 0,6 միլիոն տոննա բամբակի հումքի, 2,6 միլիոն տոննա շաքարի ճակնդեղի, 1,1 միլիոն տոննա խաղողի լրացուցիչ բերք։ Այսպիսով կարելի է մի քանի տասնյակ միլիարդ ռուբլի լրացուցիչ եկամուտ ստանալ։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումը, որպես արտադրության ինտենսիվացման կարևորագույն գործոն, մեր երկրի շատ գոտիներում անհնար է առանց ոռոգելի տարածությունների ընդարձակման ու ջրով ապահովելու։ Դրա համար էլ պարտիայի Ծրագրում հանձնարարվում է. «Իրագործել իռիգացիոն շինարարության ընդարձակ ծրագիր՝ չորային շրջաններում միլիոնավոր հեկտար նոր հողեր ոռոգելու ու ջրովի դարձնելու և գոյություն ունեցող ջրդի հողագործության վերելքի համար. ընդլայնել դաշտապաշտպան անտառատնկումների, ջրավազանների կառուցման, արոտավայրերի ջրամատակարարման և չափից ավելի խոնավ հողերի մելիորացիայի աշխատանքները...»։

Սովետական իշխանության տարիներին երկրի ոռոգվող հողատարածությունները ավելացել են մոտ 3 անգամ, իսկ մեր ռեսպուբլիկայում (որտեղ ինտենսիվ, առավել արդյունավետ հողագործություն ստեղծելու գլխավոր պայմաններից մեկը ոռոգումն է)՝ մոտ 4,5 անգամ։ Մեր երկրի ոռոգման ջրային ռեսուրսները շատ մեծ են, բայց պետք է ռացիոնալ օգտագործել դրանք, պայքարել ջրի կորուստների դեմ։ Մոտակա 10—20 տարիների ընթացքում հսկայական աշխատանք է նախատեսվում այդ բնագավառում։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևորագույն ցուցանիշներից է անասնաբուծության զարգացումը, անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը։

Աչքի ընկնող նվաճումների է հասել սոցիալիստական անասնաբուծությունը, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի 1953—1954 թվականների միջոցառումներից հետո։ Այսպես, 1916 թվականի համեմատությամբ, 1954 թվականի հունվարին երկրում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 2,6 միլիոնով պակաս էր, իսկ 1960 թվականի հունվարին՝ 15,8 միլիոնով ավելի, որից 5,7 միլիոն գլուխը՝ կով. խոզերի գլխաքանակն ավելացավ 30,3 միլիոն, ոչխարներինը՝ 46,3 միլիոն գլխով։

Անասունների գլխաքանակի աճի հետ մեկտեղ տեղի ունեցան նաև որակական մեծ փոփոխություններ. ավելացավ ցեղական անասունների գլխա-



քանակը։ Այժմ սովխոզների և կոլտնտեսությունների խոշոր եղջերավոր անասունների 83, խոզերի 94, ոչխարների 93 տոկոսը բարձրորակ ցեղական կազմ ունեն։ Ցեղայնության բարելավման, կերի բազան համեմատաբար ամրապնդելու և անասունների պահպանության ավելի առաջավոր ձևեր կիրառելու շնորհիվ զգալի չափով բարձրացել է անասունների մթերատվությունը։ Բավական է ասել, որ 1953—1958 թվականներին, նախորդ հինգ տարվա ժամանակաշրջանի հետ համեմատած, ավելի է արտադրվել՝ միս և ճարպ 32, կաթ՝ 61, բուրդ՝ 36, ձու՝ 44 տոկոսով։

Սակայն պետք է նշել, որ 100 հեկտար հողատարածության հաշվով անասնագլխաքանակը խիստ պակաս է. 1959 թվականի տվյալներով 100 հեկտար հողատարածության դիմաց խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հասել է 15-ի, որից միայն 7-ը կով, խոզերինը՝ 24-ի և ոչխարներինն ու այծերինը՝ 29-ի։

Մեր ռեսպուբլիկայում պատկերը այլ է. գյուղատնտեսական հողատարածությունների սահմանափակ լինելու հետևանքով 100 հեկտարի հաշվով պահվում է 45 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից կով՝ 17, խոզ՝ 22, ոչխար՝ 141 գլուխ։ Ռեսպուբլիկայի թվերը ավելի բարձր կլինեն, եթե մի շարք անասնապահական շրջաններ արագացնեն անասնապահության զարգացման տեմպերը, այն հասցնելով գոնե ռեսպուբլիկական միջինին։ Այսպես, ռեսպուբլիկայում 100 հեկտարի հաշվով միջին թվով պահում են 17 կով. մինչդեռ Ազիզբեկովում պահում են 7, Սիսիանում և Թալինում՝ 9, Կոտայքում և Վեդիում՝ 11, Բասարգեչարում՝ 12 գլուխ կով և այլն։ Ռեսպուբլիկայում 100 հեկտարի հաշվով արտադրվում է 231 ցենտներ կաթ։ Մինչդեռ Թալինում արտադրվում է 88, Սիսիանում՝ 125, Բասարգեչարում՝ 131 ցենտներ։

Պարտիայի Ծրագրում նշված է, որ մսի արտադրանքը առաջիկա տասը տարում ավելանալու է երեք անգամ, իսկ քսան տարում գրեթե չորս անգամ, կաթինը՝ համապատասխանորեն երկու և երեք անգամ։ Անասնաբուծական մթերքների արտադրանքը շեշտակիորեն ավելացնելու համար անհրաժեշտ է կատարելագործել անասունների պահպանման ձևերը, բարելավել ցեղը, կերակրման պայմանները, ավելի շատ մշակել եգիպտացորեն, շաքարի ճակնդեղ, կերի լոբազգի կուլտուրաներ և այլն։ Միաժամանակ պետք է բարձրացնել անասնաբուծության բնագավառի աշխատողների աշխատանքային կուլտուրան, պատասխանատվությունն ու նյութական շահագրգռվածությունը։ Այս միջոցառումները, անկասկած, կապահովեն անասնաբուծական բոլոր մթերքների արտադրության սահմանված մակարդակը և հնարավորություն կտան այդ մթերքների արտադրությամբ (մեկ շնչի հաշվով) նախատեսված ժամանակից շուտ հասնել ու անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Հայտնի է, որ 1959 թվականի դրությամբ Սովետական Միությունը յուղի արտադրությամբ մեկ շնչի հաշվով անցել է Ամերիկայի Միացյալ Նահանգներին (ՍՍՌՄ—4 կգ, ԱՄՆ—3,7 կգ) և ընդհուպ մոտեցել է ԱՄՆ-ում կաթի արտադրության մակարդակին (համապատասխանորեն 297 և 319 կգ)։

Երկրի կոլտնտեսություններում, սովխոզներում օրեցօր ավելի լայն պայքար է ծավալվում շատ արտադրանք տալու համար։ Մսի արտադրության բնագավառում չգերազանցված օրինակներ կան առանձին սովխոզներում։ Այսպես, օրինակ, Արևմտյան Ղազախստանի Ջաղաևկի շրջանի «Անկատինսկի» սովխոզում մսացու մեկ հորթի միջին աճը ծնվելու պահին կազմում է 25, 8 ամսա-

կան հասակում՝ 197, մեկ տարեկան հասակում՝ 278, 15 ամսական հասակում՝ 356 և 18 ամսական հասակում՝ 417 կիլոգրամ։ Ո՞րն է այս չգերազանցված արտակարգ թվերի «գաղտնիքը»։ Ցեղի բարելավում, ավելի շատ եգիպտացորեն, շաքարի ճակնդեղ, հոգատար վերաբերմունք ու շահագրգռվածություն — պատասխանում են սովխոզի աշխատողները։ Այսպիսի նվիրական աշխատանքը միայն կիրականացնի պատմական այն մեծ առաջադրանքները, որոնք այսօր դրված են կոլտնտեսային գյուղի աշխատավորների առջև։

Մեր գյուղատնտեսության կազմակերպման ու զարգացման ներկա ժամանակաշրջանի կարևորագույն խնդիրներից մեկն էլ արտադրության ճիշտ, գիտականորեն հիմնավորված տեղադրումն ու մասնագիտացումն է։

Դեռևս 1956 թվականին ՍՄԿՊ XX համագումարը հանձնարարեց հողային օրգաններին՝ «Ապահովել գյուղատնտեսության առանձին ճյուղերի տնտեսական տեսակետից նպատակահարմար տեղաբաշխումը և հողագործության ու անասնաբուծության մասնագիտացումը երկրի շրջաններում, հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի, իսկ շրջանի ներսում՝ կոլտնտեսության ու սովխոզի բնական ու տնտեսական պայմանները, նկատի ունենալով 100 հեկտար հողատարածությունից ստացվող արտադրանքի խիստ ավելացումը՝ աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումով»։ Այս առաջադրանքը կատարելու համար նշանակալի աշխատանք ծավալվեց նաև մեր ռեսպուբլիկայում։ Այդ աշխատանքը շարունակվում է և անկասկած կպսակվի հաջողությամբ։

Պարտիայի Ծրագրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակության նյութական բարեկեցության բարձրացման գործում վճռական տեղը տրված է տեխնիկական առաջադիմությանը, արտադրության կուլտուրայի բարձրացման հիման վրա աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացմանը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը գյուղատնտեսության բնագավառում կոլտնտեսությունների սեփական միջոցներից մեծ գումարներ է պահանջելու. ներկոլտնտեսային կուտակումների ներկա տեմպերն ու մասշտաբները չեն կարող բավարարել այդ պահանջները. ուստի անհրաժեշտ է աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով շեշտակիորեն ավելացնել նյութական բարիքների արտադրությունը, խնայել արտադրական ծախսումները, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը և մեծ չափով ավելացնել ներտնտեսային կուտակումները։

Ինչպես արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը պետք է գերազանցի աշխատավարձի աճմանը, այնպես էլ կոլտնտեսություններում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը մեծ չափով պետք է գերազանցեն կոլտնտեսականների անձնական սպառման ֆոնդերի աճման տեմպերը, քանի որ գյուղատնտեսության մեջ անհամամասնությունը այդ բնագավառում շատ մեծ է։

Պարտիայի նոր Ծրագրում նշված միջոցառումների իրականացումը գյուղատնտեսական աշխատանքների արտադրողականությունը կբարձրացնի այնպիսի աստիճանի, որ հնարավորություն կտա ստեղծելու մթերքների լիակատար առատություն և ըստ աշխատանքի բաշխման սկզբունքից ըստ սպառման պահանջների բաշխման սկզբունքին անցնելու։

---

# ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

«Բուրժուական հասարակության մեջ տիրում է ոչ թե եղբայրություն, այլ կատաղի դասակարգային պայքար»։
(ՍՄԿՊ Ծրագրից)

ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված պարտիայի նոր Ծրագիրը, վերլուծելով ժամանակակից կապիտալիստական աշխարհում տեղի ունեցող դասակարգային պայքարը, մատնանշում է, որ բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը համաշխարհային պատմական հաղթանակներ է տարել, իսկ նրա գլխավոր նվաճումը համաշխարհային սոցիալիստական սիստեմն է։

Մարքսն ու Էնգելսը գրելով գիտական կոմունիզմի առաջին ծրագրային փաստաթուղթը՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», նշում էին. «Մի ուրվական է շրջում Եվրոպայում. դա կոմունիզմի ուրվականն է»։ Այո՛, այն ժամանակ կոմունիզմը ուրվական էր միայն Եվրոպայում։ Ուղիղ 114 տարի առաջ, 1847 թվականին, երբ ստեղծվեց կոմունիստական առաջին կազմակերպությունը՝ Կոմունիստների միությունը, նրա շարքերում կար ընդամենը 300 մարդ։ 70 տարի անց, 1917 թվականին՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի արշալույսին, կոմունիստների թիվն աշխարհում հասնում էր 300.000 մարդու։ Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին արդեն 43 երկրներում գործում էին կոմունիստական պարտիաներ, որոնց շարքերում կար 4.202.000 կոմունիստ։ Պատերազմի վերջին կոմունիստական պարտիաների թիվը հասավ 75-ի, իսկ այդ պարտիաների անդամների թիվը՝ 20 միլիոնի։ Այսօր աշխարհի 87 երկրներում կան կոմունիստական և բանվորական պարտիաներ, որոնցում միավորված են 40 միլիոն կոմունիստներ։ Համաշխարհային կոմունիստական շարժումը դարձել է մեր դարաշրջանի ամենահզոր ուժը։ Կոմունիզմն ուրվականից դառնում է իրականություն։ Ժամանակակից աշխարհի յուրաքանչյուր 3 մարդուց մեկը հաստատ կերպով քայլում է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիով. կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը դարձել է մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը։ Մեր ժամանակի գլխավոր բնորոշ գիծն այն է, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը գրավում է երկրագնդի տերիտորիայի 26 տոկոսը։ Այդ տերիտորիայում ապրում է աշխարհի բնակչության մոտավորապես 36 տոկոսը և արտադրվում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 1/3-ը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն «... իր օրինակով ռևոլյուցիոնացնող ազդեցություն է գործում կապիտալիստական աշխարհի աշխատավորների մտքերի վրա, — ասված է ՍՄԿՊ Ծրագրում, — նրանց պայքարի է ոգեշնչում ընդդեմ իմպերիալիզմի և հսկայական չափով հեշտացնում է այդ պայքարի պայմանները»։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապը, որն սկսվել է մեր դարի 50-ական թվականների կեսերից, նշանավորվեց միջազգային բանվորական շարժման հետագա զարգացմամբ։ Այդ ճգնաժամի բնորոշ գիծն այն է, որ

այն խորանում է ոչ թե պատերազմի, այլ խաղաղության պայմաններում։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումն ամենից առաջ վերաբերում է Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Խոսենք փաստերով. հետպատերազմյան տարիներին ԱՄՆ-ում տեղի ունեցավ արտադրության երեք ճգնաժամային անկում։ Եթե 1948—1949 թթ. ԱՄՆ-ի արտադրության անկումը կազմեց 8 տոկոս, ապա 1953—1954 թթ.՝ 10 տոկոս, 1957—1958 թթ.՝ 14 տոկոս։ ԱՄՆ-ը մշտապես տառապում են կապիտալիզմին հատուկ խրոնիկական գործազրկությամբ։ Կապիտալիստական բոլոր երկրներում էլ գործազրկությունը մեծ չափերի է հասնում։

Կապիտալիստական աշխարհում արտադրական հարաբերությունների և արտադրողական ուժերի միջև գոյություն ունեցող կոնֆլիկտը երբեք այնքան խոր չի եղել, ինչպես ներկայումս։ Ավելի ու ավելի է խորանում կապիտալիստական արտադրության անարխիկ բնույթը։ Մեծ չափով ուժեղանում է կապիտալիստական արտադրության համակենտրոնացման պրոցեսը, որն ավելի է նպաստում մոնոպոլիաների գերշահույթների աճմանը։ Մոնոպոլիստական կապիտալիզմը վերածվել է պետական - մոնոպոլիստական կապիտալիզմի, դրանով իսկ մոնոպոլիաների ուժը միանում է պետության ուժի հետ և այդ միասնական մեխանիզմով իրագործվում է բանվոր դասակարգի շահագործումը ծայրահեղ ձևով և իմպերիալիստական բուրժուազիայի շահույթների ապահովումը առավելագույն չափով։ Ինչպես նշվում է ՍՄԿՊ Ծրագրում, մոնոպոլիստական բուրժուազիան անօգուտ պալար է դարձել հասարակական օրգանիզմի վրա, ավելորդ է դարձել արտադրության պրոցեսի համար։ Գործարաններն ու ֆաբրիկաները ղեկավարում են մոնոպոլիստների վարձու կամակատարները։ Մոնոպոլիստները պարազիտային կյանք են վարում և իրենց կամակատարների հետ միասին հափշտակում են ազգային եկամտի նշանակալի մասը։

Ներկայումս ԱՄՆ-ում աշխատավորներից գանձում են ֆեդերալ կամ համապետական, նահանգական, տեղական, քաղաքային և բազմաթիվ այլ հարկեր, որոնք ավելի են վատթարացնում աշխատավորների նյութական դրությունը։ «Լեյբորս էկոնոմիկ ռևյու» ամսագրի տվյալներով 1960 թվականին ԱՄՆ-ում 7,5 միլիոն մարդ իրենց գոյությունը պահպանել են ողորմությունների հաշվին։ Նույն ամսագիրը գրում է, որ ամերիկացիների 20 տոկոսից ավելին, այսինքն՝ ավելի քան 40 միլիոն մարդ, զուրկ է ապրուստի անհրաժեշտ մինիմումից։ ԱՄՆ-ում գոյություն ունեցող ուղղակի և անուղղակի հարկերը կլանում են աշխատավորների վաստակի մոտ երրորդ մասը։ Ստացվում է, որ ամերիկյան բանվորը յուրաքանչյուր երեք ամսից մեկ ամիսը ստիպված է աշխատել մոնոպոլիաների հարստացման համար։ Վերլուծելով կապիտալիստական երկրներում ժամանակակից հարկային վիճակը, Ն. Ս. Խրուշչովը մատնանշում է, որ կապիտալիստական երկրների հարկային բարդ մեխանիզմը մի հսկա պոմպի նման միջոցները աշխատավոր մասսաների գրպանից վերամղում է մոնոպոլիաների լայն գրպանը, որոնք հսկայական շահույթներ են դիզում հիմնականում հարկերի հաշվին բարձր գներով վճարվող ռազմական պատվերներից։

Ինչ վերաբերում է գաղութային և կախյալ երկրների բանվոր դասակարգին, ապա նա տառապում է եռակի լծի տակ։ Օտարերկրյա իմպերիալիզմը, տեղական կոմպրադորական բուրժուազիան և հողատերերը անխնա կողոպտում են այդ երկրների բանվորներին։ Ֆրանսիական գաղութ Ռեունիոնում բանվորների բնակարանի վարձը կազմում է աշխատավարձի մոտ կեսը, իսկ կղզու բնակիչների 15 տոկոսը մշտապես գործազուրկ է։ Հետաքրքրական է, որ ռեունիոնցու տարեկան միջին եկամուտը կազմում է 20 հազար ֆրանկ, այսինքն՝ ֆրանսիական պատժիչ զորքերի զինվորի մեկ ամսվա աշխատավարձի ¼-ը։ Իմպերիալիստական և ֆեոդալական-կալվածատիրական լծի տակ են գտնվում նաև գյուղացիական մասսաները, մանր առևտրականներն ու արհեստավորները։ Օտարերկրյա իմպերիալիստների ճնշումը շոշափում է նաև ազգային բուրժուազիայի շահերը։ Կապիտալիզմի գովերգուների և ռևիզիոնիստների պնդումներն այն մասին, թե իբր ժամանակակից կապիտալիզմը վերածվել է «ժողովրդական կապիտալիզմի», թե ստեղծվել է, այսպես կոչված, «ընդհանուր բարօրության



պետություն», որի միջոցով բարելավվում է աշխատավորների դրությունը, միայն զավեշտ են առաջացնում։

Կապիտալիստական երկրներում աշխատավորների տնտեսական վիճակի մասին լավ պատկերացում է տալիս հետևյալ աղյուսակը.

Ապրուստի արժեքի ինդեքսը մի շարք կապիտալիստական երկրներում
(1953 թվականը=100)

| | 1959 թ. | 1960թ. |
|---|---|---|
| ԱՄՆ | 109 | 111 |
| Անգլիա | 120 | 121 |
| Ֆրանսիա | 129 | 134 |
| ԳՖՌ | 112 | 114 |
| Իտալիա | 113 | 115 |
| Իսպանիա | 150 | 152 |
| Արգենտինա | 464 | 590 |
| Իրան | 152 | 164 |

Բերված թվերը ցույց են տալիս, որ կապիտալիստական երկրներում ապրուստի արժեքի ինդեքսը բարձրացել է, որի պատճառով էլ վատացել է աշխատավորների դրությունը։ Բանվոր դասակարգի նյութական վիճակի անընդհատ վատթարացումը է՛լ ավելի է սրում հակասությունը աշխատանքի ու կապիտալի միջև։

Կապիտալիստական երկրների ներկա տնտեսական ու քաղաքական վիճակը որոշակիորեն հանգեցնում է աշխատանքի և կապիտալի միջև հակասության սրմանը, բանվորական շարժման է՛լ ավելի ծավալմանը։ Կապիտալի երկրները մշտապես ցնցվում են դասակարգային մարտերից, ծավալվում են բանվոր դասակարգի մարտական ելույթները հանուն իր տնտեսական ու քաղաքական շահերի պաշտպանության։

Բանվոր դասակարգն իր ավանգարդի՝ կոմունիստական և բանվորական պարտիաների գլխավորությամբ ուժեղացնում է պայքարը մոնոպոլիաների բռնության դեմ՝ հանուն իր կենսապայմանների բարելավման, ժողովրդի դեմոկրատական իրավունքների և ազատությունների ընդլայնման։ Այդ պահանջների բավարարման համար պայքարը իրականացվում է՝ չսպասելով մինչև սոցիալիզմի հաղթանակը։ Դրանով տեղի է ունենում մասսաների նախապատրաստում և նպաստավոր պայմաններ են ստեղծվում կապիտալիզմի հետ վճռական ճակատամարտեր տալու համար։ ՍՄԿՊ Ծրագիրը ելնում է այն բանից, որ մոնոպոլիաների դեմ մղվող դեմոկրատական պայքարը չի հեռացնում սոցիալիստական ռևոլյուցիան, այլ մոտեցնում է այն։ Դեմոկրատիայի համար մղվող պայքարը սոցիալիզմի համար մղվող պայքարի բաղկացուցիչ մասն է։ Որքան ավելի խորն է դեմոկրատական շարժումը, այնքան ավելի է բարձրանում մասսաների քաղաքական գիտակցության մակարդակը, այնքան ավելի ակնհայտ է դառնում նրանց համար, որ միայն սոցիալիզմն է նրանց առջև ճանապարհ բացում դեպի իսկական ազատություն և բարեկեցություն։

ՍՄԿՊ Ծրագրում հանգամանորեն վերլուծված է կապիտալիստական հասարակության պրոլետարականացման հարցը։ Կապիտալիստական երկրների մոնոպոլիաները քայքայում են քաղաքի մանր սեփականատերերին, կազմալուծում են արհեստագործական արտադրությունը։ Ժամանակակից պայմաններում կապիտալիստական երկրների միլիոնավոր ֆերմերներ և գյուղացիներ հեռացվում են իրենց հողերից, իսկ նրանց տնտեսությունն աճուրդի է հանվում։ Այսպիսով, կյանքը լիովին հաստատում է մարքսիստական դրույթն այն մասին, որ կապիտալիստական հասարակության մեջ պրոլետարականացումն անընդհատ ուժեղանում է։

Կապիտալիստական երկրների պրոլետարական բանակն իր շարքերում ունի 300 միլիոն մարդ։ Դրանցից 140 միլիոնն ապրում է Լատինական Ամերիկայի, Աֆրիկայի, Ասիայի տնտեսապես թույլ զարգացած երկրներում։ Արդյունաբերական բանվորների թիվը կապիտալիստական երկրներում հասնում է ավելի քան 112 միլիոն մարդու։

Ներկայումս դասակարգային պայքարի կարևոր կողմերից մեկն այն է, որ նպաստավոր պայմաններ են ստեղծվել այն բոլոր ուժերի միավորման համար, որոնք շահագրգռված են մոնոպոլիաների տիրապետության վերացմամբ։ Բացի բանվոր դասակարգից, այդ ուժերի մեջ են մտնում գյուղացիությունը, ինտելիգենցիան, քաղաքի մանր ու միջին բուրժուազիան։ Հիշյալ ուժերի միասնական գործողությունների շնորհիվ կարելի է իրագործել այնպիսի ձեռնար-

կումներ, որոնք կարևոր ավանդ կլինեն սոցիալական առաջադիմության ճանապարհին։ Ահա այդ ձեռնարկումները. ազգային անկախություն և դեմոկրատիայի պաշտպանություն ու զարգացում, էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերի ազգայնացում ու դրանց կառավարման դեմոկրատացում, բնակչության կարիքների բավարարման նպատակով ամբողջ էկոնոմիկայի խաղաղ օգտագործում, ագրարային ռեֆորմների իրագործում, մոնոպոլիաների կամայականություններից աշխատավորների շահերի պաշտպանություն և այլն։ Ճիշտ է, այս ձեռնարկումների իրագործումը չէր նշանակի մարդու շահագործման վերացում, բայց կլիներ նոր քայլ սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Այժմ կապիտալիստական երկրներում ստեղծվել են այնպիսի պայմաններ, երբ բանվոր դասակարգն իր ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ հնարավորություն ունի բանվորական և ժողովրդական ճակատի, տարբեր պարտիաների, հասարակական կազմակերպությունների համաձայնության ու քաղաքական համագործակցության տարբեր ձևերի հիման վրա միավորելու ժողովրդի մեծամասնությունը և առանց քաղաքացիական պատերազմի իր ձեռքը վերցնելու պետական իշխանությունը։

Հասկանալի է, որ տիրապետող դասակարգերը իշխանությունը կամավոր կերպով չեն զիջում, իսկ երբ նրանք դիմում են բռնության, բանվոր դասակարգի համար անհրաժեշտություն է դառնում ոչ խաղաղ անցումը սոցիալիզմին։ Դասակարգային պայքարի ձևերը և խստության աստիճանները կախված են ո՛չ միայն պրոլետարիատից, այլև շատ ռեակցիոն, հակառևոլյուցիոն ուժերի դիմադրությունից ու բռնության գործադրումից։

Ամբողջ կապիտալիստական սիստեմում տեղի է ունենում բանվոր դասակարգի պայքարի չտեսնված վերելք։ Նա մաքառում է հանուն իր կենսական շահերի ու իրավունքների։ Բանվոր դասակարգի պայքարի մեջ կարևոր տեղ է գրավում գործադուլային շարժումը։ Միայն 1960 թվականի ընթացքում կապիտալիստական բոլոր երկրներում գործադուլավորների թիվը հասավ ավելի քան 53 միլիոն մարդու։ 1960 թվականի դեկտեմբերի 20-ից մինչև 1961 թվականի հունվարի 23-ը Բելգիայում տեղի ունեցավ իր մասշտաբներով անօրինակ ընդհանուր գործադուլ, որին մասնակցեց մեկ միլիոն 200 հազար մարդ։ Գործադուլային շարժման առաջամարտիկները բելգիական կոմունիստներն էին։

Ֆրանսիայում ուժեղանում է աշխատավորների պայքարը դեմոկրատական ազատությունների համար, անձնական իշխանության ռեակցիոն ռեժիմի դեմ։ 1960 թվականի փետրվարի մեկը Ֆրանսիայի բանվորական շարժման մեջ նշանավորվեց համընդհանուր գործադուլով։ Գործադուլավորները պահանջում էին վերջ տալ գաղութային պատերազմին Ալժիրում և ֆաշիստական խժդժություններին՝ Ֆրանսիայում։

Վերջերս Փարիզի Ստենա արդյունաբերական արվարձանի «Բիշոն» ֆիրմայի ձեռնարկությունում կանգ առան հաստոցները։ Այդ գործադուլի առիթը Ալժիրի «կեղտոտ» պատերազմում Ֆրանսիացի երիտասարդ մեքենաշինարարի սպանությունն էր։ Ինչպես հայտնի է, Ֆրանսիայում մոնոպոլիստական բուրժուազիան ձգտում է վերացնել պառլամենտական դեմոկրատիան և իրագործել քաղաքական ռեժիմի ֆաշիզացում։ Այդ պայմաններում Ֆրանսիայի բանվոր դասակարգը երկու անգամ՝ 1960 թվականի հունվարին և 1961 թվականի ապրիլին իր հերոսական պայքարով ձախողեց ֆաշիստական ուժերի հանցավոր ելույթները։ Ֆրանսիական բանվոր դասակարգի հզոր ելույթներ տեղի ունեցան 1961 թվականի հոկտեմբերին։ Հայտնի է, որ ներկայումս Ֆրանսիայի երկաթուղայինների գնողունակությունը, 1938 թվականի համեմատությամբ, նվազել է 30 տոկոսով։ Իրենց նյութական դրությունը բարելավելու նպատակով, հոկտեմբերի 18-ին Ֆրանսիայի երկաթուղայինները գործադուլ հայտարարեցին։ Կառավարությունը հրաժարվեց բավարարել երկաթուղայինների աշխատավարձի բարձրացման արդարացի պահանջները, և դրանից հետո տեղի ունեցավ ֆրանսիական բանվոր դասակարգի հզոր ելույթը։ 1961 թվականի հոկտեմբերի 26-ին Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի, Քրիստոնյա աշխատավորների ֆրանսիական կոնֆեդերացիայի և «Ֆորս ուվրիեր» միավորման արհմիութենական կազմակերպությունների կոչով, երկաթուղայինները բողոքի 24-ժամյա գործադուլ հայտարարեցին։ Գործադուլին մասնակցեցին նաև Փարիզի նավահանգստային բանվորները, կոմունալ տնտեսության աշխատողները և «էր-Ֆրանս» ավիացիոն ընկերության ցամաքային անձնակազմը։ Նրանց միացան նաև Փարիզի տրանսպորտի աշխատողները, իսկ երկրի արդյունաբերության ամենատարբեր ճյուղերի բանվորներն ու ծառայողները համերաշխություն հայտնեցին գործադուլավոր երկաթուղայիններին։ Հոկտեմբերի 26-ին Փարիզը մնացել էր առանց մերձքաղաքային գնացքների, առանց մետրոյի և ավտոբուսների։ Գործադուլային շարժման մասնակիցները պահանջում էին բարձրացնել աշխատավարձը և բողոքում էին արհմիությունների իրավունքների սահմանափակման դեմ։

1961 թվականի նոյեմբերին գործադուլ արին Անգլիայի 2000 նավահանգստային բանվորներ. նրանց հետ միասին գործադուլ հայտարարեցին նաև Լոնդոնի օդանավակայանի 850 բեռնակիրներ։ Գործադուլավորները պահանջում էին բարձրացնել աշխատավարձը, ինչպես նաև աշխատանքում վերականգնել ապօրինի կերպով հեռացված բանվորներին։

1961 թվականի նոյեմբերին անսովոր գործադուլ տեղի ունեցավ Նորվեգիայի մայրաքաղաք Օսլոյում։ Ութ հազար վաճառողներ ամբողջ երկրում գործադուլ արեցին, որի հետևանքով աշխատանքը դադարեցրին 600 խանութներ։ Գործադուլավորները պահանջում էին աշխատավարձն անհապաղ բարձրացնել 25-30 տոկոսով։

1960 թվականին Իտալիայում գործադուլների պատճառով կորավ 29 միլիոն բանվորական օր, իսկ 1961 թվականի հունվարից մինչև սեպտեմբեր ընկած ժամանակամիջոցում կորած բանվորական օրերի թիվը կազմեց 49 միլիոն։ Գործադուլային շարժման հարվածները Իտալիայի կառավարողներին ստիպեցին որոշ զիջումներ անել կանանց ու տղամարդկանց աշխատանքի անհավասար վարձատրության գործում։

Ամերիկյան բանվոր դասակարգի գործադուլային շարժման պատմության մեջ խոշոր իրադարձություն էր, երբ 1961 թվականի սեպտեմբերին ավտոմոբիլային «Ջեներալ մոտորս» ընկերության 129 գործարաններից 100-ը դադարեցրին աշխատանքը։ Միայն սեպտեմբերի 11-ին գործադուլին մասնակցեցին ավտոմոբիլային արդյունաբերության արհմիության 250 հազար անդամ։ Գործադուլավորները պահանջում էին բարելավել աշխատանքի պայմանները, անվտանգության տեխնիկան, դադարեցնել ռասսայական խտրականությունը և այլն։

1961 թվականի սեպտեմբերին խոշոր գործադուլ տեղի ունեցավ նաև Ճապոնիայում։ Տրանսպորտային «Նիխոն Ցուուն» ընկերության 67 հազար բանվորներ 24-ժամյա գործադուլ հայտարարեցին։ Գործադուլավորները պահանջում էին բարձրացնել աշխատավարձը, բարելավել բանվորների նյութական դրությունը։ 1961 թվականի սեպտեմբերին մեծ գործադուլներ տեղի ունեցան նաև Հարավային Վիետնամում և այլ երկրներում։

Գործադուլային շարժումն ընդգրկել է տնտեսության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ մեքենաշինական, ավտոմոբիլային և մետաղամշակման արդյունաբերությունը։ Անցած տարվա միայն վերջին չորս ամիսների ընթացքում Հարավային Կորեայում արձանագրվել է 220 գործադուլ, իսկ Ֆիլիպիններում 1960 թվականի առաջին 9 ամիսներին տեղի է ունեցել 36 գործադուլ։ Հունաստանում 1960 թվականի ընթացքում տեղի է ունեցել 158 գործադուլ՝ 400 հազար բանվորների մասնակցությամբ։ Գործադուլային շարժումն ընդգրկել է նաև Աֆրիկայի մայրցամաքը։ Իրենց կենսապայմանների բարելավման պահանջներով հանդես են գալիս Տանգանիկայի շինարարներն ու Գամբիայի հանքագործները։

Գործադուլային շարժումը նոր, հզոր թափ է ստացել Լատինական Ամերիկայում։ Այդ ցամաքի երկրների բանվոր դասակարգի պայքարի վրա հսկայական դրական ազդեցություն է գործում Կուբայի հաղթական ռևոլյուցիան։ Ոչ լրիվ

տվյալներով 1960 թվականի ընթացքում Լատինական Ամերիկայի երկրներում գործադուլավորների թիվը հասավ 5,5 միլիոնի։

Գործադուլային շարժումը լայնորեն ծավալվում է Արգենտինայում։ 1961 թվականի նոյեմբերի 7—9-ը տեղի ունեցավ ընդհանուր գործադուլ։ Արգենտինյան բանվոր դասակարգի այդ խոշոր ելույթի նպատակն էր խափանել Ֆրոնդիսիի կառավարության նոր միջոցառումը՝ վերացնել մի քանի հազար կիլոմետր երկաթուղագիծ, աշխատանքից ազատել 70 հազար բանվորների և երկաթուղային արհեստանոցներն ու մյուս օժանդակ ծառայությունները հանձնել ԱՄՆ-ի մոնոպոլիաներին։ Վերջին ժամանակներս Արգենտինայում տեղի ունեցած խոշոր գործադուլներից չորսը ընդհանուր էին։ Միայն 1961 թվականի հոկտեմբերի 6-ի ընդհանուր գործադուլին մասնակցեցին ավելի քան չորս միլիոն աշխատավորներ։ Բացի բանվորներից այդ գործադուլին մասնակցում էին նաև մանր առևտրականներ, ուսանողներ և բնակչության այլ խավեր։ Վերլուծելով դասակարգային պայքարի ներկա վիճակը երկրում, Արգենտինայի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի քարտուղար Վիկտորիո Կոդովիլիան ՍՄԿՊ XXII համագումարի ամբիոնից հայտարարեց. «Արգենտինայում տիրող դրության բնորոշ գիծը բանվոր դասակարգի մարտունակության և քաղաքական գիտակցականության աճն է»։

Դասակարգային պայքարը նոր վերելք է ապրում նաև Բոլիվիայում։ Վերջերս երկրի ազգայնացված հանքերի բանվորները 20 օրով դադարեցրին աշխատանքը· դրանով կազմալուծվեց Բոլիվիայի երեք մեծ քաղաքների տնտեսական կյանքը։ Երկրում մեծ թափ է ստացել նաև դեմոկրատական իրավունքների համար մղվող պայքարը։ Երբ Բոլիվիա ժամանեց ՄԱԿ-ում ԱՄՆ-ի ներկայացուցիչ Ստիվենսոնը, տեղի ունեցավ ուսանողների և աշխատավորների հակաամերիկյան մեծ ցույց։ Զարմանալի չէ, որ ԱՄՆ վերադառնալուց հետո Ստիվենսոնը հայտարարեց, թե Բոլիվիան հղի է ռևոլյուցիոն պայթյունով։

Վերջին տարիներս Բրազիլիայի բանվոր դասակարգը հասավ այն բանին, որ որոշակի չափով բարձրացվեց աշխատավարձի մինիմումը։ Ինչ վերաբերում է գյուղացիական մասսաներին, ապա նրանք հետևողականորեն պայքարում են արմատական ագրարային ռեֆորմ անցկացնելու համար։

Կապիտալի երկրներում գործադուլային շարժման լայն թափի մասին լավ պատկերացում է տալիս հետևյալ աղյուսակը.

Ժամանակակից պայմաններում արագ աճում է կապիտալիստական երկրների պրոլետարիատի դասակարգային գիտակցականությունը։ Վերջին տարիներին նրա պայքարն ավելի մեծ չափով է քաղաքական բնույթ ընդունում։ Այսինքն, բանվոր դասակարգն ավելի ակտիվորեն է պայքարում իր քաղաքական իրավունքների համար, ընդդեմ մոնոպոլիաների ոտնձգություններ, իշխանության ֆաշիզացման, երկրի ռազմականացման և պատերազմի նախապատրաստության։ Այդ բանի վառ վկայությունն են քաղաքական գործադուլներն ու ցույցերը, որ տեղի են ունենում կապիտալիստական շատ երկրներում։ Եթե վերցնենք վերջին երեք տարիներին տեղի ունեցած քաղաքական գործադուլները, ապա կստացվի հետևյալ պատկերը. 1958 թվականին ամբողջ կապիտալիստական աշխարհում քաղաքական գործադուլներին մասնակցել է մոտ 10 միլիոն մարդ, այսինքն՝ այդ տարվա բոլոր գործադուլավորների 43 տոկոսը։ 1959 թվականին քաղաքական գործադուլավորների թիվը հասավ 22 միլիոն մարդու (այդ թվականի բոլոր գործադուլավորների 56 տոկոսը), իսկ 1960 թվականին՝ ավելի քան 41 միլիոն մարդու, այսինքն՝ այդ տարվա բոլոր գործադուլավորների թվի 73 տոկոսը։ Կապիտալիստական երկրներում քաղաքական

Գործադուլավորների թիվը կապիտալի աշխարհում 1956—1960 թվականներին (միլիոններով) [1]

| 1956 | 1957 | 1958 | 1959 | 1960 |
|---|---|---|---|---|
| 13,9 | 23,0 | 22,4 | 40,7 | 53,6 |

[1] Рабочее движение в капиталистических странах (1959—1961 гг.), Москва, 1961 г., стр. 107.



գործադուլների մասին ավելի լավ պատկերացում կազմելու համար բնորոշ է հետևյալ աղյուսակը.

Աշխատավորների քաղաքական պայքարը կապիտալիստական երկրներում

| Տարեթվերը | Գործադուլավորների թիվը (հազարներով) | | | |
|---|---|---|---|---|
| | Եվրոպա | Լատինական Ամերիկա | Ասիա | Ընդամենը |
| 1958 | | 4.200 | 5000 | 9.200 |
| 1959 | | 6.500 | 15.500 | 22.000 |
| 1960 | 13.600 | 5.500 | 22.000 | 41.100 |
| Ընդամենը՝ | 13.600 | 16.200 | 42.500 | 72.300 |

Հասկանալի է, թե ինչ է նշանակում քաղաքական գործադուլը բանվորական շարժման, բանվոր դասակարգի համար։ «Քաղաքական գործադուլի ժամանակ,— գրում էր Վ. Ի. Լենինը,— բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես ամբողջ ժողովրդի առաջավոր դասակարգը։ Այդպիսի դեպքերում պրոլետարիատը կատարում է ոչ թե պարզապես բուրժուական հասարակության դասակարգերից մեկի դերը, այլ հեգեմոնի, այսինքն ղեկավարի, առաջավորի, առաջնորդի դերը» (Երկեր, հ. 18, էջ 92—93)։

Անընդհատ ուժեղացող բանվորական շարժումը կապիտալիստական երկրներում է՛լ ավելի է բարձրացնում կոմունիստական պարտիաների հեղինակությունը։ Այդ բանի վառ վկայություններից մեկն էլ ընտրություններում կոմունիստներին տրվող ձայների անընդհատ աճն է։ Կապիտալիստական 30 երկրներում, որտեղ կոմունիստական պարտիաները գործում են լեգալ և մասնակցում են ընտրություններին, ստացել են ավելի քան 35 միլիոն ընտրողների ձայն։ Կոմունիստներին տրված ձայների քանակը զգալի չափով ավելացել է Ճապոնիայում, Չիլիում, Շվեդիայում, Ցեյլոնում, Իտալիայում, Ֆինլանդիայում, Հնդկաստանում և այլ երկրներում։

ՍՄԿՊ Ծրագրում մատնանշվում է, որ բանվոր դասակարգի նպատակների իրագործման ճանապարհին գլխավոր խոչընդոտը շարունակում է մնալ նրա շարքերի պառակտումը, որի պահպանմամբ շահագրգռված են տիրապետող դասակարգերը, սոցիալ-դեմոկրատիայի աջ պարագլուխները և արհմիությունների ռեակցիոն լիդերները։ Կոմունիստները վճռականորեն հանդես են գալիս հանուն այդ պառակտման հաղթահարման։ Նրանք գտնում են, որ ելնելով բանվորական շարժման արմատական շահերից, կոմունիստական ու սոցիալ-դեմոկրատական պարտիաները, ազգային ու միջազգային մասշտաբով, պետք է ընթանան համատեղ գործողությունների ուղիով։ Ներկայումս միլիոնավոր սոցիալ-դեմոկրատներ և մի քանի սոցիալ-դեմոկրատական պարտիաներ այս կամ այն ձևով արտահայտվել են այդ խնդիրների լուծման օգտին։ ՍՄԿՊ Ծրագիրը ելնում է այն ճշմարտությունից, որ սոցիալիզմի գործը չի կարելի առաջ տանել առանց բանվորական շարժման մեջ օպորտունիզմի դեմ վճռական պայքար մղելու։ «Միջազգային կոմունիստական շարժման միասնության վճռական պաշտպանությունը մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա,— ընդգծված է ՍՄԿՊ Ծրագրում,— այդ միասնությունը խախտող որևէ գործողության թույլ չտալը հաղթանակի պարտադիր պայմանն է այն պայքարում, որ մղվում է ազգային անկախության, դեմոկրատիայի և խաղաղության, սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրների հաջող լուծման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար»։

Ինչպես միշտ, այնպես էլ ներկա պայմաններում բանվորական շարժման նշանաբանը մնում է «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական լոզունգը։ Այդ լոզունգը խաղաղության, սոցիալիզմի ու դեմոկրատիայի համար աշխատավորների պայքարի և հաղթանակների լոզունգն է։ Ահա թե ինչու բանվոր դասակարգի բոլոր մարտական ջոկատները հավատարիմ են նրան։

Ամերիկյան բուրժուական թերթերի մեծամասնությունը համագումարի լուսաբանման հարցում շեշտը դնում է հատկապես ընկ. Խրուշչովի զեկուցումների երկու հարցադրումների վրա՝ գերմանական հարց և մեծ հզորության ջրածնային ռումբի փորձարկում: Որքան էլ ճիգ թափեն Արևմուտքի պրոպագանդիստները, նրանք չեն կարող լռության մատնել այն ճշմարտությունը, որ ընկ. Խրուշչովը Սովետական կառավարության անունից պատրաստակամություն հայտնեց համաձայնության հանգել Արևմուտքի հետ գերմանական և Բեռլինի հարցում և ցուցադրեց վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով լուծելու Սովետական Միության ձգտումը: Առանձնապես լայն մեկնաբանություններ է առաջացրել Ն. Ս. Խրուշչովի այն հայտարարությունը, թե Սովետական Միությունը պատրաստ է չպնդել, որ գերմանական հաշտության պայմանագիրը կնքվի անպայման այս տարի, եթե Արևմտյան տերությունները պատրաստակամություն դրսևորեն կարգավորելու գերմանական հարցը փոխադարձաբար ընդունելի հիմքի վրա: Սովետական կառավարության նման դիրքը խառնեց իմպերիալիստական ագրեսիվ շրջանների հաշիվները, որոնք աղմկելով սովետական ինչ-որ «ուլտիմատումի» մասին, փորձում են խորացնել Բեռլինի ճգնաժամը, Եվրոպան ներքաշել պատերազմի հորձանուտը:

Այժմ Արևմուտքում խիստ անհանգստացած են պարոնայք իմպերիալիստները Սովետական Միությունում ջրածնային ռումբերի փորձնական պայթեցումներից: Նրանց սարսափեցնում է մեր հզորությունը: Դրա համար հակասովետական պրոպագանդան կրկնապատկել է իր եռանդը՝ զրպարտելու համար մեր խաղաղասիրական քաղաքականությունը: Ինչպե՞ս կարող է Սովետական Միությունը չհոգալ իր և սոցիալիզմի լագերի անվտանգության մասին, չամրապնդել պաշտպանունակությունն ու ռազմական հզորությունը, երբ սոցիալիզմի հանդեպ թշնամությամբ լցված իմպերիալիզմի ռազմամոլ շրջաններն ուղղակի պատերազմական ավանտյուրայի կոչ են անում: Վերջերս Ամերիկյան ռազմա-օդային ուժերի Ասոցիացիայի հրապարակած հայտարարության մեջ մենք կարդում ենք. «Սովետական սիստեմի լրիվ արմատախիլ անելը պետք է լինի մեր ազգային նպատակը»: Ասոցիացիան պրեզիդենտին է դիմում կոչով՝ համազգային տագնապ հայտարարելու, համազգային մոբիլիզացիա անելու նոր, ավելի բարձր աստիճանի վրա:

Նման ավանտյուրիստների է պատասխանում ընկ. Խրուշչովը, ասելով. «Ամրապնդելով Սովետական Միության պաշտպանությունը, մենք գործում ենք ոչ միայն հանուն մեր շահերի, այլև հանուն բոլոր խաղաղասեր ժողովուրդների, բովանդակ մարդկության շահերի: Երբ խաղաղության թշնամիները մեզ ուժով սպառնում են, նրանց պետք է հակադրվի ուժ, այն էլ ավելի ազդու ուժ»:

Սովետական Միությունը խաղաղության գործի առաջամարտիկն է: Մեր պարտիայի ամբողջ գործունեությունն ուղղված է պատերազմը կանխելու, խաղաղ գոյակցության սկզբունքը պաշտպանելու, մեր ժողովրդի համար երջանիկ ու ապահով կյանքի պայմաններ ստեղծելու նպատակին:

Հավատարիմ միջուկային զենքի գործադրումն արգելելու, նրա արտադրությունը և փորձարկումները դադարեցնելու, նրա պաշարները վերացնելու իր հետևողական դիրքին՝ Սովետական կառավարությունը կրկին իր համաձայնությունն է հայտնել, որ իր աշխատանքը վերսկսի միջուկային զենքի փորձարկումների դադարեցման հարցին նվիրված երեք տերությունների Ժնևի խորհրդակցությունը:

Բայց բանն այն է, որ կապիտալիստական աշխարհի շատ ընթերցողներ հազիվ թե կարողանում են ճիշտ պատկերացում կազմել այդ հարցերում մեր պարտիայի ու կառավարության դիրքորոշման մասին, համագումարի ընթացքի ու առաջադրած խնդիրների մասին, քանի որ մոնոպոլիստական կապիտալի կամակատար մամուլի օրգանները, ռադիո և հեռուստատեսային կայանները որպես կանոն խեղաթյուրում են, կեղծում փաստերը, տպագրում և հաղորդում են տենդենցիոզ նյութեր:

XXII համագումարում հակապարտիական խմբի միահամուռ դատապարտումը, Ստալինի հետագա պսակազերծումը, Ալբանիայի ղեկավարների քայքայիչ գործունեության մերկացումը իմպերիալիստական պրոպագանդան փորձում է օգտագործել իր կեղտոտ շահերին համապատասխան: Պատահական չէ, որ բուրժուական մամուլի շատ օրգաններ, ռադիոկայաններ լռության մատնելով կոմունիզմի կառուցման Ծրագրի քննարկումը, համագումարի պատվիրակների ելույթներում արծարծվող տնտեսական շինարարության, գյուղատնտեսության զարգացման հարցերը, էժանագին սենսացիա են անում, շատախոսում «կոմունիստական լագերի տարաձայնությունների», Սովետական Միության «ագրեսիվության» մասին:

Սակայն զուր են պարոնայք իմպերիալիստների ու նրանց պնակալեզների ջանքերը: Հաղթահարելով հակասովետական և հակակոմունիստական պրոպագանդայի կորդոնները, զրաքննության արգելքները, ճշմարտությունը վաղ թե ուշ հասնում է աշխարհի ամենախուլ անկյունները, լուսավորում մարդկանց մտքերը:

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԼՐԻՎ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

*Ղափանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական և տրանսպորտային կազմակերպությունների կոլեկտիվներն արժանի գործերով դիմավորեցին ՍՄԿՊ XXII համագումարը: Բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների քրտնաջան, հայրենանվեր աշխատանքը տվեց իր փայլուն արդյունքները՝ ժամկետից շուտ, հարազատ պարտիայի համագումարի բացման նախօրյակին արդյունաբերական ձեռնարկությունները 1961 թվականի տասն ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեցին 101 տոկոսով. այդ նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 8,1 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքը իջավ 3,1 տոկոսով: Արտապլանային կուտակումների գումարը կազմեց շուրջ մեկ միլիոն ռուբլի. նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողության հաշվին արվեց երեք հարյուր հազար ռուբլու տնտեսում:*

*Ոգեշնչված կոմունիզմ կառուցողների համագումարի ծրագրային որոշումներով, շրջանի աշխատավորները նոր ուժով են ծավալում համաժողովրդական մրցությունը՝ ջանալով որակական բարձր ցուցանիշներով կատարել և գերակատարել յոթնամյակի երրորդ տարվա արտադրական ծրագիրը: Հատկանշականն այն է, որ մրցության մեջ ընդգրկված են բոլոր ցեխերը, հանքերը, տեղամասերը, բրիգադները. օրավուր ընդլայնվում է կոմունիստական աշխատանքի շարժումը:*

*Արդյունաբերության բնագավառում ձեռք բերված հաջողությունները վկայում են այն մասին, որ շրջանի պարտիական կազմակերպությունները սկսել են ավելի մոտիկից խորամուխ լինել արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպման, արտադրության էկոնոմիկայի արմատական հարցերում: Նրանք, հատկապես, ավելի մեծ ուշադրություն են նվիրում արտադրական կարողությունների, ներքին ռեզերվների օգտագործմանը:*

*Ինչպես հայտնի է, արդյունաբերական արտադրանքի աճն ապահովող հիմնական գործոններից մեկը՝ արտադրական կարողությունների ռացիոնալ օգտագործումն է: Մեր շրջանի պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ արդյունաբերական շատ ձեռնարկություններ կարող են առանց լրացուցիչ կապիտալ մեծ ներդրումների, առկա արտադրական կարողությունների խելացի օգտագործման միջոցով, զգալիորեն ավելացնել, իսկ որոշ դեպքերում նաև կրկնապատկել ու եռապատկել արտադրանքի թողարկումը: Այդ նպատակով անհրաժեշտ է եղել ոչ միայն բարելավել արտադրության և աշխատանքի կազմակերպումը, այլև մոդեռնացնել մեքենաներն ու սարքավորումները, մեքենայացնել աշխատանքային պրոցեսները, արտադրու-*

*թյան մեջ լայնորեն արմատավորել առաջավորների փորձը, ծավալել գյուտարարների ու ռացիոնալիզատորների շարժումը։*

*Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ արտադրության մեջ արմատավորվել է հանքաքարի հանույթի նոր, պրոգրեսիվ՝ բաց հանույթի եղանակը, որի շնորհիվ երեք անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և հիսուն տոկոսով իջել յուրաքանչյուր տոննա հանքաքարի հանույթի ու փոխադրման ինքնարժեքը։*

*Այդ նույն կոմբինատի «նեղ տեղերից» մեկը ավտոտրանսպորտի ծանր վիճակն էր, որը լրջորեն արգելակում էր արտադրության նորմալ աշխատանքը։ Տեղի պարտիական կազմակերպությանը երկար ժամանակ զբաղեցնում էր այն հարցը, թե ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով հնարավոր է լուծել այդ խնդիրը։ Չնայած այդ մասին բազմիցս ասվել ու խոսվել էր ժողովներում, խորհրդակցություններում, բայց գործը տեղից չէր շարժվում։ Վերջապես բոլորի համար պարզ դարձավ, որ այլևս չի կարելի հապաղել։ Ընթացիկ տարվա հենց սկզբին կոմբինատի պարտիական կոմիտեն ձեռնամուխ եղավ այդ գործին. ամենից առաջ կոմիտեի անդամները խորհրդակցեցին ինժեներա-տեխնիկական աշխատողների հետ, լսեցին նրանց կարծիքն ու առաջարկությունները։ Այդ հարցով զբաղվեցին հանքի և դիզելային պարկի պարտբյուրոները, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովները։ Հանգամանալից ուսումնասիրությունից հետո ավտոտրանսպորտի հարցը փոխադրվեց պարտիական ընդհանուր ժողով՝ կոմունիստների ու անպարտիականների լայն քննարկմանը։ Պարզվեց, որ հանքաքարի փոխադրման համար անհրաժեշտ է ստեղծել հիմնական հանքուղի և հանքիջանցքներ։ Որոշվեց կառուցել կենտրոնական հանքուղի, որն ուղղահայաց փորվածքներով միանալու է հանքաքարի հանույթի ելուստներին։*

*Գործի վերածելով պարտիական ժողովի որոշումը, սկսվեց հիմնական հանքուղու և հանքիջանցքների հորատանցումը, որը հնարավորություն կտա ելուստի հարթակից հանքաքարը ուղղակի լցնել հանքավայրէջքը և այնուհետև այն հանքավայրէջքի ստորին մասից մինչև երկրորդ ճոպանուղու բեռնաբարձման կայանը տեղափոխել էլեկտրաքարշներով։ Դրա շնորհիվ մեծ քանակությամբ ավտոմեքենաներ, որոնք ներկայումս զբաղված են հանքաքարի փոխադրմամբ, կազատվեն և կդրվեն բարձման աշխատանքների տակ։ Միաժամանակ հնարավորություն է ստեղծվում ավելի ինտենսիվ օգտագործելու երկրորդ ճոպանուղին, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը՝ հանքաքարի փոխադրման պրոցեսում։*

*Ղափանի պղնձահանքային կոմբինատի հանքավայրերում տարիներ շարունակ բարակ երակ ունեցող ապարները արդյունահանվում էին բլոկներով. այդ մեթոդի էական պակասությունն այն էր, որ ցածր էր աշխատանքի արտադրողականությունը։*

*Ծանոթանալով Պրիմորիեի ժողտնտխորհի Խրուստալնինսկի հանքավայրի կոլեկտիվի աշխատանքի առաջավոր փորձին, կոմբինատի պարտիական կոմիտեին կից նոր տեխնիկայի ներդրմանը, արտադրական պրոցեսների մեքենայացմանը և աշխատանքի առաջավոր մեթոդների տարածմանը վերահսկող հանձնաժողովը (նախագահ՝ Բ. Փարսադանյան) առաջարկություն մտցրեց այդ փորձը ներդնել Նոր Բարաբաթում հանքում։ Հանքի պարտբյուրոն պաշտպա-*



*նեց այդ նախաձեռնությունը։ Սակայն տեղում չկային այդ գործը լավ իմացող մասնագետներ. կոմբինատի պարտիական կոմիտեն և վարչությունը դիմեցին Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի Լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտի օգնությանը։ Վերջինիս կողմից Ղափան գործուղվեցին ինստիտուտի աշխատակիցներ Ա. Ադիբեկյանը, Է. Հակոբյանը և Ա. Սողոմոնյանը։ Որոշվեց ներդրման աշխատանքները կատարել ոչ միայն Նոր Բարաբաթում հանքում, այլ նաև հիմնական հանքուղում։ Կազմակերպվեցին կոմպլեքսային հատուկ բրիգադաներ. Նոր Բարաբաթում հանքում բրիգադայի ղեկավարությունը հանձնարարվեց անվանի հորատող Գրիշա Հայրապետյանին, իսկ հիմնական հանքուղում՝ կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար Գուրգեն Կոստանդյանին։ Աշխատանքները կոորդինացնելու նպատակով ստեղծվեց նոր փորձն արմատավորող հանձնաժողով՝ կոմբինատի գլխավոր ինժեներ Բ. Համբարձումյանի գլխավորությամբ։*

*Հանքաքարի հանույթի բլոկի երկայնքով կառուցվեցին մասսայական իջանցքներ, ուր և հավասարաչափ լցվում է պայթեցված հանքաքարը։ Ստեղծվեց հանքաքարի փոխադրման լայն ճակատ, որով և զգալիորեն կրճատվեց վերջինիս փոխադրման համար պահանջվող ժամանակը. խրուստալնինսկցիների բազմաիջանցք մեթոդի արմատավորումով իսպառ վերացվեց նաև իջանցքի խցանումը, որի բացման համար անցյալում ծախսվում էին հսկայական ժամանակ ու լրացուցիչ միջոցներ։*

*Ստացված արդյունքը մեծ է։ Նոր մեթոդի արմատավորումով աշխատանքի արտադրողականությունը հիմնական հանքուղում բարձրացավ 50, իսկ Նոր Բարաբաթում հանքում՝ 30 տոկոսով։ Կոմբինատի պարտիական կոմիտեն որոշեց աշխատանքի այդ առաջավոր մեթոդը արմատավորել նաև մյուս հանքերում։ Այդ նպատակով կազմակերպվեց զեկուցումների ցիկլ, խրուստալնինսկցիների փորձի ուսումնասիրմանը նվիրվեց տեխնիկական համալսարանի երկու պարապմունք, ուր դասախոսություններով հանդես եկան կոմբինատի գլխավոր ինժեները, հիմնական հանքուղու պետ՝ Գ. Թադևոսյանը, Նոր Բարաբաթում հանքի պետ՝ Ժ. Սարգսյանը և բրիգադաների ղեկավարները։ Աշխատանքի կազմակերպման այդ նոր մեթոդը մասսայականացվեց շրջանային «Պղնձի համար» թերթի էջերում։ Պարտիական կազմակերպության հետևողական ջանքերով աշխատանքի այդ առաջավոր մեթոդն արմատավորվեց բոլոր հանքերում, որի շնորհիվ կոմբինատում 20—25 տոկոսով բարձրացավ ստորերկրյա բանվորների աշխատանքի արտադրողականությունը։*

*Մի այլ օրինակ։ Վերջերս Կոմերիտմիության անվան հանքում սկսեցին արմատավորել մեր երկրի լեռնային աշխատանքներում արդեն հայտնի դարձած մի նոր սիստեմ, որը կրում է «հիմնական հորիզոնի մետաղաձողային հորատումով հզոր հանքային մարմինների մշակում» անունը։ Այս սիստեմի արմատավորման նախաձեռնությունը պատկանում է առաջավոր փորձի ուսումնասիրմանը և տարածմանը վերահսկող պարտիական հանձնաժողովին (նախագահ՝ Է. Դանիելյան)։ Թե ինչպիսի առավելություն ունի այս սիստեմը հնի նկատմամբ, ասենք, որ միջին մեծության բլոկում այս եղանակը կիրառելիս նախապատրաստական աշխատանքների ծավալը կրճատվում է մոտ 4 անգամ, իսկ շահագործման աշխատանքներինը, հակառակը, աճում է կրկնակի անգամ։ Բացի դա, հանքաքարի յուրաքանչյուր տոննայի հանույթի ինքնարժեքը իջնում*

է 10 տոկոսով, բարձրանում է ստորերկրյա մեկ բանվորի աշխատանքի արտա-
դրողականությունը և տրվում նյութերի մեծ խնայողություն։

Ղափանի պղնձահանքային կոմբինատի Կիրովի անվան ֆլոտացիոն ֆաբ-
րիկան երկրի հարստացուցիչ ձեռնարկությունների շարքում ձեռք է բերել հան-
քաքարից մետաղների կորզման ամենաբարձր ցուցանիշը։ Սակայն դա չէր
բավարարում ֆաբրիկայի կոլեկտիվին։ Ֆաբրիկայի պետ կոմունիստ Մխիթար
Գրիգորյանը և պարտիական կազմակերպության քարտուղար, ավագ ֆլոտա-
տոր Ստեփան Զաքարյանը, որոնք մի շարք ռացիոնալիզատորական առաջար-
կությունների հեղինակներ են, ստեղծագործական պրպտումներ էին կատա-
րում՝ պարզելու, թե չի՞ կարելի արդյոք ավելի բարձրացնել մետաղների կորզ-
ման այդ ցուցանիշը։ Հաջողությամբ պսակվեցին նորարարների ջանքերը.
նրանց առաջարկության ներդրման շնորհիվ անցած 9 ամիսներին կոլեկտիվը
հանքաքարից մետաղի կորզումը կարողացավ հասցնել 97,57 տոկոսի։

Պղնձահանքային կոմբինատի պարտիական կոմիտեի, հանքերի ու ցեխե-
րի պարտիական կազմակերպությունների վերը նշված միջոցառումների կեն-
սագործման շնորհիվ ընթացիկ տարում կոմբինատը դուրս եկավ շահութաբեր
ձեռնարկությունների շարքը։

Ղափանի կահույքի ֆաբրիկայի կաթսայատունը աշխատում էր հեղուկ
վառելիքով։ Կահույքագործների հաշվարկումները ցույց տվեցին, որ հեղուկ
վառելիք օգտագործելը շատ թանկ է նստում։ Պարտիական կազմակերպության
հանձնարարությամբ մեքենայական ցեխի վարիչ Ե. Հակոբջանյանը, հավաք-
ման ցեխի վարիչ Ս. Հարությունյանը և ֆաբրիկայի գլխավոր ինժեներ Վ. Գըր-
յաղյանը զբաղվեցին այդ հարցով. Նրանց առաջարկով որպես վառելիք այժմ
օգտագործվում են արտադրության ոչ պիտանի մնացուկները։ Միայն նորա-
րարական այդ առաջարկության ներդրման հաշվին ֆաբրիկան, նախնական
հաշվարկումներով, այս տարի կստանա 32 հազար ռուբլու տնտեսում և կթո-
ղարկի նախագծային կարողությունից ավելի 50 հազար ռուբլու արտադրանք։

Ուշագրավ շատ գործեր են կատարում Ղափանի երկրաբանական-հետա-
խուզական արշավախմբի աշխատողները։ Եթե այսօր Ղափանում հայտաբեր-
ված պաշարների բազայի վրա նախատեսվում է պղնձահանքային կոմբինատի
արտադրական հզորությունն ավելացնել երեք անգամ, ապա դա առաջին հեր-
թին ընդերքի հմուտ հետախույզների բեղմնավոր աշխատանքի արդյունքն է։

Շրջանի երեք ավտոգրասենյակները սիստեմատիկ կերպով թերակատա-
րում էին բեռների փոխադրման առաջադրանքները, չէին բավարարում արդյու-
նաբերության և շինարարության պահանջները։ Չկար մի խորհրդակցություն,
ակտիվի ժողով կամ հավաք, ուր արդյունաբերական ձեռնարկությունների ու
շինարարական կազմակերպությունների ներկայացուցիչները «կրակ չթափե-
ին» ավտոգրասենյակների ղեկավարների գլխին։ Ավտոգրասենյակների պար-
տիական կազմակերպությունների գործադրած ջանքերը չէին տալիս սպասվե-
լիք արդյունքները. բանն այն էր, որ տեղի ռելեֆի սպեցիֆիկ պայմանները
հնարավորություն չէին տալիս պլանից ավելի բարձրացնելու մեքենաների
վազքի արագությունը և բեռնատարողության գործակիցը. դա վտանգ էր ստեղ-
ծում ավելացնելու վթարները, ժամկետից շուտ շարքից հանելու ավտոմեքենա-
ները։ Ի՞նչ անել։ Եվ ահա պարտիայի շրջանային կոմիտեում հրավիրված մի
խորհրդակցությունում առաջարկություն մտցվեց՝ ավտոգրասենյակների և
շրջկոմի աշխատողներից ստեղծել մի հանձնաժողով, հանձնարարելով նրան ու-



սումնասիրել և իր նկատառումները ներկայացնել ավտոգրասենյակների աշ-
խատանքի բարելավման մասին։

Հանձնաժողովը ստեղծվեց։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ
հնարավոր է բեռներն անխափան փոխադրել ի հաշիվ ավտոմեքենաների ռա-
ցիոնալ օգտագործման, պարապուրդների կրճատման և ավտոգրասենյակնե-
րում վերանորոգման աշխատանքների որակի բարելավման։ Կազմակերպվեց
ավտոմեքենաների աշխատանքի օղակային սիստեմ, որի շնորհիվ վերացավ
մեքենաների դատարկ վազքը։ Կարգավորվեցին և հնարավորին չափ մեքե-
նայացվեցին բարձման ու բեռնաթափման աշխատանքները։ Մշակված միջոց-
առումների իրականացումը տվեց դրական արդյունքներ. անցած ամիսների
ընթացքում ավտոգրասենյակները ոչ միայն ապահովեցին պետական պլան-
ների կատարումը, այլև պլանից դուրս նրանք փոխադրեցին 800 հազար տոննա
բեռ։

Արտադրության ներքին ռեզերվների հայտաբերման և դրանց օգտագործ-
ման ասպարեզում ակտիվ մասնակցություն ունեն ռացիոնալիզատորներն ու
գյուտարարները։ Շրջանում լայն ծավալ է ստացել նորարարների շարժումը։
Բավական է ասել, որ միայն արդյունաբերական ձեռնարկություններում 265
ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից ստացված
տնտեսական օգուտը կազմում է մոտ 500 հազար ռուբլի։ Պարտշրջկոմի նա-
խաձեռնությամբ ընթացիկ տարում երկու անգամ հրավիրվել է ռացիոնալի-
զատորների և գյուտարարների շրջանային հավաք, ստեղծված է գյուտարար-
ների և ռացիոնալիզատորների շրջանային խորհուրդ։

Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական և
տրանսպորտային կազմակերպությունների պարտիական կազմակերպություն-
ները պատշաճ ուշադրություն են դարձնում ոչ միայն արտադրական հրապա-
րակների, հիմնական միջոցների ռացիոնալ օգտագործմանը, այլև կոնկրետ
զբաղվում են հիմնական նյութերի, էլեկտրաէներգիայի, աշխատաժամանակի
տնտեսման, արտադրության ծախսերի կրճատման, պրոգրեսիվ նորմաների
արմատավորման հարցերով։

Սակայն շրջանի առանձին արտադրական ձեռնարկություններում, շինա-
րարական ու տրանսպորտային կազմակերպություններում դեռևս լավ չեն օգ-
տագործվում եղած արտադրական կարողությունները, ներքին ռեզերվները։
Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի վարչությունը, պարտկոմիտեն
բավարար ուշադրություն չեն դարձնում լեռնային հզոր մեխանիզմների ռա-
ցիոնալ օգտագործման վրա. հիմնականում դրանով պետք է բացատրել, որ
1961 թ. անցած ինն ամիսներին չէր կատարվել բացման աշխատանքների պլա-
նը։ Ցածր է հատկապես 25 տոննանոց ավտոմեքենաների և հզոր էքսկավա-
տորների արտադրողականությունը։ Հարստացուցիչ ֆաբրիկայի կոլեկտիվը,
պարտիական կազմակերպությունը լրջորեն չեն զբաղվում հանքաքարից մո-
լիբդենի կորզման տեխնոլոգիան կատարելագործելու հարցով։

Պղնձահանքային կոմբինատի կարողությունը յոթնամյակում ավելանալու
է մի քանի անգամ։ Այդ նպատակով կառուցվելու է նոր հարստացուցիչ ֆաբրի-
կա՝ հագեցված ժամանակակից հայրենական սարքավորումներով։ Այդ ֆաբ-
րիկայի հետ կապված մի շարք կարևոր հարցեր դեռևս չեն լուծված. վատն այն
է, որ կոմբինատի դիրեկցիան, պարտիական կոմիտեն և ինժեներա-տեխնիկա-
կան աշխատողները այդ ուղղությամբ կոնկրետ միջոցներ չեն ձեռնարկում։ Ան-

ներելի դանդաղկոտություն գոյություն ունի հատկապես ֆաբրիկայի կառուցողական աշխատանքների ֆինանսավորման և նախագծային փաստաթղթերի ձևակերպման գործում։ Բացի այդ, պղնձահանքային կոմբինատում դեռևս արտադրողաբար չեն օգտագործվում հանքային մեխանիզմները և, հատկապես, ապար բարձող մեքենաները, ցածր է խոր փորման հաստոցների, էլեկտրաքարշերի արտադրողականությունը։

Շինարարական կազմակերպությունների հիմնական թերությունը աշխատանքի վատ կազմակերպումն է. շինարարական հրապարակներում ռացիոնալ չեն օգտագործվում աշտարակային կռունկները, էքսկավատորները, բուլդոզերները և այլ մեխանիզմներ, որի հետևանքով մեծ են մեխանիզմների պարապուրդները։ Դեռևս լուրջ միջոցառումներ չեն իրականացված զերոյական ցիկլի բոլոր աշխատանքները միաժամանակ կատարելու համար։ Աշխատանքի ոչ ճիշտ կազմակերպման հետևանքով երբեմն միևնույն գործը կատարվում է կրկնակի և նույնիսկ եռակի անգամ։ Շինարարական իրերի պատրաստման կոմբինատը հազիվ 40 տոկոսով է ապահովում շինարարության կարիքները պանելներով, միջհարկային ծածկերով և խոշոր երկաթբետոնե կոնստրուկցիաներով։ Շինարարության առկա ռեսուրսները ամբողջությամբ օգտագործելու, հետևապես և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով պարտիայի շրջանային կոմիտեն մշակել է միջոցառումներ, որոնց կենսագործումով «Քաջարանշին» տրեստի կառուցողները կապահովեն միջոցների իրացման պլանների կատարումը, նախատեսված օբյեկտների ժամանակին շահագործման հանձնումը։

ՍՄԿՊ XXII համագումարը պարտիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ ավելի լրիվ օգտագործել սոցիալիստական էկոնոմիկայի ռեզերվները, լիկվիդացնել շռայլումն ու անտնտեսվարությունը, ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Դրա համար պահանջվում է վճռականորեն բարելավել արդյունաբերության պարտիական ղեկավարումը, մասսաների շրջանում ուժեղացնել պարտիական կազմակերպչական և քաղաքական աշխատանքը։

Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Ղափանի շրջկոմի քարտուղար

## ԸՆԴԴԵՄ ՊԱՇՏՈՆԱՄՈԼՈՒԹՅԱՆ

Պարտիան ու ժողովուրդը միաձույլ են, զոդված նպատակի ու կամքի միասնությամբ։ Լենինյան ամենահաղթ գաղափարները, պարտիայի գործերն ու հոգսերը խորապես հուզում են սովետական բոլոր մարդկանց, հավասարապես հոգեհարազատ են ինչպես կոմունիստներին, այնպես էլ անպարտիականներին։ Սովետական մարդիկ դեռևս շատ վաղուց են համոզվել, որ Կոմունիստական պարտիան, գոռ մարտերում կոփված իրենց ավանգարդը, գոյություն ունի ժողովրդի համար և նրա շահերին ազնվորեն ծառայելը եղել ու մնում է պարտիայի բարձրագույն նպատակը։ Իրավամբ կոմունիստներն իրենց անձնվեր գործերով ու բարոյական անաղարտությամբ արժանացել են ընդհանուրի ճանաչմանն ու բարձր գնահատականին։

Լենինն ուսուցանում էր, որ պարտիան պահանջում է գիտակից, ռևոլյուցիայի գործին նվիրված, անձնազոհության պատրաստ մարդիկ։ Մեծ առաջնորդը մշտապես ընդգծում էր, որ պարտիայի անդամության հարցը, այն, թե ինչպիսին պետք է լինի նրա կազմը, որպեսզի պարտիան ընդունակ լինի իրականացնելու իր առջև դրված մեծ նպատակները, հանդիսանում է պարտիական շինարարության անկյունաքարը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում է՛լ ավելի են մեծանում պարտիայի դերն ու նշանակությունը։ Մեր օրերում ավելի բարձր է հնչում կոմունիստի կոչումը, ավելի մեծ պահանջներ են ներկայացվում նրան։ «Կոմունիզմին անշահախնդիր ծառայելը,— ասաց ՍՄԿՊ XXII համագումարում իր զեկուցման մեջ ընկ. Խրուշչովը,— լենինյան պարտիայի անդամի գերագույն կոչումն է։ Կոմունիստը պետք է այրվի ժողովրդի գործի համար, իր արյունն ու սիրտը նվիրաբերի այդ գործին»։

ՍՄԿՊ նոր Կանոնադրությամբ պարտիայի յուրաքանչյուր անդամի պարտականությունն է՝ աշխատանքի նկատմամբ ցուցաբերել կոմունիստական վերաբերմունքի օրինակ, հանդես գալ որպես նորի նախաձեռնող, պաշտպանել ու տարածել այն ամենը, ինչ առաջավոր է ու պրոգրեսիվ. նրա պարտքն է անդուլ կերպով նպաստել կոմունիստական բարոյական վեհ սկզբունքների հաստատմանը, լինել այդ սկզբունքների ակտիվ կիրառողը։ Պարտիայի անդամը կոմունիզմի ակտիվ կառուցող է. նա կոչված է միշտ և ամենուրեք, ինչպիսի աշխատանքում ու պաշտոնում էլ գտնվի՝ իր ողջ գործունեությամբ ու վարքագծով ցույց տալու լավագույն օրինակ։ Պաշտոնը կոմունիստի համար, ամենից առաջ, պարտիայի վստահությունն ու հանձնարարությունն է, որ նա պարտավոր է կատարել բարեխղճորեն, ազնվաբար։

Մեր շրջանում շատ է այն կոմունիստների թիվը, որոնք բարեխղճորեն են կատարում կանոնադրական պարտականությունները, իրենց տեղամասում աշխատում են ավյունով, իրենց պարտքի և կոչման բարձր գիտակցությամբ։ Վերջին տարիներին մեզ մոտ աճել ու ղեկավար աշխատանքի են առաջ քաշվել բազմաթիվ կոմունիստներ, որոնք իրենց գործունեությամբ նվաճել են աշխատավորների սերն ու հարգանքը։

Արդեն հինգերորդ տարին է, ինչ Չկալովկայի Իլյիչի անվան կոլտնտեսության վարչության նախագահ է պարտշրջկոմի նախկին հրահանգիչ Գերասիմ Պետրոսյանը։ Երբ պարտիայի շրջկոմը նրան երաշխավորում էր այդ պաշտոնում, շատերը պատճառաբանելով նրա երիտասարդությունը, թերահավատությամբ էին վերաբերվում այդ ընտրությանը։ Գ. Պետրոսյանը արտադրության մեջ սկսել է աշխատել պատանեկան տարիներից, առանց արտադրությունից կտրվելու սովորել և ավարտել էր գյուղատնտեսական տեխնիկումը, մի քանի տարի ղեկավարել կոլտնտեսության դաշտավարական բրիգադան, պարտիական կազմակերպությունը, իսկ հետո էլ ավարտել պարտիական եռամյա դպրոցը։ Բայց զգալով գործի ծանրությունն ու պատասխանատվությունը, նա ինքն էլ դժվարությամբ համաձայնեց այդ առաջարկությանը։ Գ. Պետրոսյանը լավ էր պատկերացնում բազմաճյուղ տնտեսությունը վարելու, գյուղում ապրող չորս տարբեր ազգության պատկանող մարդկանց հետ ընդհանուր «լեզու գտնելու» դժվարությունները, զգում էր այն մեծ պատասխանատվությունը, որ դրվում էր իր վրա։ Դա կոմունիստի պատասխանատվության սուր զգացումն էր, անհանգստությունը, թե ինքը կարո՞ղ է արդյոք արդարացնել իր ընկերների, աշխատավորների մեծ վստահությունը։

Գ. Պետրոսյանն անցավ գործի, երբեք չգոռոզանալով զբաղեցրած պաշտոնով, ջանալով իր աշխատանքով ու վարքագծով ամեն կերպ շահել համագյուղացիների վստահությունը։ Աշխատանքի առաջին իսկ տարում նա կազմակերպական մեծ գործ կատարեց կոլտնտեսային կադրերի արտադրական որակավորման ուղղությամբ. ագրոզոոտեխնիկական ուսուցումը օգնեց նրանց ձեռք բերելու անհրաժեշտ գիտելիքներ, գիտության նվաճումների և առաջավորների փորձը արմատավորելու հմտություն։ Արդեն մի քանի տարի է, ինչ կոլտնտեսության նախագահը գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակի պրոպագանդիստն է։ Խմբակի ունկնդիրները կոլտնտեսային արտադրության հրամանատարներ են. ստացած տնտեսական գիտելիքներն օգնում են նրանց հմտորեն ղեկավարելու արտադրության տարբեր բնագավառները։

Ջկալովկայի կոլտնտեսականները հարգում ու սիրով օգնում են իրենց նախագահին, որովհետև նա համեստ է ու ազնիվ անձնական կյանքում, զերծ այնպիսի մոլություններից, ինչպիսիք են՝ հարբեցողությունը, սնապարծությունը, մանր սեփականատիրական ձգտումները, թուլություններ, որոնցից երբեմն զերծ չեն մնում մեր առանձին կոլտնտեսային ղեկավար աշխատողներ։ Նրա ղեկավարած կոլտնտեսությունում սիրով աշխատում, ապրում ու գործում են հայերը, ռուսները, քրդերն ու ադրբեջանցիները, առանց զգալու կամ զգացնել տալու, որ տարբեր ազգերի են պատկանում։ Գ. Պետրոսյանն իր պարտքը կատարում է ազնվորեն, և գործերն էլ լավ են գնում։ Հողատարածության յուրաքանչյուր հարյուր հեկտարի դիմաց անասնաբուծական մթերքների արտադրությամբ Ջկալովկայի կոլտնտեսության ցուցանիշներն ամենից բարձրն են շրջանում։

Իրենց պաշտոնական պարտականությունները լավ կատարելու, այդ գործում անհրաժեշտ կրքոտություն ու պահանջկոտություն, պարտիայի անդամին վայել ազնվություն ցուցաբերելու համար շրջանի պարտիական ակտիվի և աշխատավորների ընդհանուր հարգանքն են վայելում Սևանի հիդրոէլեկտրակայանի պետ Լ. Խաչատրյանը, Դդմաշենի կոլտնտեսության նախագահ Ս. Ղարիբյանը, Ջկալովկայի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Ն. Ջելոյանը և շատ ուրիշներ։ Նորի զգացումով, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ցուցաբերելով, նրանք պայքարում են կոլտնտեսային ու համաժողովրդական ունեցվածքը բազմապատկելու համար, օգնում են նորի, առաջավորի տարածմանն ու արմատավորմանը։

Կոմունիստի բարձր կոչում կրողը ոչ միայն ինքը պետք է օժտված լինի բարոյական բարձր հատկանիշներով, այլև, տիրապետելով մարքսիստական-լենինյան տեսությանը, նպաստի նոր մարդու ձևավորմանն ու դաստիարակությանը։ ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտավորեցնում է կոմունիստին՝ անհաշտ պայքար մղել բուրժուական գաղափարախոսության բոլոր դրսևորումների, մասնավոր սեփականատիրական հոգեբանության մնացորդների և անցյալի վերապրուկների դեմ, հասարակական շահերը բարձր դասել անձնականից։

Դժբախտաբար մեղանում դեռևս կան առանձին կոմունիստներ, այդ թվում և ղեկավար աշխատողներ, որոնք մոռանում են Կանոնադրության այդ պահանջը։ Այդ մարդիկ պարտիայի շարքերում իրենց գտնվելը հաճախ դիտում են որպես իրենց անձնական կարիերան ավելի լավ դասավորելու միջոց։

Անշուշտ, հնի վատթարագույն մնացուկներից է այն, որ ղեկավար դիրք գրավող կոմունիստը երբեմն մեծամտանում է, անջրպետ ստեղծելով իր և են-



թակա աշխատողների միջև։ Այդպիսի մարդիկ ավելորդ են համարում խորհրդակցել կոլեկտիվի, շարքային մարդկանց հետ, հաշվի առնել նրանց կարծիքն ու խելացի խորհուրդները։ Ջունկնդրելով կոմունիստների, աշխատավորների ձայնին, բնականաբար իրենց գործունեության մեջ նրանք չեն կարող խուսափել որոշ սխալներից, վրիպումներից, որոնք հետագայում կարող են մեծանալ, խորանալ։

Ծաղկունք գյուղի կոլտնտեսության վարչության նախագահն է կոմունիստ Հրաչյա Աղաջանյանը։ Երկու տարի առաջ առաջադրելով նրա թեկնածությունը, պարտիայի շրջկոմը լավ գիտեր, որ տվյալ աշխատանքի համար նա չունի պահանջվող փորձն ու հմտությունը, բայց անհրաժեշտ օգնության դեպքում նա կարող է աճել և տիրապետել ղեկավարման արվեստին։ Ստանալով այդ օգնությունը և համընթաց քայլելով կոլեկտիվի հետ, ընկ. Աղաջանյանը քիչ ջանք չթափեց կոլտնտեսության ետ մնալը հաղթահարելու ուղղությամբ. նրա ղեկավարած կոլտնտեսությունն առաջին տարին փակեց դրական արդյունքներով։ Այդ մասին սկսեցին խոսել և՛ կոլտնտեսությունում, և՛ շրջանում։ Բայց, ահա, այդքանը բավական էր, որ Հ. Աղաջանյանը մեծամտանար, թուլացներ պահանջկոտությունն իր և մարդկանց նկատմամբ։ Ավելին, նա իր վարքագծով արատավորում է կոմունիստի կոչումը։ Եվ զարմանալի չէ, որ այստեղ խիստ թուլացել է աշխատանքային կարգապահությունը, կոլտնտեսությունն սկսել է նահանջել իր գրաված դիրքերից։

Պաշտոնը կամ գրաված դիրքը չեն բնորոշում մարդուն։ Մարդն իր գործերով, իր համեստությամբ, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումով և գիտելիքները հարստացնելու իր համառ ձգտմամբ է կարողանում լայն ճանաչում գտնել աշխատավորության շրջանում, արժանանալ նրա հարգանքին։

Պատահում է և այսպես։ Իր անդամների թվով մեծ չէ Գեղամավանի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը։ Չնայած գյուղում կան նյութական բարիքներ ստեղծող առաջավոր շատ մարդիկ, հիանալի երիտասարդներ, այնուամենայնիվ վերջին հինգ տարում կազմակերպությունն իր շարքերը չի համալրել նոր անդամներով։ Բանը նրանումն է, որ առանձին կոմունիստներ դիմադրում են կազմակերպության մեջ նոր, թարմ հոսքին, մի տեսակ արհեստական պատնեշ դնում այն մարդկանց առաջ, ովքեր ցանկանում են անցնել պարտիայի շարքերը։ Թերևս նման կոմունիստները մտածում են այսպես. նոր, երիտասարդ կոմունիստները կարող են խախտել կազմակերպության մեջ տիրող տարիների անդորրը, տնավարությունը. ավելին՝ վտանգել իրենց անձնական կարիերան։

Պաշտոնն այդ տիպի մարդկանց համար իրենց անձնական կյանքը լավ դասավորելու միջոց է դարձել։ Հանվում են ղեկավար մի աշխատանքից, անմիջապես գրավում են մի այլ պաշտոն։ Գեղամավանի պարտկազմակերպության անդամները, գրեթե առանց բացառության, մինչև հիմա հերթով վարել են գյուղում և կոլտնտեսությունում եղած համարյա բոլոր պաշտոնները։ Առանձին կոմունիստների մոտ անսքող երևում են այդ մարդկանց կարիերիզմը, շահամոլությունն ու փառասիրությունը, բնավորության գծեր, որոնք անհարիր են կոմունիստի բարձր կոչմանը։

Ահա Սևանի ձկան կոմբինատի պարտկազմակերպության անդամ Արմենակ Մկրտչյանի վերջին հինգ տարիների աշխատանքային գործունեությունը։ Ջու-

նենալով անհրաժեշտ պատրաստականություն ու գործարար հատկանիշներ, նստեղել է խնայողական դրամարկղի վարիչ, կաթի մթերման շրջանային գրասենյակի պետ և այլն: Երբ նա որոշ զանցանքների համար հանվեց կաթի մթերման շրջանային գրասենյակի պետի պոստից, շատերն այն կարծիքին էին, թե Ա. Մկրտչյանը այլևս ղեկավար աշխատանքի երես չի տեսնի: Սակայն նա այնքան շատ դռներ ծեծեց, մինչև որ երկու տարի առաջ վերջապես հաջողացրեց ձեռք գցել ձկան պետական պահպանության տեսչության պետի պաշտոնը. այստեղից էլ հեռացվեց և արդեն մոտ մեկ տարի է, ինչ թափառում է և չի ուզում գնալ ավելի ցածր աշխատանքի:

ՍՄԿԿ Կանոնադրությունը յուրաքանչյուր կոմունիստի պարտավորեցնում է պարտիայի հանդեպ լինել ազնիվ, ճշմարտացի, չթաքցնել ու չխեղաթյուրել ճշմարտությունը: Դա առավել ևս վերաբերում է ղեկավար աշխատողին: Ցավոք սրտի մեզանում դեռևս կան այնպիսի մարդիկ, որոնց համար հավելագրումները նախ սովորություն, ապա բնավորության գիծ են դարձել: Չկարողանալով քրտնաջան, ազնիվ աշխատանքով ստեղծել «իրենց անվանը վայել» տոկոսներ ու ցուցանիշներ, նրանք գրչի մի հարվածով՝ առանց խղճի խայթի այդպիսիք «ստեղծում են» թղթի վրա և առանց կարմրելու նայում հաղթողի ժեստով:

Այդ տիպի մարդկանցից է Սևանի Կալինինի անվան կոլտնտեսության նախկին նախագահ Ա. Պողոսյանը: Դեռ անցյալ տարի պետությանը խաբելով, նա 1960 թվականին վիճակագրական հաշվետվություններում կատարվածից ավելի ցույց էր տվել 57 հեկտար աշնանացան, 8 հեկտար բազմամյա խոտի ցանք, 34 ցենտներ կորնգանի, 20 ցենտներ կարտոֆիլի սերմացու, անասուններ և այլն: Շրջկոմը ճիշտ վարվեց, երբ այս տարվա սկզբներին Ա. Պողոսյանին այլևս չերաշխավորեց կոլտնտեսության նախագահի պոստում ընտրվելու համար: Բացի դրանից, պաշտոնը չարաշահելու, հավելագրումների, պետությանը խաբելու համար Ա. Պողոսյանի նկատմամբ դատական գործ է հարուցվել: Հետաքրքրական է իմանալ, թե այս օրերին, երբ Ա. Պողոսյանը դռներ է ծեծում, սրա-նրա միջնորդությունը խնդրում դատական պատասխանատվությունից մի կերպ ազատվելու համար, զգացե՞լ է արդյոք իր արարքի ծանրությունը, զգացե՞լ է, որ աչքակապությամբ ու անազնվությամբ ինքը արատավորել է կոմունիստի բարձր կոչումը:

Պարտիան հոգ է տանում, որ իր անդամները լինեն ազնիվ, սկզբունքային, թերությունների նկատմամբ ցուցաբերեն կրքոտ անհանդուրժողականություն: Կոմունիստը, առավել ևս պաշտոնյան, բարձր դիրք գրավող մարդը իրավունք չունի պարծենալու, վերևից նայելու մարդկանց, կտրվելու կոլեկտիվից, ժողովրդից: Կյանքը ցույց է տվել, որ այն ղեկավար աշխատողը, ով մեծամտում է, պարծենում իր նախկին ծառայություններով ու քննադատաբար չի գնահատում իր գործունեությունը, միշտ էլ ձախողվում է:

Ճիշտ այդպես պատահեց շրջանում երկար տարիներ պարտիական ղեկավար պոստեր գրաված Կարո Մանուկյանի հետ: Դեռ երկու-երեք տարի առաջ պարտիական կարգապահությունը խախտելու և պաշտոնում կամայականություն ցուցաբերելու համար նա հանվեց ՀԿՊ Սևանի շրջկոմի առաջին քարտուղարի պաշտոնից: Երկար ժամանակ պահանջվեց նրան համոզելու՝ նախկին դիրքից մի քիչ «ցածր», իր ուժերի համեմատ աշխատանքի գնալու համար: Բայց նոր, ծխախոտի ֆերմենտացիայի գործարանի դիրեկտորի պաշտոնում էլ



նա շարունակեց ղեկավարման հին մեթոդները՝ կամայականությունը, կոպտությունը, արհամարհանքը շարքային մարդկանց նկատմամբ: Պարտիական կազմակերպությունն իր հերթին չկարողացավ զբաղվել նրա դաստիարակության գործով՝ հաշվի առնելով դիրեկտորի նախկին «ծառայությունները»: Եվ երբ Կ. Մանուկյանը դուրս մնաց քննադատության ոլորտից, ավելի մեծամտացավ, պաշտպանության տակ վերցնելով գործարանում բույն դրած մի շարք խարդախների, գողերի: Ավելին, նա ինքն էլ բռնեց պետությանը խաբելու ուղին, թույլ տվեց հավելագրում և աչքակապություն, գործարանին պատճառելով հսկայական վնաս: Այժմ էլ, երբ նա հեռացված է աշխատանքից, դարձյալ արհամարհում է, զրպարտում ազնիվ մարդկանց, չի ուզում լսել շարքային աշխատանքի գնալու մասին. նա վերադաս օրգանների դռներն է թակում, անպայման բարձր պաշտոն գրավելու հավակնությամբ:

Մեր շրջանի պարտիական կազմակերպությունները ներկայումս եռանդուն աշխատանք են տանում ՍՄԿԿ նոր Ծրագիրը լայնորեն մասսայականացնելու և պարտիայի ուրվագծած վիթխարի պլանները կենսագործելու ուղղությամբ. միջոցառումներ են իրականացվում նաև կադրերին բարոյական բարձր հատկանիշներով օժտելու, նրանց դաստիարակության գործը բարելավելու ուղղությամբ: Այդ միջոցառումների մեջ կարմիր թելի պես անցնում է հոգատարությունը կադրերի մարքս-լենինյան դաստիարակության, քաղաքական կոփվածքի նկատմամբ, քանի որ այն նրանց տալիս է կողմնորոշման ուժ, հեռանկարի պարզություն և ազնվացնում մարդուն:

Ն. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
ՀԿՊ Սևանի շրջկոմի քարտուղար

## ԶՐՈՒՅՑ ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ՄԱՍԻՆ

Բարձրանալով գյուղը բոլորող թեք դարավանդը, մոտենում ենք անասնապահական ֆերմայի նորակառույց շենքին, որի մուտքի ճակատին փակցված ալ պաստառի վրա գրված է. «Դեպի աշխատանք, ընկերնե՛ր: Դեպի կոմունիզմի նորանոր հաղթանակներ»:

Կարմիր անկյունում հավաքված անասնապահները ուշադրությամբ լսում էին իրենց ագիտատորի՝ զոոտեխնիկ Լ. Պետրոսյանի հերթական, ինչպես համագյուղացիներն են ասում «համով-հոտով» զրույցը: Դա մի սրտաբաց ու անկաշկանդ խոսակցություն էր այս օրերին բոլորին հուզող թեմայի շուրջ. ագիտատորը պատմում էր, թե ինչպես է զարգանալու մեր երկրի գյուղատնտեսությունը, մասնավորապես հանրային անասնաբուծությունն առաջիկա քսան տարում:

— Հսկայական չափերով ավելանալու է անասնաբուծական մթերքների արտադրանքը,— ասում է նա,— իրոք մեծ են կաթի, մսի, ձվի ու բրդի արտադրության աճի նախատեսված թվերը. առաջիկա քսան տարում մսի արտադրությունը կավելանա գրեթե չորս, իսկ կաթինը՝ գրեթե երեք անգամ: Բայց մենք հաստատ հավատում ենք, որ այդ մեծ պլանները հաջողությամբ կկատարվեն: Դրա երաշխիքը գյուղի աշխատավորների անձնվեր աշխատանքն է: Այդ մասին են վկայում նաև մեր տնտեսության վերջին տարիների աշխատանքի արդյունքները: Պատին փակցված այս դիագրաման ցույց է տալիս, որ մեր

պարտիայի Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում անասնաբուծական մթերքների արտադրությունը մեզ մոտ ավելացել է 2—2,5 անգամ։ Բայց դա մեզ իրավունք չի տալիս հանգըստանալու ձեռք բերածով, մենք ունենք չօգտագործված շատ հնարավորություններ, ներքին ռեզերվներ…

— Միայն թե կեր լինի, մթերքին տեղ չի լինի,— միջամտում է զրույցին փորձված ոչխարապահ Մամիկոն Գաբրիելյանը։

— Միանգամայն ճիշտ է,— ասում է ագիտատորը,— առատ ու բարձրորակ կերը անասնաբուծական մթերքների առատության բանալին է։ Առանց կերի բազայի ամրապնդման հնարավոր չէ անասնաբուծությունն արագ տեմպերով զարգացնել։ Այդ հարցը մեզ մոտ լուծվելու է նախ և առաջ հացահատիկային կուլտուրաների և, մասնավորապես, եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակման ու բերքատվության բարձրացման, ինչպես և շաքարի ճակնդեղի, լոբազգիների և այլ կուլտուրաների մշակության միջոցով։ Մեր կոլտնտեսության դաշտերում լավ է աճում շաքարի ճակնդեղը. կար ժամանակ, երբ հեկտարից հավաքվում էր 300 ցենտներից ավելի բերք։ Եթե եկող տարի 40 հեկտար ճակնդեղ մշակենք, ամենահամեստ հաշվարկումներով, անասունների համար լրացուցիչ կունենանք հազար տոննա արժեքավոր կեր։ Իսկ դա եգիպտացորենի հետ միասին իսկական կաթ ու միս է։ Առաջիկայում մեծ տեղ է տրվելու խոտաբույսերի մշակությանը։

Գնալով զրույցն աշխուժանում էր, ունկնդիրներն ավելի ու ավելի հաճախ էին միջամտում ագիտատորին, տալիս նրան նորանոր հարցեր։

— Մեր պարտիան խնդիր է դրել,— շարունակում է Լ. Պետրոսյանը,— ըստ կոլտնտեսությունների, սովխոզների և շրջանների իրագործել գյուղատնտեսության մասնագիտացում, գերազանցապես ավելացնելով գյուղատնտեսական արտադրանքի այն տեսակների արտադրությունը, որոնց համար լավագույն պայմաններ կան, և որոնք ավելի քիչ ծախսեր են պահանջում։ Իմ կարծիքով մեզ մոտ ձեռնտու է զարգացնել ոչխարաբուծությունը, մասամբ էլ՝ տավարաբուծությունը։ Ինչպես գիտեք, մեր կոլտնտեսության դրամական եկամուտների 60—70 տոկոսը ստացվում է ոչխարաբուծությունից, այն էլ աշխատանքի ու միջոցների քիչ ծախսումներով։

— Ինչպե՞ս է ընթանում Մանթաշի ջրամբարի շինարարությունը,— հետաքրքրվում է կթվորուհի Ռոզա Մինասյանը։

Պատասխանելով նրա հարցին, ագիտատորն ասում է, որ այդ ջրամբարում, որի կառուցման ծախսերը կազմում են 2,4 միլիոն ռուբլի, կկուտակվեն Մանթաշի ջրերը և դրանով ոռոգելի կդառնա ավելի քան 4600 հեկտար հողատարածություն։ Ներկայումս ամբողջ թափով ծավալվում է շինարարությունը. շինարարները լցնում են ամբարտակի հիմքերը, կառուցում օժանդակ շենքեր, անցկացնում բարձրավոլտ էլեկտրագիծ և այլն։

— Տարեկան վեց միլիոն խորանարդ մետր ջրի կուտակումն ու օգտագործումը,— շարունակում է ագիտատորը,— կփոխի Արթիկի շրջանի դեմքը։ Ոչ միայն կապահովի կայուն ու բարձր բերք, այլ կմշակվեն տեխնիկական այնպիսի արժեքավոր կուլտուրաներ, ինչպիսիք են ծխախոտն ու շաքարի ճակընդեղը, հիմք կդրվի այգեգործությանը։ Մեր բերրի հողերը այլևս չեն տուժի երաշտից, որը հաճախ է այցելում մեր լեռնաշխարհը։

Աշխատանքի լայն ասպարեզ է բացվել Արթիկի շրջանի Մեղրաշեն գյու-



ղի ագիտատորների համար։ Նրանք ջանում են կոլտնտեսային գյուղի մարդկանց լուսաբանել պարտիայի հոյակապ կանխագծումները, մոբիլիզացնել նրանց ուժերը ճշմարտության ու երջանկության ուղին նշող Ծրագրի իրականացման գործում։ Ամենուրեք՝ անասնապահական ֆերմաներում և դաշտավարական բրիգադներում, թաղամասերում և ակումբում աշխատավորները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը։ Կոլտնտեսականների ցանկալի հյուրը և բանիմաց խորհրդատուն են դարձել ուսուցիչ Վ. Համբարձումյանը, մեխանիզատոր Վ. Մարգարյանը, անասնաբույժ Ա. Բալոյանը, ագրոնոմ Հ. Համբարձումյանը և ուրիշներ։ Նրանք լավ տիրապետելով ագիտացիոն աշխատանքի արվեստին, կարողանում են պարտիայի ոգեշունչ խոսքով խանդավառել աշխատավորներին։

Մեծ անելիքներ ունեն մեղրաշենցիները։ Նրանք որոշել են 1962 թվականը դարձնել բարձր մթերատվության տարի։ Արդեն սկսված է գարնանացանի նախապատրաստությունը՝ զտվում է սերմացուն, նորոգվում տեխնիկան, պարարտացվում են դաշտերը։ Պայմաններ են ստեղծվում անասունների ծնի կամպանիան անկորուստ անցկացնելու, նրանց խնամքն ավելի լավ կազմակերպելու համար։ Եվ այդ ամենը արվում է գործիմացությամբ, աշխատանքի նկատմամբ պատասխանատվության մեծագույն զգացումով։

Պարտիական կազմակերպությունը ավելի մեծ ուշադրություն է նվիրում ագիտկոլեկտիվի աշխատանքին։ Պարտբյուրոն պարբերաբար ագիտատորների համար կազմակերպում է կոնսուլտացիաներ, հրավիրում սեմինարներ, հրահանգչական խորհրդակցություններ, նրանց հաշվետվությունները լսում բյուրոյի նիստերում։ Պարտիայի համագումարի որոշումները մասսայականացնելու նպատակով ագիտկոլեկտիվի նախաձեռնությամբ վերջերս անցկացվեց ցուցադրական ագիտացիայի շաբաթ։ Այցելուի աչքն են շոյում ֆերմաներում, ակումբում և պատերին փակցված գեղեցիկ լոզունգներն ու պլակատները, պայծառ գալիքը բնութագրող դիագրամաները, որոնք ոգևորում են գյուղի աշխատավորներին և կոչում նրանց աշխատանքային նոր սխրանքների։

Կ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ

## ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Երբ այսօր հանրագումարի ենք բերում ընթացիկ տնտեսական տարվա արդյունքները, չենք կարող գոհունակությամբ չնշել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման համար մեր կոլտնտեսականների կատարած արդյունավետ աշխատանքը։

Նախահամագումարյան խանդավառ օրեր… Կոլտնտեսային դաշտերում և անասնապահական ֆերմաներում օրավուր ծավալվում էր համաժողովրդական մրցությունը։ Կանգնած աշխատանքային հերթափոխի, մեր կոլտնտեսության անդամներն ամեն կերպ ջանում էին հաջողությամբ կատարել ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած իրենց սոցիալիստական բարձր պարտավորությունները և արտադրական նոր գործերով նշանավորել կոմունիզմ կառուցողների համագումարը։ Անցած ամիսներին հենց դա է եղել մեր կոմունիստ-

ների պայքարի նշանաբանը, դրանով են համակված եղել մեր աշխատավորները։

Սոցիալիստական մրցությունը նոր ուժով բորբոքվեց ու ծավալվեց պարտիայի համագումարի բացման նախօրյակին և, հատկապես, համագումարի աշխատանքի օրերին։ Կոմունիստների կոչով ու նրանց անձնական օրինակով կոլտնտեսականներն աշխատում էին մեծ ոգևորությամբ, ձգտելով անկորուստ հավաքել իրենց աճեցրած առատ բերքը, ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Այդ օրերին բոլորի ուշադրությունը բևեռված էր դեպի Մոսկվան. մենք ուշի-ուշով հետևում էինք հարազատ պարտիայի համագումարի ընթացքին, ուշադրությամբ ուսումնասիրում նրա նյութերը։ Աշխատավորներին ոգևորում էին մեր Հայրենիքի ձեռք բերած հոյակապ նվաճումները և գալիքի պայծառ հեռանկարները։ Մարդ ուղղակի հրճվում ու ամբողջ սրտով ուրախանում էր տեսնելով կոլտնտեսականների հայրենանվեր աշխատանքը, մեր աշխատավորներից շատ շատերը 90 կիլոգրամի փոխարեն օրական հավաքում էին 180—200 կգ. բամբակի հումք և 350 կիլոգրամի փոխարեն՝ 650—800 կգ. խաղող։

Մեր կոլտնտեսության աշխատավորները ՍՄԿՊ XXII համագումարին զեկույց ներկայացրին, որ հիմնականում կատարված են մրցությամբ ստանձնած պարտավորությունները, հաջողությամբ նվաճված է յոթնամյակի երրորդ տարվա բնագիծը:

Պարտիական կազմակերպության հետևողական ջանքերով այս տարի զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարձրացավ կոլտնտեսության եկամտաբերությունը, իսկ կոլտնտեսականների աշխատանքը դարձավ է՛լ ավելի արդյունավետ։

Ահա մեր աշխատանքի մի քանի արդյունքներ. 1961 թվականին հավաքվեց 578 տոննա խաղող, 300 տոննայով ավելի, քան անցյալ տարի. մենք պարտավորվել էինք յուրաքանչյուր հեկտարից ստանալու 105 ցենտներ խաղող, ստացել ենք 145 ցենտներ։ Գինու գործարան է հանձնված 25 աստիճան շաքարայնությամբ 450 տոննա խաղող։ Առանձնապես բարձր բերք հավաքեց Կ. Մարտիրոսյանի ղեկավարած դաշտավարական բրիգադան. վերոհիշյալ բրիգադայի Զավեն Պետրոսյանի օղակը իր մշակած ինը հեկտար այգուց միջին հաշվով ստացավ 170 ցենտներ խաղող։

Գերակատարված են նաև հացահատիկի, բանջարա-բոստանային կուլտուրաների արտադրության և պետության վաճառքի գծով ստանձնած պարտավորությունները։ Կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 24,1 ցենտներ հացահատիկ։

Իրենց խոստումը կատարեցին նաև մեր տնտեսության անասնապահները։ Հիմնականում հոտի վերարտադրության հաշվին կատարվեց և գերակատարվեց անասունների գլխաքանակի աճեցման առաջադրանքը. լավ խնամքի ու կերակրման շնորհիվ հարյուր կովից ստացվել ու պահպանվել է հարյուր հորթ, յուրաքանչյուր խոզամայրից՝ 15 խոճկոր։ Պարտիայի համագումարի բացման նախօրյակին կատարվեցին անասնաբուծական մթերքների վաճառքի բոլոր պլանները։ Առ մեկը դեկտեմբերի մեր կոլտնտեսությունը արտադրել է՝ 41 տոննա միս, մոտ 200 տոննա կաթ, 112 հազար հատ ձու և 26 ցենտներ բուրդ. դա զգալիորեն շատ է, քան արտադրվել է անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում։ Անասունների կերի բազան ամրապնդելու նպատակով կուտակել ենք անհրաժեշտ քանակությամբ կոշտ ու հյութալի կեր, զգալիորեն ավելի շատ, քան կուտակել էինք անցյալ տարի։



Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի զգալիորեն կավելանան կոլտնտեսության դրամական եկամուտները՝ հասնելով ավելի քան երեք հարյուր հազար ռուբլու։ Համապատասխանաբար կավելանան աշխատավորների եկամուտները և կապիտալ ներդրումների ծավալը։ Կատարելով մեր խոստումը, պարտիայի համագումարի նախօրյակին շահագործման հանձնեցինք դպրոցի նորակառույց շենքը, բաղնիքը. ավարտված է կոլտնտեսային ակումբի շենքի կառուցման քարային աշխատանքը։ Միայն այս տարի 23 ընտանիքներ փոխադրվեցին իրենց սեփական միջոցներով կառուցված նոր տները։

ՍՄԿՊ XXII համագումարը նախագծեց գյուղատնտեսության հետագա զարգացման հուժկու վերելքի հոյակապ ծրագիրը, որը թելադրված է կոմունիստական շինարարության արմատական շահերով։ Այդ մեծ պլանի հաջող կատարման հիմքը դրվում է հենց այսօր՝ յոթնամյակի իրականացման համար մղվող պայքարում. դա այն ամուր հիմքն է, որի վրա հենվելով սովետական գյուղի աշխատողները նոր բարձունքներ կգրավեն գյուղատնտեսական արտադրության զարգացման ասպարեզում։ Այդ ամենը մեզանից պահանջում է ամրապնդել ու բազմապատկել մեր հաջողությունները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության բոլոր ճյուղերում, վճռականորեն բարելավել ու կատարելագործել տնտեսության պարտիական ղեկավարությունը։

Գյուղատնտեսական առանձին մթերքների արտադրության մակարդակով մեր կոլտնտեսությունն արդեն հասել է յոթնամյա պլանով նախատեսված ցուցանիշներին։ Բայց դա մեզ չի կարող հանգստացնել. մենք ունենք չլուծված ճարցեր, մեր աշխատանքում կան մի շարք լուրջ թերություններ, որոնք պետք է հաղթահարել։ Պարտիայի համագումարի որոշումները կենսագործելու նպատակով պարտիական կազմակերպությունը ծրագրում է գործն այնպես կազմակերպել, որպեսզի առաջիկայում աշխատանքը մեզ մոտ դառնա է՛լ ավելի արտադրողական, իսկ տնտեսությունը՝ բարձր եկամտաբեր։

Վերանայելով ցանքատարածությունների կառուցվածքը, մենք մտադիր ենք մոտակա 3—4 տարիների ընթացքում այգիների տարածությունը ավելացնել 40 հեկտարով։ Վերջերս չորս հեկտարի վրա տնկեցինք նոր այգի, 1962 թվականի գարնանը կտնկվի ևս հինգ հեկտար։ Բամբակենու ցանքն ու մշակությունը կատարելու ենք միայն քառակուսի-բնային եղանակով, մեծապես կավելանա գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ծավալը։ Ի հաշիվ աղակալած հողերի յուրացման ընդարձակվելու են ցանքատարածությունները։ Մենք ունենք բոլոր պայմանները մեծապես ավելացնելու բանջարա-բոստանային կուլտուրաների արտադրանքը, ստեղծելու կերի ամուր բազա՝ ի հաշիվ եգիպտացորենի, առվույտի և բանջարա-բոստանային կուլտուրաների բերքատվության բարձրացման։

Ա. ԱՎԱԳՅԱՆ

Էջմիածնի շրջանի Վ. Խաբունարխի կոլտնտեսության պարտբյուրոյի քարտուղար

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ՄԵՐ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ներկա էտապում վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որովհետև այն խթանում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրում նշված է, որ տեխնիկական առաջադիմությունը և արտադրության լավագույն կազմակերպումը յուրաքանչյուր ձեռնարկությունում պետք է ծառայեն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և ինքնարժեքի իջեցմանը:

Աշխատանքի արտադրողականությունը հիմնականում պայմանավորված է արտադրողական ուժերի մակարդակով, առաջին հերթին՝ արտադրության գործիքների տեխնիկական մակարդակով, արտադրողների փորձառությամբ, հմտությամբ, ջանասիրությամբ և գիտելիքներով: Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար կարևոր նշանակություն ունեն նաև աշխատանքի կազմակերպումը, արտադրողների նյութական շահագրգռվածությունը:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման այս գործոնները արտադրության տարբեր ճյուղերում կարող են տարբեր լինել, բայց բոլոր դեպքերում էլ ամենավճռական դերը պատկանում է արտադրողական ուժերին: Եթե մյուս գործոնները կարող են աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մի քանի տոկոսով, ապա արտադրողական ուժերի, առաջին հերթին՝ արտադրության գործիքների փոփոխությունը, կատարելագործումը կարող են այն բարձրացնել մեծ չափերով: Հենց դրանում է տեխնիկական պրոգրեսի կարևոր, ռևոլյուցիոն նշանակությունը: Որքան մեծ ու արմատական է աշխատանքի գործիքի փոփոխությունը, նույնքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը:

Մեր երկրում տեխնիկական պրոգրեսի հիմնական նպատակն է՝ բարձրացնել սոցիալիստական արտադրողական ուժերի տեխնիկական մակարդակը, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումներին համընթաց և համապատասխան:

Արտադրության սոցիալիստական եղանակը ստեղծեց արտադրողական ուժերի զարգացման աննախընթաց, մինչև այդ գոյություն ունեցող արտադրաեղանակների համար անհասանելի հնարավորություններ: Սոցիալիստական շինարարության պրակտիկան, այդ արտադրության նոր եղանակի, սոցիալիստական վերակառուցման, զարգացման և տեխնիկական վերափոխման պրակտիկան է: ՍՍՌՄ-ում աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ առաջին հնգամյակում բարձրացավ 41, երկրորդ հնգամյակում՝ 82 տոկոսով: 1961 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտա-



դրողականությունը (նախնական տվյալներով) արդյունաբերության մեջ բարձրացել է 43, շինարարության մեջ՝ 60, երկաթուղային տրանսպորտում՝ 56 տոկոսով:

Այս ամենի հիման վրա սոցիալիստական շինարարության տարիներին ստեղծվեցին լայն հնարավորություններ տեխնիկական արմատական հեղաշրջման, տեխնիկական համարձակ առաջադիմության համար:

Պայքարը աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, առաջին հերթին պայքար է ժամանակակից մեքենաներ, տեխնոլոգիական սարքավորումներ, էլեկտրաշարժիչներ, էլեկտրավառարաններ, էլեկտրոլիզորներ, ավտոմատ գծեր ստեղծելու, արտադրության մեջ գերբարձր ճնշումը, ջերմությունն ու արագությունն օգտագործելու, արտադրության սարքերն ու սարքավորումները մոդեռնացնելու համար: Եվ որքան զարգացած է արտադրության տեխնիկան, բարձր է նրա կարողությունը, այնքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը:

Վերջին տասը տարիների ընթացքում Երևանի ալյումինի գործարանում արտադրական հիմնական ագրեգատների—էլեկտրոլիզորների արտադրողականությունը ավելացել է մոտ 37 տոկոսով, որից 28-ը նրանց հզորությունն ավելացնելու, իսկ 9-ը՝ տեխնոլոգիական բարձր ցուցանիշների շնորհիվ: 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, ագրեգատների արտադրողականությունն ավելացավ 8 տոկոսով, որից ագրեգատների հզորությունն ավելացնելու հաշվին՝ 7, իսկ տեխնոլոգիական ցուցանիշները բարձրացնելու հաշվին մոտ մեկ տոկոս: Գործարանում աշխատանքի արտադրողականությունը վերջին տասը տարում բարձրացել է 57,1, իսկ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ՝ 10,7 տոկոսով:

Բանվորական ժամանակի խնայողությանը, հետևաբար աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, մեծ չափով նպաստում է աշխատատար պրոցեսների մեքենայացումը: Այդ ուղղությամբ, մասնավորապես, անոդային տնտեսության սպասարկման գծով, զգալի աշխատանք է կատարվել, որի շնորհիվ (չնայած արտադրության ծավալի ընդհանուր աճին) կրճատվել է անոդային տնտեսությունն սպասարկող բանվորների քանակը: Այսպես, օրինակ, վերջին հինգ տարում արտադրության ընդհանուր ծավալը մեծացել է 14,5 տոկոսով, բայց անոդային տնտեսության բանվորների քանակը ոչ թե աճել, այլ կրճատվել է 4 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 21 տոկոսով:

Բանվորական ժամանակի առավել մեծ խնայողությունը կապված է արտադրության կոմպլեքսային մեքենայացման հետ: Ժամանակակից մեքենայական արտադրությունը դրա համար ստեղծել է նպաստավոր պայմաններ: Երկրորդ տարին է, ինչ մեր գործարանում հետազոտական աշխատանք է կատարվում էլեկտրոլիզի պրոցեսը լրիվ մեքենայացնելու և ավտոմատացնելու ուղղությամբ: Դրա շնորհիվ ալյումինի արդյունաբերության մեջ կապահովվի աշխատանքի արտադրողականության շեշտակի վերելք:

Արտադրողական ուժերի վիճակն ամենից առաջ բնորոշվում է աշխատանքի մեխանիկական միջոցների զարգացման աստիճանով: Սակայն, աշխատանքի այդ և արտադրության այլ միջոցներ ստեղծվում և շարժման մեջ են դրվում արտադրողական հիմնական ուժի՝ մարդու միջոցով: Հետևաբար, աշխատանքի արտադրողականության հիմնական շարժիչ ուժը մարդն է, արտադրողը, որի

հմտությունից, փորձառությունից, ջանասիրությունից և գիտելիքներից է կախված աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար անհրաժեշտ է մշտապես հոգ տանել արտադրողների տեսական և տեխնիկական պատրաստականության մասին։ Առանց դրա ոչ միայն հնարավոր չէ ստեղծել ժամանակակից արտադրության միջոցները, այլև գործի դնել, շահագործել դրանք։ Տեխնիկական ուսուցման կուրսերը, առաջավորների փորձի, նորարարությունների լայն մասսայականացումը, տեխնիկական սիստեմատիկ ինֆորմացիան, կադրերի ուսուցումը անմիջականորեն և ուղղակի կապված են աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։

Մեր գործարանում, որպես կանոն, հրավիրվում են տեսական-տեխնիկական կոնֆերանսներ՝ ինժեներա-տեխնիկական կազմի և առաջավոր բանվորների մասնակցությամբ։ Նորարարներն այս կոնֆերանսներում պատմում են իրենց աշխատանքի մասին։ Մեր գործարանը ՍՍՌՄ ինդուստրիալ կենտրոններն է գործուղում իր մասնագետներին, գյուտարարներին և առաջավոր բանվորներին՝ մասնակցելու այդ վայրերում հրավիրված գիտա-տեխնիկական կոնֆերանսներին։ Միայն անցյալ տարի այդ նպատակով մոտ 150 մարդ է գործուղվել Լենինգրադ, Մոսկվա, Վոլգոգրադ, Սվերդլովսկ։

Առանց անհրաժեշտ գիտելիքների ու հմտության անհնար է ղեկավարել արտադրության բարդ տեխնոլոգիական պրոցեսները. առանց անհրաժեշտ փորձառության հնարավոր չէ տնտեսել բանվորական ժամանակը, առանց ջանասիրության չի կարելի ապահովել աշխատանքի առավել բարձր արտադրողականություն։

Ալյումինի գործարանում վերջին տասը տարում էլեկտրահոսանքի ելքը ավելացել է մոտ 3 տոկոսով, 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ՝ 0,2 տոկոսով, էներգիայի ելքը աճել է համապատասխանորեն 6 և 0,39 գրամով, էլեկտրոլիզորի օրական արտադրանքը 124,97 և 31,68 կիլոգրամով։ Այս ցուցանիշներին գործարանը հասել է միայն բանվորների ձեռք բերած անհրաժեշտ գիտելիքների, հմտության և փորձառության շնորհիվ։

Վերջերս ֆոլգագլանման ցեխի թիթեղագլանման տեղամասում շահագործման հանձնվեց հայրենական արտադրության էլեկտրավառարանը, որը մեծ առավելություն ունի մյուս վառարանների համեմատությամբ։ Նոր էլեկտրավառարանի արտադրողականությունը մեկ ժամում հասնում է երեք տոննա մետաղի։ Այժմ ալյումինը գլանվում է ավտոմատ ձևով, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է երկու անգամ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մեծ նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը։ Հումքը կամ նյութը մինչև պատրաստի արտադրանք դառնալը անցնում է արտադրական բազմաթիվ հաջորդական պրոցեսներ՝ արտադրական ցիկլ։ Արտադրության այդ շղթայի որևէ օղակի խափանումը արգելակում է մյուս օղակների աշխատանքը, պատճառ դառնում մասսայական պարապուրդի, իջեցնում աշխատանքի արտադրողականությունը։ Աշխատանքի կազմակերպումը ենթադրում է աշխատանքի հավասար, միջին բեռնվածություն ամբողջ բանվորական օրվա ընթացքում, ամսվա բոլոր օրերին (առանց պարապուրդի և գրոհայնության), արտադրության տեխնոլոգիական ցիկլի բոլոր օղակների ներդաշնակ համագործակցություն, բոլոր տեղամասերի ռիթմիկ աշխատանք, անհրաժեշտ ասորտիմենտի և որակի հումքով



և բանվորական գործիքներով արտադրողներին ժամանակին ապահովելը։ Պայքարը աշխատանքի կազմակերպման, աշխատանքի բարձր արտադրողականության համար պարտավորեցնում է ո՛չ միայն արտադրության ղեկավարներին, այլև արդյունաբերությանն սպասարկող օրգաններին՝ մատակարարման, տրանսպորտի ղեկավարներին գործել անթերի։

Աշխատանքի կազմակերպման գործում վճռական տեղ ունի սոցիալիստական մրցության կազմակերպումը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման շարժիչ ուժը սոցիալիստական արտադրության մեջ հանդիսանում է մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը։ Վերջին տարիներս կոմունիստական աշխատանքի բրիգադների, հարվածայինների կոչմանն արժանանալու համար ծավալված շարժումը նոր էջ է բացում սոցիալիստական մրցության մեջ։ Այդ բրիգադների, տեղամասերի մյուս ցուցանիշների հետ միասին բարձր է նաև աշխատանքի արտադրողականությունը։ Այսպես, մեզ մոտ էլեկտրոլիզի ցեխի կոմունիստական երեք բրիգադների աշխատանքի արտադրողականությունը մոտ մեկ տոկոսով բարձր է մյուս բրիգադների աշխատանքի արտադրողականությունից։

Աշխատանքի կազմակերպման գործում կարևոր նշանակություն ունի աշխատողների հանգստի կազմակերպումը։ Աշխատանքի արտադրողականությունը պահանջում է ուժերի որոշակի լարում և կենտրոնացում, որը կախված է աշխատողի հոգեվիճակից։ Երբեմն խոտանը կամ վթարը հետևանք են ոչ թե հմտության կամ փորձառության պակասի, այլ վատ հոգեվիճակի, անբավարար հանգստի, ընտանեկան կամ այլ անախորժությունների։ Այդ կանխելու համար հարկավոր է լավ կազմակերպել աշխատողների կուլտուրական հանգիստը։

Վերջին երկու տարիներին ալյումինի գործարանի կոլեկտիվը այդ ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարել, որի ազդեցությունը տոկոսներով չի չափվում։ Մեր գործարանը պարբերաբար հրավիրում է բանվորների կանանց հավաքներ՝ աշխատանքային բրիգադների հետ միասին։ Բանվորների ընտանիքների անդամները հաճախ լինում են ցեխերում, մասնակցում աշխատանքի կուլտուրայի բարձրացման մեր ձեռնարկումներին։ Միայն անցյալ տարի 150 մարդ մեր ուղեգրերով հանգստացել են առողջարաններում և հանգստյան տներում։

Աշխատանքի արտադրողականության մյուս ոչ պակաս կարևոր գործոնը աշխատողների նյութական շահագրգռվածությունն է, որն արտահայտվում է աշխատավարձի սիստեմում։ Մասսաների աշխատանքային խանդավառությունը՝ միանալով նյութական շահագրգռվածության հետ, դառնում է ստեղծագործական անսահման սխրագործությունների աղբյուր։

Վերջին տարիների ընթացքում պարտիայի և կառավարության միջոցառումները զգալի չափով կարգավորեցին աշխատավարձի սիստեմը։ Խիստ կարևոր են աշխատանքի և հատուցման ճիշտ չափերը։ Աշխատավարձի չափը պետք է անպայման բխի ընդլայնված վերարտադրության պահանջից։ Այդ առումով աշխատանքի գործարքային սիստեմը անվիճելի առավելություն ունի, բայց անհրաժեշտ է ճիշտ սահմանել արտադրանքի չափը, որակը, բարդությունը։ Իսկ եթե այդ հնարավոր չէ, գործարքային սիստեմը ոչ միայն իրեն չի արդարացնի, այլև կարող է չարաշահումների տեղիք տալ։

Հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի նյութական արտադրության և հիմնական արտա-

դրական պրոցեսներում զբաղված մարդկանց տեսակարար կշռի ավելացումը օժանդակ և երկրորդական գործերով զբաղվողների, ինչպես և վարչա-կառավարչական ապարատում աշխատողների հաշվին։ Աշխատողների ընդհանուր թվում որքան փոքր է օժանդակ գործերով զբաղվողների, ինչպես և վարչա-կառավարչական ապարատում աշխատողների տեսակարար կշիռը, այնքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը։ Ալյումինի գործարանում արտադրանքի բեռնավորման և առաքման վրա անցյալում զբաղվում էր մի ամբողջ բրիգադա։ Անցյալ տարի այդ աշխատանքների մեքենայացման շնորհիվ ներկայումս նույն գործը կատարում են միայն երկու մարդ։ Զգալի չափով կրճատվել է օժանդակ աշխատանքով զբաղվողների, ինչպես և վարչա-կառավարչական ապարատի աշխատողների թիվը։ Այդ մեծապես նպաստել է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

ՍՄԿՊ XXII համագումարում պարտիայի Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց. «Գլխավորը, որի վրա պետք է կենտրոնացվի ուշադրությունը, դա աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացումն է... Այդ խնդիրը լուծելու համար անհրաժեշտ է իսկական հերոսություն։ Բայց մեր պայմաններում հերոսությունը ո՛չ միայն խոյանք է, հաստատակամություն, ջանասիրություն։ Դա միաժամանակ հմտություն է, գիտելիքներ, բարձր կուլտուրա, առաջավոր տեխնիկա, նորարարություն»։

Ջերմորեն հավանություն տալով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի որոշումներին ու պարտիայի Ծրագրին՝ ալյումինի գործարանի ողջ կոլեկտիվը հաստատակամորեն կպայքարի արտադրության կոմպլեքս մեքենայացման ու ավտոմատացման միջոցով աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։

Հ. ԴՈՎԼԱԹՅԱՆ
Երևանի ալյումինի գործարանի դիրեկտոր

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՈՒՂԻՆ

ՍՄԿՊ XXII համագումարը ուրվագծեց գյուղատնտեսության արտադրողական ուժերի հզոր վերելքի գիտականորեն հիմնավորված կոնկրետ ծրագիր, որը թույլ կտա լուծելու երկու հիմնական խնդիր՝ հասնել բնակչության համար բարձրորակ սննդամթերքների և արդյունաբերության համար հումքի առատության, ապահովել սովետական գյուղի աստիճանական անցումը կոմունիստական հասարակության հարաբերություններին։ Կայուն, բարձր, անշեղորեն աճող բերք ապահովելու, հողի բերրիությունը բարձրացնելու և անասնաբուծության արագ վերելքն ապահովելու նպատակով, պարտիան անհրաժեշտ է գտնում իրագործել գյուղատնտեսության գիտականորեն հիմնավորված տեղաբաշխում՝ ըստ բնական, տնտեսական գոտիների ու շրջանների, նրա ավելի խոր մասնագիտացում։ Այն հնարավորություն կտա կոլտնտեսություններին ու սովխոզներին արտադրության մեջ արմատավորելու հողագործության և անասնաբուծության գիտականորեն հիմնավորված սիստեմներ, առավելապես զարգացնելու գյուղատնտեսական այն ճյուղերի մշակությունը, որոնց համար լավագույն պայմաններ կան, և որոնք առավել քիչ ծախսեր են պահանջում։

Այդ առումով ցանկանում եմ ներկայացնել իմ նկատառումները Գորիսի



շրջանի գյուղատնտեսության հեռանկարային զարգացման, նրա հետագա ինտենսիֆիկացման ու մասնագիտացման մի քանի հարցերի վերաբերյալ։

Ամենից առաջ թույլ ու փոքր կոլտնտեսությունների մասին։ Մեր շրջանի 26 կոլտնտեսություններից 20-ը փոքր են. դրանք չեն կարողանում ռացիոնալ կերպով օգտագործել իրենց արտադրական ու բնական ռեսուրսները։ Այդ կոլտնտեսություններում մեքենայացված է գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների միայն 15—30 տոկոսը, իսկ առանձին կոլտնտեսություններում՝ ավելի քիչ։ Տանձատափ, Բարձրավան, Սվարանց, Մալղաշ, Ղուրդղուլաղ, Նոր Առաջաձոր, Զորաշեն և մյուս փոքր կոլտնտեսություններում յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրվում են 2—2,5 անգամ ավելի քիչ գյուղատնտեսական մթերքներ, քան, ասենք, շրջանի խոշոր՝ Խնածախ, Տեղ, Խնձորեսկ, Կոռնիձոր, Յայջի, Գորիս և Շինուհայր գյուղերի կոլտնտեսություններում։

Փոքր կոլտնտեսություններում խիստ բարձր է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Դրա պատճառն այն է, որ վերոհիշյալ տնտեսություններում հողը, որպես հիմնական արտադրամիջոց, չի օգտագործվում ռացիոնալ կերպով, չեն կիրառվում կոմպլեքս ագրոմիջոցառումներ, լուրջ աշխատանք չի տարվում անասունների ցեղական կազմը բարելավելու և կերի կայուն բազա ստեղծելու ուղղությամբ։

Այդ առումով նպատակահարմար է խոշորացնել մանր տնտեսությունները, առաջին հերթին՝ Գորիսի, Տաթևի, Շինուհայրի, Բայանդուրի, Շուռնուխի և ապա՝ Խնածախի, Տեղի, Խնձորեսկի, Կոռնիձորի կոլտնտեսությունների բազայի վրա աստիճանաբար կազմակերպել խոշոր տնտեսություններ, միացնելով դրանց շրջանի փոքր, տնտեսապես թույլ կոլտնտեսությունները։ Դա հնարավորություն կտա կարճ ժամանակամիջոցում լիովին օգտագործել բոլոր ռեզերվները և շեշտակիորեն բարձրացնել գյուղատնտեսության էկոնոմիկան։

Մեր շրջանում անբավարար է օգտագործվում հողային ֆոնդը։ Վերջին տարիներին մի քանի հազար հեկտար վարելահող, առանց տնտեսական որևէ լուրջ հիմնավորման, դուրս է գրվել հողային բալանսից և վերածվել խոպանի։ Բացի այդ, Քարահունջ, Շինուհայր, Յայջի, Խոտ, Հալիձոր, Խոզնավար, Բայանդուր գյուղերի և ուրիշ կոլտնտեսությունների դաշտերում կան 20—25 մետր լայնությամբ հազարավոր միջնակներ, որոնք թույլ չեն տալիս ռացիոնալ օգտագործել տեխնիկան։

Գյուղատնտեսության մեջ օգտագործվող հողային տարածությունը, որի հիման վրա պլանավորվում ու հաշվարկվում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, կազմում է շրջանի ամբողջ հողատարածությունների մոտ 40 տոկոսը, իսկ վարելահողերը՝ 22 տոկոսը։ Վարելահողերի 98 տոկոսն ապահովված չէ ջրով, դրանց զգալի մասը քարքարոտ է, էրոզիայի ենթակա և անհարմար մեքենայական աշխատանքի համար։

Շրջանի կոլտնտեսությունների վարելահողերի մեծ մասը կազմված է փոքր մասսիվներից, իսկ դա բացասաբար է անդրադառնում մեքենաների արդյունավետ օգտագործման, աշխատանքի արտադրողականության և բերքատվության բարձրացման վրա։

Յայջի, Հալիձոր, Շինուհայր, Խոտ, Քարահունջ, Տաթև, Սվարանց, Տանձատափ, Մալղաշ, Բարձրավան, Շուռնուխ, Աղբուլաղ, Ղուրդղուլաղ, Ն. Առաջա-

ձոր գյուղերի կոլտնտեսությունների վարելահողերը հետևյալ պատկերն են ներկայացնում.

| Վարելահողերի ընդհանուր տարածությունը (հեկտարներով) | Այդ թվում հողակտորների չափը տոկոսներով | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | մինչև 0,5 հեկտար | 0,5—4 հեկտար | 4—6 հեկտար | 6—8 հեկտար | 8—10 հեկտար | 10—12 հեկտար | 12 հեկտարից բարձր |
| 6645 | 16,3 | 38,2 | 8,5 | 4,5 | 4,5 | 21 | 7 |

Ինչպես տեսնում ենք, շրջանի վերոհիշյալ 14 կոլտնտեսությունների վարելահողերի գերակշռող մասը կազմված է փոքրիկ հողակտորներից։ Այդ հողերի երկարության մասին պարզ պատկերացում է տալիս հետևյալ աղյուսակը.

| Կոլտնտեսությունները | Վարելահողերի ընդհանուր տարածությունը (հեկտարներով) | Այդ թվում վարելահողերի երկարությունը (տոկոսներով) | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | 70-ից 150 մետր | 150-ից մինչև 250 մետր | 250-ից մինչև 400 մետր | 400-ից մինչև 600 մետր | 600-ից մինչև 800 մետր | 800-ից մինչև 1000 մետր |
| Տաթև | 1007 | 7 | 42 | 7 | 12 | 5 | 27 |
| Սվարանց | 324 | 2 | 2 | 9 | 4 | 13 | 70 |
| Տանձատափ | 120 | 9 | 51 | 2 | 3 | 5 | 30 |
| Բարձրավան | 390 | 2 | 13 | 8 | 6 | 6 | 65 |
| Ընդամենը՝ | 1841 | 5 | 27 | 6,5 | 6,3 | 7,2 | 48 |

Աղյուսակից երևում է, որ վերոհիշյալ չորս կոլտնտեսություններում 70—600 մետր երկարություն ունեցող հողակտորների ընդհանուր տարածությունը կազմում է եղած վարելահողերի 44,8 տոկոսը։ Այսպես է վիճակը նաև մի շարք կոլտնտեսություններում։ Կարճ և փոքրիկ հողակտորների վրա անարտադրողաբար են օգտագործվում գյուղատնտեսական մեքենաները, խիստ բարձր է տրակտորային աշխատանքի ինքնարժեքը, ցածր է հարյուր հեկտար հողատարածության դիմաց ստացվող գյուղատնտեսական մթերքների ելքը։

Նախատեսվում է առաջիկա տարիներին որոշ աշխատանք կատարել կարճ ու փոքր հողակտորները միացնելու և խոշորացնելու ուղղությամբ. դա կարվի հողամիջյան սահմաններն ու միջնակները հարթեցնելու, քարակույտերը, թփերը և փոքրիկ բլրակները վերացնելու միջոցով։ Կստեղծվեն հողային մեծ զանգվածներ, որտեղ հնարավոր կլինի օգտագործել գյուղատնտեսական բարդ մեքենաներ։ Այդ ասպարեզում որոշ փորձ ունենք արդեն։

Առաջիկա տարիներին մեծ աշխատանք կծավալվի հողային մեծ տարածություններ ստեղծելու ուղղությամբ, որը հնարավորություն կտա յուրաքանչյուր հեկտարից ստանալու ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ, քան ստացվել է նախորդ տարիներին։

Գորիսի շրջանի գյուղատնտեսության էկոնոմիկայի հետագա զարգացումը, ինտենսիֆիկացումը և մասնագիտացումը սերտորեն կապված են շրջանի ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման և ոռոգման սիստեմի ընդարձակման հետ։ Շրջանում ջրովի հողերի տեսակարար կշիռը գյուղատնտեսական շրջանառության մեջ գտնվող հողային տարածությունների նկատմամբ կազմում



է 2 տոկոս, իսկ առանձին կոլտնտեսություններում ընդամենը՝ 0,5—1,5 տոկոս։

Մեր ջրային ռեսուրսները խիստ սահմանափակ են. ոռոգման աղբյուրներն են՝ Գորիս գետն իր վտակներով, Բայանդուր, Խնածախ, Խոզնավար, Տաթև, Ղուրդղուլաղ, Տեղ, Կոռնիձոր գյուղերի փոքրիկ գետակները։ Շրջանի վարչական տերիտորիայի սահմաններով հոսող Բարգուշատ, Ջաբուղ և Որոտան գետերի ջուրն առայժմ հնարավոր չէ օգտագործել մեր դաշտերը ոռոգելու համար։ Այդ գետերը հոսում են խոր, ժայռոտ կիրճերով և նրանցից առուներ հանելը մեծ դժվարությունների հետ է կապված. բացառություն են կազմում Կոռնիձոր, Յայջի, Շինուհայր և մյուս գյուղերի այն փոքրիկ տարածությունները, որոնք ոռոգվում են այդ գետերի ջրերով։ Ընդամենը Գորիսի շրջանում կան 15 ջրային սիստեմներ, որոնցից հինգն ունեն միջտնտեսային և տասը՝ ներտնտեսային նշանակություն։ Այդ սիստեմների ջրանցքները մեծ մասամբ գտնվում են կիրճերում կամ ջրբաժան հողամասերի թեքությունների վրա։ Առուների ջուրը քիչ է ծախսվում։

Այս ամենը ցույց են տալիս, որ շրջանում եղած ջրային ռեսուրսները անբավարար են հողագործության և, հատկապես, այգեգործության կուլտուրան բարձրացնելու համար։ Այդ նպատակով անհրաժեշտ է՝ նախ միավորել առուներն ու աղբյուրները և ոռոգման համար ստեղծել ջրային հոսքի ռեժիմ. երկրորդ՝ պատրաստել նոր ջրամբարներ, նորոգել հները, կուտակել անձրևի և ձյան ջուրը և, երրորդ՝ օգտագործել Ջաբուղ և Որոտան գետերի ջրերը։

Մեր շրջանի գյուղատնտեսության էկոնոմիկայի զարգացման համար առանձնապես մեծ նշանակություն ունի Որոտան գետը։ Տաթևի հիդրոէլեկտրակայանի կառուցման նպատակով հարկ կլինի այդ գետն իր հունից բարձրացնել վեր. այն կհոսի Յայջի, Հալիձոր, Շինուհայր, Խոտ և Քարահունջ գյուղերի տերիտորիայով և կթափվի Տաթևգէսի մեծ ջրավազանը։ Դա հնարավորություն կտա ոռոգելու ինչպես վերը նշված, այնպես էլ Ազատաշեն, Զորաշեն, Այգեձոր, Գորիս, Խնձորեսկ, Քարաշեն, Տեղ և Կոռնիձոր գյուղերի մոտ ութ հազար հեկտար վարելահող։ Ջրային մյուս մեծ ռեզերվը՝ դա Ջաբուղ գետն է, որի ջրերով կարելի է ոռոգել Խոզնավարի, Բայանդուրի, Խնածախի, Արավուսի, Տեղի և Կոռնիձորի հողային տարածությունների մի մասը՝ մոտ 2 հազար հեկտար։ Այս ջրային ռեսուրսների օգտագործումը պայմանական է, քանի որ այն կապված է որոշ դժվարությունների և կապիտալ մեծ ներդրումների հետ։

Ջրային ռեսուրսների օգտագործման տեսակետից մեծ արժեք են ներկայացնում նաև Գորիսի շրջանի տերիտորիայում գտնվող գետակները, լճերը և ջրավազանները։ Դրանք հնարավորություն կտան ոռոգելու ավելի քան 8779 հեկտար հող. այդպիսով ոռոգվող հողային տարածությունները կհասցնեն մինչև 10 հազար հեկտարի։

Մեր կարծիքով պետք է առաջին հերթին լուծել Բռունի ջրամբարի և Տաթևի Ջավան գետի ջրհան կայանի շինարարության հարցը։ Բռուն գյուղից վերև, Գորիսի Վարարակն գետի հոսանքի ուղղությամբ՝ ութ կիլոմետր հեռավորության վրա, կա մի բնական թաս. հենց այդտեղ՝ քսան մետր բարձրությամբ և հարյուր մետր երկարությամբ հողային կամ քարային պատվարի կառուցման միջոցով կարելի է կուտակել անհրաժեշտ քանակությամբ ջուր և ոռոգելի դարձնել Քարահունջի կոլտնտեսությունից՝ 200 հեկտար, Շինուհայրի՝ 150 և Գորիսի՝ 220 հեկտար հող։

Այդ ջրամբարի շինարարության հետ սերտորեն առնչվում է Գորիս գետի

ջրերի արդյունավետ օգտագործման հարցը. այդ ջրերը օգտագործվում են միայն ոռոգման սեզոնում՝ տարվա ընթացքում երկու-երեք ամիս։ Դրանք ամբողջ տարին օգտագործելու համար անհրաժեշտ է Գորիս գետի ջրերը Բռունի գծամասով ուղղել Քարահունջի ջրամբարը. գարնան, աշնան ու ձմռան ամիսներին կարելի է ջուրը կուտակել այդտեղ և լրացուցիչ կերպով ոռոգելի դարձնել հարյուր հեկտար տարածություն։ Բռունի ջրամբարի գծամասից ոչ հեռու գտնվում է Ափու գյուղը. այնտեղ նույնպես կարելի է կառուցել ջրամբար՝ կուտակելով մոտ 300 հազար խորանարդ մետր ջուր և այն օգտագործել հողերի ոռոգման ու անասունները ջրելու համար։

Ելնելով առանձին կոլտնտեսությունների բնական և հողակլիմայական պայմաններից շրջանը պետք է հիմնականում բաժանել երեք գոտիների՝ դաշտային, նախալեռնային և լեռնային։ Այդ հնարավորություն կտա ռացիոնալ վարել դաշտավարությունը, ճշտորեն պահպանել գյուղատնտեսական աշխատանքների ժամկետները և կուլտուրաների մշակության հերթականությունը։

Մեր խնդիրն է՝ մշակել գործնական միջոցառումներ գյուղատնտեսության արտադրության մասնագիտացումն ըստ կոլտնտեսությունների իրականացնելու համար։ Այդ կատարելիս պետք է հաշվի առնել շրջանի գյուղատնտեսության էկոնոմիկայի գլխավոր ուղղությունը, շրջանի ներսում յուրաքանչյուր կոլտնտեսության բնական ու տնտեսական պայմանները։ Մասնագիտացման հիմքում պետք է դրվի հացահատիկի, կաթի, մսի, բրդի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրության ավելացումը՝ աշխատանքի ու նյութական միջոցների նվազագույն ծախսման պայմաններում։ Այդ իսկ նպատակով շրջանի դաշտային գոտու կոլտնտեսություններում պետք է առավելապես զարգացնել ոչխարաբուծությունը, այգեգործությունը և հացահատիկի մշակությունը, իսկ լեռնային գոտու կոլտնտեսություններում՝ կաթնապրանքային անասնաբուծությունը և հացահատիկի մշակությունը։

Կոլտնտեսություններն ունեն գյուղատնտեսական օգտագործման հողեր, որոնք ինչպես հայտնի է, իրենց կառուցվածքով և բերրիությամբ անփոփոխ չեն մնում։ Տնտեսության զարգացմանը զուգընթաց, սակավ արդյունավետ հողերը աստիճանաբար դառնում են ավելի արդյունավետ։ Այդ հողերի, ինչպես և ջրային ռեսուրսների խելացի օգտագործման պայմաններում կոլտնտեսությունները հնարավորություն կունենան առաջիկա տարիներին վարելու ոչ թե նեղ մասնագիտացված, այլ բազմաճյուղ տնտեսություն և հողատարածության մեկ միավորից կստանան առավելագույն արտադրանք։

Մեր կարծիքով Գորիսի շրջանը պետք է մասնագիտանա անասնաբուծության, մասնավորապես ոչխարաբուծության ուղղությամբ։ Դրա համար մեզ մոտ կան բոլոր նպաստավոր պայմանները։ Այսպես. քսանամյակի վերջին՝ 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, նախատեսվում է շրջանի գյուղատնտեսության դրամական բոլոր եկամուտներն ավելացնել 13,5 անգամ, որի 66 տոկոսը կկազմեն անասնաբուծությունից ստացվող եկամուտները։

Գորիս, Վերիշեն, Տաթև, Բայանդուր, Խոզնավար գյուղերի կոլտնտեսություններում առավելապես պետք է զարգացնել տավարաբուծությունը՝ յուրաքանչյուր տնտեսությունում պահելով 600—1000 կով, ներկայումս եղած 100—300 կովի փոխարեն։ Դրանով իսկ հնարավոր կլինի մոտ երեք անգամ կրճատել մեկ միավոր արտադրանքի վրա կատարված աշխատանքային ծախսումները, միաժամանակ խոշոր չափով ավելացնել կաթի ու մսի արտադրությունը։ Այդ



կոլտնտեսությունների հանրային հոտում կավելանա կովերի գլխաքանակը՝ յուրաքանչյուր 100 հեկտար հողի վրա կպահվի 25—30 կով։ Ամբողջությամբ վերցրած շրջանում առաջիկա քսան տարում երկու անգամ կավելանա կովերի գլխաքանակը, իսկ ցեղի բարելավման և ռացիոնալ կերակրման միջոցով կաթի արտադրությունը կավելանա ավելի քան 4,5 անգամ։

Մեր շրջանում հատկապես կզարգանա ոչխարաբուծությունը։ Մենք ունենք ամառային ընդարձակ արոտավայրեր. կերային կուլտուրաների ցանքատարածություններն ավելացնելու, բերքատվությունը բարձրացնելու, ինչպես և անասունների արոտային ու մսուրային շրջաններում կերակրման անհամապատասխանությունը վերացնելու միջոցով հնարավոր կլինի սեփական հոտի վերարտադրությամբ ոչխարների գլխաքանակը 1970 թվականին հասցնել 100 հազարի, իսկ 1980 թվականին՝ 120 հազարի, անցյալ տարվա 68 հազարի փոխարեն։ Ոչխարների գլխաքանակը զգալիորեն կավելանա մասնավորապես Խնձորեսկ, Տեղ, Խնածախ, Կոռնիձոր, Յայջի և ուրիշ կոլտնտեսություններում։ Ոչխարների գլխաքանակի ավելացման և ցեղի բարելավման հետ մեկտեղ խոշոր չափով կաճի նաև բրդի արտադրությունը։ Անասնաբուծության բալանսում ոչխարաբուծությունից ստացվող եկամուտը կկազմի 50,7 տոկոս։

Այդ կարվի ոչխարների հոտի ստրուկտուրան, կերակրումը, բուծումն ու խնամքը բարելավելու, հոտում 70—75 տոկոս մայրական կազմ ապահովելու ճանապարհով։ Ոչխարաբուծության բուռն զարգացումը շրջանին հնարավորություն կտա մեծ չափերով ավելացնելու դրամական եկամուտները, արտադրելու էժան միս և բուրդ։

Շրջանի մասնագիտացումը միաժամանակ թույլ կտա զարգացնելու գյուղատնտեսության մյուս ճյուղերը ևս—հացահատիկային տնտեսությունը և այգեգործությունը։ Բավական է նշել, որ 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, հացահատիկի համախառն բերքը կաճի ավելի քան չորս անգամ, կերի արտադրությունը՝ 7,5 անգամ և այլն։

Շրջանի գյուղատնտեսության ինտենսիվությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ կլինի լուծել մի քանի խնդիրներ։ Ամենից առաջ անասունների ցեղի բարելավման աշխատանքները կարգավորելու նպատակով պետք է Գորիսում կազմակերպել անասունների սերմնավորման պետական կայան, ապահովելով այն բարձրարժեք արտադրողներով. կոլտնտեսություններում ստեղծել տոհմային կորիզներ՝ տոհմային երինջներով։

Մեր շրջանում անասունների կերի հիմնական բազան կորնգանն է, նույնիսկ ամենաանբարենպաստ տարիներին, այն մեզ մոտ լավ բերք է տալիս։ Սակայն կորնգանի ցանքատարածությունների ներկա կառուցվածքը չի կարող ապահովել անասնաբուծության հետագա զարգացումը։ Շատ կոլտնտեսություններում կորնգանի առկա ցանքատարածությունները պահպանվում են 2—3 տարի և նրա բերքատվության ամենալավ ժամանակը քանդում։ Դա սխալ է. այն պետք է պահպանել 3—4 տարի և ապա քանդել։ Ցանքաշրջանառությունը պետք է կազմել այնպես, որ նրա զգալի մասը զբաղեցնի կորնգանը։ Դա տնտեսական տեսակետից շահավետ է, քանի որ կերի բազան ամրապնդվելու հետ միասին կբարձրանա նաև հացահատիկի բերքատվությունը և մեղրի բերքը։

Շատ է խոսվում հողերի քիմիացման, պարարտանյութերի օգտագործման անհրաժեշտության մասին։ Սակայն, ցավոք սրտի, մինչև հիմա յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի համար չունենք գիտականորեն մշակված պա-

բարտացման սիստեմներ։ Պատճառն այն է, որ դեռևս լավ չեն ուսումնասիրված մեր հողերի ծածկույթը, նրանց կառուցվածքը։ Անհրաժեշտ է այդ ուղղությամբ ձեռնարկել լայն աշխատանքներ, առաջիկայում կազմել շրջանի հողածածկույթի և ագրոքիմիական քարտեզներ, կոլտնտեսություններն ապահովել հողերի մշակման, պարարտանյութերի օգտագործման գիտական սիստեմներով։

Եվ, վերջապես, պլանավորման ներկա պրակտիկայի մասին։ Ռեսպուբլիկայի պլանային և գյուղատնտեսական օրգանները առանց հաշվի առնելու կլիմայական պայմաններն ու տնտեսական զարգացման հնարավորությունները, ամեն տարի մեր շրջանի համար իջեցնում են գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի կոնտրոլ թվեր։

Այդ նույնը տեղի է ունենում նաև շրջանի ներսում, երբ շրջսովետի գործկոմի պլանային հանձնաժողովը, շրջանի ղեկավար օրգանների հետ միասին, հիմք ընդունելով կենտրոնից իջեցված պլանային թվերը, մեխանիկորեն այն հավասարապես բաշխում է կոլտնտեսությունների վրա և հախուռն կերպով բոլորից պահանջում զարգացնել տավարաբուծությունը, ոչխարաբուծությունը, խոզաբուծությունը, թռչնաբուծությունը և տնտեսության մյուս բոլոր ճյուղերը, անկախ այն բանից, թե դրանց զարգացման համար տեղերում նպաստավոր պայմաններ կա՞ն թե ոչ։

Գտնում եմ, որ պլանավորման այդ պրակտիկան արատավոր է և սխալ։ Անհրաժեշտ է, որ շրջանին մտածված, գիտականորեն հիմնավորված, զարգացման ռեզերվները հաշվարկված պլաններ իջեցնելուց հետո, տեղական օրգաններին հնարավորություն տալ շրջանի ներսում կատարելու չերտավորված պլանավորում։

Գյուղատնտեսության ճիշտ մասնագիտացումն ու պլանավորումը հնարավորություն կընձեռեն ինտենսիվացնելու արտադրությունը, արագ թափով զարգացնելու արտադրողական ուժերը։ Այսպիսով կստեղծվի գյուղատնտեսական մթերքների առատություն և կփոխվի մեր գյուղի պատկերը, ավելի բարեկեցիկ ու կուլտուրական կդառնա գյուղի աշխատավորների կյանքը։

Ք. ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀԿՊ Գորիսի շրջկոմի քարտուղար

## ՀՈՒԶՈՂ ՀԱՐՑԵՐ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրում ամենայն հստակությամբ և կոնկրետությամբ ցույց են տրված ոչ միայն դեպի կոմունիզմ տանող մայրուղիները, այլև սահմանված են այդ առաջընթացի տեմպերը և ժամանակները։

Երկու տասնամյակի ընթացքում ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ, որի նյութատեխնիկական բազան ստեղծվելու է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համատարած էլեկտրիֆիկացման, արտադրության կոմպլեքսային ավտոմատացման և մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։ ՍՄԿՊ նոր Ծրագիրը հռչակում է, որ պարտիան այսուհետև ևս կվարի սովետական ռեսպուբլիկաների տնտեսության համակողմանի զարգացման գիծ։

Սովետական Հայաստանի արդյունաբերությունը անցած ժամանակաշրջանում ձեռք է բերել զարգացման այնպիսի մակարդակ, որը հնարավորություն



է տալիս առաջիկա քսան տարում էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացնել 13,7, արդյունաբերության արտադրանքի ծավալը՝ 13 անգամ։ Արդյունաբերության զարգացման այդպիսի թափն ու ծավալը պատկերացնելու համար բավական է ասել, որ նրա մեկ տոկոսի աճը 1980 թվականին հավասար կլինի մի քանի տասնյակ միլիոն ռուբլու։ Առավել բարձր տեմպերով կաճի արտադրության միջոցների արտադրությունը։ Ռեսպուբլիկայում 1980 թվականին կարտադրվի 54 հազար մետաղահատ հաստոց։ Ավտոմատացման սարքերի և միջոցների արտադրությունը կավելանա 85 անգամ։ Կթողարկվեն տասնյակ և հարյուրավոր նոր տեսակի արտադրանքներ, այդ թվում՝ ավտոամբարձիչներ, մարդատար ավտոմեքենաներ, մաթեմատիկական հաշվիչ մեքենաներ, ռադիոտեխնիկական ապարատներ։ Կստեղծվեն արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ ծանր մեքենաշինությունը, ռադիոտեխնիկան, գյուղատնտեսական մեքենաշինությունը, սանիտարատեխնիկական սարքաշինությունը։ Արդյունաբերության նոր ճյուղերի զարգացումը կզուգորդվի բնական նոր հարստությունների լայն օգտագործմամբ։

Քսանամյակի ընթացքում բուռն թափով կաճի նաև ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրությունը։

Ժողովրդական տնտեսության զարգացման պատմական այդ թռիչքը տեղի կունենա գիտության և պրակտիկայի սերտ կապի պայմաններում։

ՍՄԿՊ Ծրագիրը տնտեսագետների ուշադրությունը հրավիրում է ժողովրդական տնտեսության մեջ նյութական ու աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման ուղիներ, արտադրության պլանավորման և կազմակերպման գործում առավել լավ մեթոդներ գտնելու, արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման սկզբունքները և կոմունիզմի կառուցման տեխնիկա-տնտեսական պրոբլեմները մշակելու վրա։ Տնտեսագիտության խնդիրն է՝ ընդհանրացնել հասարակության տնտեսական կյանքի նոր երևույթները, մշակել ժողովրդական տնտեսության պրոբլեմները, որոնց լուծումը նպաստում է կոմունիզմի հաջող կառուցմանը։

Այդ պահանջների իրագործման համար անհրաժեշտ է վերանայել տնտեսական հետազոտությունների դրվածքը, որպեսզի գիտության հետևությունները ժամանակին կիրառվեն արտադրության մեջ։ Մեր տնտեսագետները տարբեր պրոբլեմների ու թեմաների մասին գրում են գրքեր, բրոշյուրներ, մեծածավալ հոդվածներ, որոնք, անշուշտ, անհրաժեշտ են։ Բայց դրանց կողքին հաճախ լրջորեն չեն ուսումնասիրվում տասնյակ տարիների ընթացքում կուտակված փորձը, տնտեսական կյանքի նոր երևույթները, չեն բացահայտվում որոշ ձեռնարկությունների կողմից տեխնիկա-տնտեսական ցուցանիշների թերակատարման պատճառները։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում աշխատանքի արտադրողականության պլանը չեն կատարել 80, ինքնարժեքի իջեցման պլանը՝ 75 ձեռնարկություն։ Այդ ձեռնարկությունները 6421 հազար ռուբլով բարձրացրել են ինքնարժեքը։ Այս անհանդուրժելի երևույթը մեր տնտեսագետները խոր վերլուծության չեն ենթարկել։

Վերլուծության չեն ենթարկվում շատ ձեռնարկությունների՝ տեխնիկա-տնտեսական ցուցանիշների գծով ետ մնալու պատճառները։ Ինչպես հարկն է չեն հետազոտվում տնտեսության մեջ տեղ գտած անհամաչափությունները. արտադրության և աշխատանքի կազմակերպման հարցերը հաճախ հանգեցվում են միայն արտադրանքի նորմաների փոփոխման, չկապելով դրանք աշխատանքի

*արտադրողականության բարձրացման հետ։ Օրինակ, Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատը չկատարեց աշխատանքի արտադրողականության 1961 թվականի կիսամյա պլանը, 1169 ռուբլով բարձրացավ ինքնարժեքը. տրվեց 641 հազար ռուբլու անարտադրողական ծախս, 223 հազար ռուբլի աշխատավարձի ֆոնդի գերածախս։ Չնայած «Հաստոցանորմալ» գործարանում կրկնապատկվեց կարգավորող բանվորների թիվը, բայց ավելացավ խափանում տվող հաստոցների քանակը, և գործարանն սկսեց թերակատարել արտադրության պլանը։ Պարզվեց, որ այստեղ կարգավորողների վարձատրությունը չի կապվում հաստոցների անխափան աշխատանքի հետ։*

*Ժողտնտխորհի սիստեմում կան բազմաթիվ օրինակներ, երբ ձեռնարկությունը կատարում է համախառն արտադրանքի պլանը, բայց չի կատարում արտադրանքի ասորտիմենտի, աշխատանքի արտադրողականության և ինքնարժեքի իջեցման պլանները։ Դրա պատճառը, անկասկած, նաև պլանվորման փորձում թույլ տրվող սխալներն են։ Փաստորեն հաճախ գիտականորեն չեն հիմնավորվում պլանները, հաշվի չեն առնվում դրանց կատարման նյութական ու տեխնիկական ռեալ հնարավորությունները, անտեսվում են աշխատանքային և նյութական ռեսուրսների ճիշտ հաշվառումն ու նորմավորումը։ Այդպիսի դրության հետևանքով առանձին ձեռնարկություններում պլանները հաճախ ռեալ չեն լինում, և սկսվում են անվերջ խոսակցություններ՝ դրանք վերանայելու մասին։ Այս տարվա ընթացքում բազմիցս վերանայվել և «ճշտվել» են պլանները։ Այդ ամենին հետևում է թույլ կարգապահությունը։*

*Պլաններ մշակելիս պետք է գիտականորեն հետազոտել արտադրության ռեզերվները, երևան բերել և օգտագործել դրանք։ Բայց միշտ չէ, որ այդպես է լինում։ Կան մի շարք կարևոր ռեզերվներ, որոնց օգտագործմանը լուրջ ուշադրություն չի նվիրվում։ Այսպես, ձեռնարկություններում ժամանակի խնայողության հարցը գրեթե չի ուսումնասիրվում, թեև բանվորական ժամանակի կորուստ կա բոլոր ձեռնարկություններում։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում այդ կորուստները ժողտնտխորհի սիստեմում կազմել են մոտ 10 տոկոս։ Բանվորների համօրյա պարապուրդները այդ նույն ժամանակամիջոցում հասնում են 44 հազար մարդօրվա։ «Պոբեդա» կահույքի ֆաբրիկայում սարքավորումների վրա զբաղված բանվորների աշխատաժամանակի կորուստը կազմել է 24 տոկոս, իսկ Երևանի պահածոների գործարանում միայն օգոստոսի 4—29-ը՝ 26—41 տոկոս։*

*Բանվորական ժամանակի կորուստը գլխավորապես տեղի է ունենում բանվորական տեղամասի վատ նախապատրաստման, աշխատանքի առարկաների ու նյութերի անբավարար մատակարարման և հերթափոխության ոչ ճիշտ կազմակերպման հետևանքով։ Հերթափոխության ժամանակի կորուստը, դժբախտաբար, չի արտահայտվում վիճակագրական հաշվետվություններում. գրանցվում են միայն այն պարապուրդները, որոնց համար վարձատրվում են։ Մինչդեռ, իբրև կանոն, վարձատրության համար հաշվի առնվող ժամանակի կորուստները ընդհանուր կորուստներից մի քանի անգամ ցածր են։*

*Խնայել աշխատաժամանակը՝ դա նշանակում է նաև ռացիոնալ օգտագործել սարքավորումները, մեխանիզմները, որը, դժբախտաբար, բարվոք համարել չի կարելի։ Բավական է ասել, որ շինարարական մեխանիզմների օգտագործումը չի անցնում 74, լեռնահանքային սարքավորումների օգտագործումը՝ 87, գործվածքային հաստոցներինը (թեթև արդյունաբերության ձեռնարկություններում)՝ 87 տոկոսից։ Կան քսան միլիոն ռուբլու արժողության սարքավորումներ, որոնք երկար ժամանակ արտադրական գործածության մեջ չեն դրվում, արտադրանք չեն տալիս՝ արտադրական տարածությունների կառուցումը և մոնտաժումը սահմանված ժամկետներին չավարտելու հետևանքով։ Շինարարության և արտադրության պլանների մշակման ու կազմման միջև անհրաժեշտ կապակցություն չկա։ Հաճախ առանձին ձեռնարկություններում և բաժանմունքներում արտադրանքի տեսակները պլանավորում են՝ հաշվի չառնելով, որ տվյալ արտադրական օբյեկտի կառուցումը դեռևս չի ավարտվել։ Այսպես, օրինակ, համաձայն սահմանված պլանի Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի ազբոխողովակների ցեխը արտադրանք պետք է տար 1960 թվականի չորրորդ եռամսյակում։ Բայց այն շահագործման հանձնվեց միայն 1961 թվականի երկրորդ եռամսյակում։ Ջաջուռի կրի գործարանի շինարարությունը պետք է ավարտվեր 1960 թվականին, որպեսզի 1961 թվականի երկրորդ եռամսյակում, եղած պլանի համաձայն, 10000 տոննա կիր արտադրեր։ Բայց գործարանն ինչպե՞ս կարող է արտադրանք տալ, երբ Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրությունը դեռևս չի ավարտել նրա կառուցումը։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում անընդհատ նորացվում են սարքավորումները, կատարելագործվում տեխնոլոգիան, ավտոմատացվում և մեքենայացվում արտադրության պրոցեսները։ Բայց այդ հարցերը հազվադեպ են մշակվում արտադրության և աշխատանքի կազմակերպման մյուս հարցերի հետ սերտ կապակցված։ Հայտնի է, որ տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ իրականացվող միջոցառումներն առավել արդյունավետ են լինում այն ժամանակ, երբ տեխնիկա-տնտեսական պրոբլեմները լուծվում են կոմպլեքսային ձևով։ Դժբախտաբար այդ պրոբլեմները ժողտնտխորհի պլանային վարչությունում, ճյուղային վարչությունների պլանային բաժիններում ու ձեռնարկությունների համապատասխան բաժիններում անբավարար են ուսումնասիրվում։ Այդ կազմակերպությունները զբաղվում են միայն ընթացիկ պլանների մշակմամբ և ամեն տեսակ ամփոփագրեր կազմելով։ Մինչդեռ տասնյակ տարիների ընթացքում ձեռնարկություններում կուտակված հարուստ փորձը մնում է առանց գիտական հետազոտության և ընդհանրացման։*

*Անհրաժեշտ է լայնացնել պլանավորող կազմակերպությունների, այդ թվում՝ ժողտնտխորհի և ձեռնարկությունների պլանային բաժինների ու վարչությունների ֆունկցիաներն այն հաշվով, որպեսզի նրանք տնտեսագիտական խոր վերլուծության ենթարկեն արտադրական ձեռնարկությունների ողջ գործունեությունը։ Այդ մեծապես կնպաստի պլանավորման, արտադրության կազմակերպման ու կառավարման գործի բարելավմանը։*

*Մոսկվայի, Ուրալի և տնտեսական այլ շրջանների առաջավոր շատ ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ խոշոր կոնստրուկտորական բյուրոներում, տեխնոլոգիական բաժիններում անհրաժեշտ է կազմակերպել տնտեսագիտական բյուրոներ։ Այդ փորձը չի բացառում, որ իրենք՝ տեխնոլոգները և կոնստրուկտորները, ունենալով անհրաժեշտ տնտեսագիտական գիտելիքներ, կարող են լուծել նախագծային տնտեսական հաշվարկները։ Երկրի մի շարք շրջաններում ժողտնտխորհներին կից ստեղծված տնտեսագիտական ինստիտուտները և լաբորատորիաները հսկայական օգնություն են ցույց տալիս տնտեսական ու պլանային կազմակերպություններին՝ բարելավելու պլանավորումը, արտադրության կազմակերպումը, բարձրացնելու արտադրության տեխնիկա-*

տնտեսական ցուցանիշները և ռացիոնալ օգտագործելու բոլոր ռեզերվները։
Անհրաժեշտ է այդպիսի ինստիտուտ ստեղծել նաև մեզ մոտ՝ Հայկական
ՍՍՌ Ժողովրդական տնտեսության խորհրդին կից, այնտեղ միավորելով ռես-
պուբլիկայի լավագույն տնտեսագետներին ու լավագույն կազմակերպիչներին։
Ինստիտուտի աշխատանքը ավելի արդյունավետ դարձնելու և արտադրությանը
մոտեցնելու նպատակով հարկ կլինի խոշոր ձեռնարկություններում ստեղծել
հասարակական հիմունքներով գործող տնտեսագիտական բյուրոներ՝ տալով
դրանց անհրաժեշտ ուղղություն՝ ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական
պրոբլեմները փոխադարձ նպատակահարմարությամբ լուծելու, աշխատանքի
արտադրողականությունն ու շահութաբերությունը բարձրացնելու, տնտհաշվար-
կի կատարելագործման, կոոպերացված կապերի էֆեկտիվությունը բարձրաց-
նելու համար։

Լավ կլինի ձեռնարկություններում ստեղծել նաև հասարակական հիմունք-
ներով գործող ռևիզորական խմբեր՝ նրանցում ընդգրկելով որակյալ հաշվային
աշխատողներին, արտադրության առաջավորներին, հասարակական կազմակեր-
պությունների ներկայացուցիչներին։ Խոշոր ձեռնարկություններին կից ռևիզո-
րական ինստիտուտի ստեղծումը անհրաժեշտ է ոչ միայն այն պատճառով, որ
լայն հասարակայնությունը կմասնակցի արդյունաբերության կառավարմանը,
այլև ռևիզորական աշխատանքի ներկա վիճակը բարելավելու համար։ Բանը
նրանումն է, որ Ժողտնտխորհի ունեցած 480 ձեռնարկություններից, կառույցնե-
րից և կազմակերպություններից մաքսիմում միայն 50 տոկոսն է տարեկան ռևի-
զիայի ենթարկվում։ Ժողտնտխորհի ապարատի 23 ռևիզորները ոչ միայն չեն
կարողանում ընդգրկել բոլոր կազմակերպությունները, այլև քիչ են կատարում
կոմպլեքսային ստուգումներ և նրանք հազիվ կարողանում են թեմատիկ ստու-
գումներ կատարել այս կամ այն ահազանգի հիման վրա։

Օգտվելով սիստեմատիկ վերահսկողության բացակայությունից, առանձին
արտադրական ձեռնարկություններում տեղի են ունենում խոշոր գումարի հաս-
նող չարաշահումներ ու վատնումներ, որոնց կողքով լռությամբ չի կարելի անց-
նել։ Հոկտեմբերյանի պահածոների գործարանում մոտ երեք տարի ինվենտա-
րիզացիա չի կատարվել և պատշաճ հսկողություն չի սահմանվել պետական
ունեցվածքի պահպանության վրա։ Ստեղծված տնավարության հետևանքով
որոշ մարդիկ թույլ են տվել չարաշահումներ և պետությանը հասցրել միլիոնա-
վոր ռուբլու վնաս։ Այդպիսի փաստեր գոյություն ունեն Երևանի պահածոների
գործարանում, հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում, սպիտակ շաքարի
ու Երևանի տրանսպորտային ամբարձիչ սարքավորումների գործարաններում և
այլն։ Որպեսզի նման երևույթներ այլևս տեղի չունենան և պատշաճ կարգ ու
կանոն հաստատվի ամեն մի ձեռնարկությունում, անհրաժեշտ է հասարակու-
թյանը լայնորեն ընդգրկել արդյունաբերության կառավարման գործում։ Կամա-
վոր հիմունքներով հասարակական ներգործության միջոցները կդառնան ավելի
արդյունավետ, եթե դրանք լայն պաշտպանություն գտնեն պարտիական ու սո-
վետական կազմակերպությունների կողմից։

Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Ժողտնտխորհի պարտիական կոմիտեի քարտուղար



## ԱՄՐԱՊՆԴԵԼ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՅԱՆՔԻ ԿԱՊԸ

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական գիտահետազոտական հիմնարկները
վերջին տարիներին որոշակի աշխատանք են կատարել գյուղատնտեսական կուլ-
տուրաների բերքատու նոր սորտեր և անասունների բարձր մթերատու ցեղատե-
սակներ ստանալու ուղղությամբ։

Այգեպտղագինեգործական ինստիտուտի խաղողի սելեկցիայի բաժնի աշ-
խատողները՝ գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Ս. Պողոսյանի ղեկա-
վարությամբ, ստացել են խաղողի 31 արժեքավոր նոր սորտ։ Միայն 1960 թվա-
կանին ինստիտուտը խաղողի ու պտուղների նոր սորտերի 80 հազար տնկիներ
է տվել ռեսպուբլիկայի սովխոզներին ու կոլտնտեսություններին։ Գինու և կոն-
յակի տեխնոլոգիայի բաժինը (բաժնի վարիչ Լ. Ջանփոլադյան) մշակել է կոն-
յակի սպիրտի արագ հնացման նոր տեխնոլոգիա, որը ներդրվել է արտադրու-
թյան մեջ. շուտով մասսայական արտադրության կհանձնվի մեխանիկայի
բաժնի վարիչ Մ. Զոհրաբյանի ստեղծած սպիրտի ուղղակի թորման ապարատը։
Ինստիտուտի բույսերի ֆիզիոլոգիայի բաժնի աշխատակիցները Մ. Համբար-
ձումյանի ղեկավարությամբ մշակել են պտղատու կուլտուրաները ցրտահարու-
թյունից պաշտպանելու քիմիական մեթոդ, որի կիրառումը դրական արդյունք է
տվել Հոկտեմբերյանի շրջանի այգիներում և Վրաստանի մերձարևադարձային
կուլտուրաների պլանտացիաներում։

Անասնաբուծական և անասնաբուժական ինստիտուտի գիտական աշխա-
տողները որոշակի մասնակցություն ունեցան տավարի կովկասյան գորշ ցեղի
ստացման գործում։ Ակադեմիկոս Ս. Կարապետյանի ղեկավարությամբ ստաց-
վել է հավերի նոր՝ երևանյան ցեղախումբը, որի մթերատվությունը տեղական
հավերի համեմատությամբ, երկու անգամ բարձր է։ Ակադեմիկոս Մ. Տեր-Կա-
րապետյանը մշակել է եգիպտացորենի կոնսերվացման մեթոդ. սուլֆիդային
պրեպարատների միջոցով կոնսերվացված եգիպտացորենը թարմ վիճակում
պահպանվում է որպես անասունների բարձրորակ կեր։ Գյուղատնտեսական
գիտությունների դոկտոր Ա. Կոթողյանը բուծել է բարձր մթերատու մեղուների
նոր տեսակ, որը հատկապես պահվում է Մեղրիի շրջանում։ Ինստիտուտը մշա-
կել է նաև արոտների երկարատև օգտագործման նոր մեթոդ, կոլտնտեսություն-
ներին տվել է տեխնիկական բիոմիցին, հակադաբաղային վակցինա և այլն։

Հողագիտության և ագրոքիմիայի ինստիտուտի երիտասարդ կոլեկտիվը
որոշակի արդյունքի է հասել աղուտային հողերը քիմիական մելիորացիայի
միջոցով պիտանի դարձնելու բնագավառում, օգտագործելով Կիրովի անվան
գործարանի թթվուտային մնացորդները։ Գյուղատնտեսության էկոնոմիկայի

և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտի աշխատողներ Հ. Սմբատյանի և Ջ. Թորգոմյանի նախաձեռնությամբ Վեդիի շրջանի Կիրովի անվան սովխոզում ներդրվել է ներտնտեսային հաշվարկ, որի արմատավորմամբ սովխոզը ստացել է 200 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։ Գիտական մի շարք աշխատողներ (Ա. Այրումյան, Լ. Հարությունյան, Ռ. Դանիելյան և ուրիշներ) ակտիվ կերպով մասնակցեցին ռեսպուբլիկայում միջկոլտնտեսային կազմակերպությունների հիմնադրման գործին և այլն։

Գիտահետազոտական ինստիտուտների առանձին աշխատողներ մշակել են ագրոտեխնիկական, զոոտեխնիկական և կազմակերպչական մի շարք միջոցառումներ, որոնք օգնել են կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ հաջողությամբ կատարելու իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Այսպես, Ա. Մելքոնյանը (Այգեպտղագինեգործական ինստիտուտից) անցյալ տարի լուրջ օգնություն ցույց տվեց Շիդլուի կոլտնտեսությանը (Վեդու շրջան)՝ ստանալու բամբակի, խաղողի բարձր բերք և կատարելու անասնաբուծական մթերքների արտադրության պլանը. միայն մեկ տարում տնտեսության եկամուտներն ավելացան հարյուր հազար ռուբլով։ Այդ նույն ինստիտուտի աշխատակից Հ. Սմբատյանը Աղամզալուի (Արտաշատի շրջան) կոլտնտեսականներին ոչ միայն համոզիչ կերպով ցույց տվեց կանաչ կոնվեյերի կիրառման առավելությունները, այլև օգնեց նրանց՝ պրակտիկայում արմատավորելու այնդա հնարավորություն տվեց նկատելիորեն ավելացնելու կաթի ու մսի արտադրությունը։ Անասնաբուծական և անասնաբուժական ինստիտուտի կերի տեխնոլոգիայի բաժնի աշխատողներն օգնեցին Կաթնաղբյուրի (Սպիտակի շրջան) կոլտնտեսականներին շաքարի ճակնդեղի փրերից պատրաստվող սիլոսը սովորական խրամատներում պահպանել երկար ժամանակ։

Գիտական աշխատողը պետք է մոտ կանգնած լինի արտադրությանը, մշտապես շփվի արտադրողների հետ, որպեսզի նրանք գործնականում համոզվեն նրա հետազոտությունների, առաջարկությունների շահավետության մեջ։ Գիտաշխատող Ա. Մկրտչյանը (Գյուղէկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտից) բազմակողմանիորեն ուսումնասիրելով Սպիտակի շրջանի Հարթագյուղի կոլտնտեսության էկոնոմիկան, կատարելով մանրակրկիտ հաշվարկումներ, կոլտնտեսականներին խորհուրդ տվեց անցնելու աշխատանքի դրամական վարձատրության։ Նա ոչ միայն խորհուրդ տվեց, այլև կոլտնտեսականներին օգնեց վարձատրության առաջավոր ձևը ներդնել տնտեսության մեջ։ Հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր Հ. Պետրոսյանը Հոկտեմբերյանի շրջանի Արևիկ գյուղի կոլտնտեսությունում 10 հեկտարի վրա կատարեց աղուտների քիմիական մելիորացիա. ոգևորված ստացված արդյունքներով, կոլտնտեսականները ձեռնամուխ են եղել աղուտ հողերի յուրացմանը։

Վերջին տարիներին գյուղատնտեսական գիտահետազոտական ինստիտուտներին տրամադրվել են փորձնական նոր հողամասեր, բազմաներ, հենակետեր, հարստացել են նրանց լաբորատորիաները. հետազոտական աշխատանքի լավագույն բազա են հանդիսանում նոր կազմակերպված փորձացուցադրական տնտեսությունները։ Էքսպերիմենտալ ամուր բազա ունենալու և գիտական աշխատանքը գյուղատնտեսական արտադրության պրակտիկայի հետ ավելի լավ շաղկապելու նպատակով Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտը փոխադրվում է Հրազդանի շրջանի Ալափարսի սովխոզը։ Ինչ խոսք, որ այդ ամենը նպաստավոր պայմաններ են ստեղծել հետազոտական



աշխատանքները ծավալելու և այն բարձր մակարդակի վրա դնելու համար։

Սակայն գիտահետազոտական ինստիտուտների գործունեության մեջ կան մի շարք էական թերություններ։ ՀԿՊ XXII համագումարը իրավացիորեն նշեց, որ ռեսպուբլիկայում գյուղատնտեսական գիտությունը դեռևս ետ է մնում հողագործության և անասնաբուծության հետագա զարգացման պահանջներից և տվյալ բնագավառի շատ գիտնականներ աշխատում են արտադրությունից կտրված, թույլ են օգնում կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ արտադրության մեջ արմատավորելու գիտության նվաճումները։

Որո՞նք են ետ մնալու հիմնական պատճառները։ Նախ՝ միշտ չէ, որ հաջող է պլանավորվում գիտահետազոտական աշխատանքների թեմատիկան. գիտական առանձին հիմնարկներում (Այգեպտղագինեգործական, Անասնաբուծական և անասնաբուժական ինստիտուտներ, Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտի կոլտնտեսությունների բաժին) գոյություն ունի հետազոտությունների բազմաթեմայնություն, որը խանգարում է հանգուցային պրոբլեմների մշակմանը, ցրում ու ջլատում գիտական աշխատողների ուժերը։ Երբեմն էլ թեմատիկ պլաններում մտցվում են այնպիսի հարցեր, որոնք ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համար չունեն քիչ թե շատ գործնական նշանակություն։

Կան թեմաներ ու պրոբլեմներ, որոնց լուծումը պահանջում է կոմպլեքսային ուսումնասիրություն։ Այսպես, օրինակ, մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման համար շատ կարևոր նշանակություն ունի ղռերի, աղակալած հողերի յուրացման խնդիրը, որի ճիշտ ու արագ լուծման համար հարկավոր է կատարել կոմպլեքսային հետազոտություններ, միավորել գյուղատնտեսական գիտահետազոտական բոլոր ինստիտուտների կոլեկտիվների ստեղծագործական ջանքերը։ Այնինչ գիտական հիմնարկների միջև չկա աշխատանքի կոորդինացում (խոսքը ուսումնասիրությունների կոորդինացման մասին է). աղակալած հողերի յուրացման հարցով զբաղվում են տարբեր ինստիտուտներ, բազմաթիվ գիտական աշխատողներ՝ իրարից անկախ կատարելով զանազան ուսումնասիրություններ, լաբորատոր անալիզներ և այլն։ Դրանով իսկ թույլ է տրվում ոչ միայն աշխատանքի և ուժերի անհարկի վատնում, այլև խիստ ձգձգվում է ժողովրդատնտեսական այդ կարևոր խնդրի լուծումը։

Նկատվում է նաև հետազոտությունների ժամկետների ձգձգվածություն. ժամանակի գործոնը որոշ դեպքում ճիշտ չի հաշվի առնվում։ Օրինակ, Այգեպտղագինեգործական ինստիտուտի թեմատիկ պլանով նախատեսվում է ղռերի յուրացման գծով արտադրությանը առաջարկություններ ներկայացնել յոթնամյակի վերջին՝ 1965 թվականին, այսինքն այն ժամանակ, երբ այդ հողատարածությունների զգալի մասն արդեն պետք է վերածվի այգիների։ Չհիմնավորված երկար ժամկետ է սահմանվել այդ նույն ինստիտուտի ավագ գիտաշխատող Ռ. Երգեսյանի «Խաղողի տարբեր սորտերի տնկման խտության և վազի բեռնվածության ուսումնասիրությունն Արարատյան հարթավայրի պայմաններում» թեմայի համար։ Նախկին պլանում նախատեսված էր հետազոտություններն սկսել 1954 թվականին, ավարտել 1965 թվականին, իսկ վերջին պլանում արհեստական կերպով թեմայի սկիզբը նշվել է 1958 թվականը։

Տարիներ շարունակ ձգձգվում և չի ավարտվում Անասնաբուծական-անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտի բաժնի վարիչ Ս. Մամիկոնյանի թեմայի ուսումնասիրությունը, անընդհատ երկարացվում են նրա կա-

տարման ժամկետները։ Չնայած տրված մեծ ժամկետին, նույն ինստիտուտում «Արոտավայրերի ռացիոնալ օգտագործումը» թեմայի ուսումնասիրությունը խիստ ձգձգվում է։

Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտի աշխատողներ Է. Գերասիմյանը և Հր. Դալլաքյանը երկու տարի շարունակ զբաղված էին «Գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները Իջևանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունում» թեմայի ուսումնասիրությամբ, սակայն նրանց մշակած միջոցառումները չընդունվեցին գիտական խորհրդի կողմից, ուսումնասիրությունը մնաց ապարդյուն։ Ասպարդյուն անցավ նաև նույն ինստիտուտի աշխատակից Ն. Հակոբյանի շուրջ երկու տարվա ուսումնասիրությունը։

Արտադրության մեջ մեծ ուշացումներով են ներդրվում ավարտված հետազոտությունները։ Անցյալ տարի Գյուղատնտեսության մինիստրությունն ընդունել է Այգեպտղագինեգործական և Անասնաբուծական-անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտների կողմից ներկայացված 34 առաջարկություն, սակայն մինչև օրս դրանց շատ աննշան մասն է ներդրվել արտադրության մեջ։ Այսպես, արտադրական կիրառում չեն գտել՝ այգիների բուժման կոմպլեքս մեթոդի, պտղատու այգիների խոր էտի, խաղողի այգիների բերքատվության բարձրացման, ծխախոտի ցողունները սիլոսի վերածելու վերաբերյալ եղած առաջարկությունները։

Միշտ չէ, որ գիտական աշխատողներն անհրաժեշտ հետևողականություն են հանդես բերում արտադրության մեջ իրենց իսկ ուսումնասիրությունների ու առաջարկությունների արագ արմատավորման գործում։ Օրինակ, Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի գիտաշխատող Գ. Զաքարյանը ներկայացրել է մի կարևոր առաջարկություն՝ ծղնոտը շլամով մշակելու միջոցով անասունների համար մարսելի դարձնելու մասին, բայց չի հետևել դրա արմատավորմանը։ Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտի մի շարք աշխատակիցներ մի ժամանակ ակտիվ մասնակցեցին դրամական ամենամսյա վարձատրության սիստեմը կոլտնտեսություններում արմատավորելու գործին. նրանց խորհրդով ու հանձնարարականներով ռեսպուբլիկայի մոտ 25 կոլտնտեսություններ անցան վարձատրության այդ պրոգրեսիվ ձևին։ Սակայն հետագայում գիտաշխատողների ուշադրության թուլացման և նրանց կողմից կոլտնտեսությունների դրամական ռեզերվների ոչ ճիշտ հաշվառման պատճառով այդ տնտեսությունների մի մասը (Ալավերդու շրջանի Ղաչաղան, Շնող, Հրազդանի շրջանի Ֆանտան գյուղերի կոլտնտեսություններ) վերադարձավ բնամթերային վարձատրության սիստեմին։

Գիտահետազոտական հիմնարկների բազաներն ու հենակետերն աշխատանքի կազմակերպման դրվածքով և արտադրողականությամբ պետք է լինեն ցուցադրական, դառնան օրինակելի ձեռնարկություններ։ Սակայն, օրինակ, Այգեպտղագինեգործական ինստիտուտի բազաներում խաղողի և պտուղների բերքատվությունն ավելի պակաս է, քան, ասենք, հարևան սովխոզներում և կոլտնտեսություններում։ Երևանում գտնվող ինստիտուտի հողամասում՝ ագրոտեխնիկական միջոցառումների անբավարար կիրառման հետևանքով վերջին տարիներս բերքատվությունն աստիճանաբար պակասել է. խաղողի այգիները ծածկված են մոլախոտերով, թույլ է աշխատանքի մեքենայացումը։ Թերևս դրանով պետք է բացատրել, որ խաղողի համախառն բերքը 1959 թվականին



հեկտարից կազմեց 60 (ռեսպուբլիկայում այն կազմում էր 83,1 ց.), իսկ 1960 թվականին՝ միայն 35 ցենտներ։

Լավ չէ վիճակը նաև Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի բազաներում։ Օրինակ, Սևանի սովխոզի հոտում դեռևս քիչ է կովերի գլխաքանակը, շատ են անասունների անկումները։ Կոլտնտեսությունների և սովխոզների համար լավագույն փորձի օրինակ չի կարող ծառայել նաև Ջարբախի բազան. այստեղ հավերի և ճագարների պահպանման համար չեն ստեղծվել անհրաժեշտ պայմաններ, լավ չի կազմակերպված կովերի խնամքը, չի պահպանվում կերի ռացիոնը, աշխատատար պրոցեսները մեքենայացված չեն։

Խոպանի երկրամասի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում ընկ. Ն. Ս. Խրուշչովը գովեստով խոսեց Ալթայի գյուղատնտեսական գիտահետազոտական ինստիտուտի մասին, որը շատ աշխատանքներ կատարում է կոլտնտեսությունների և սովխոզների պատվերներով։ Այդ ուղղությամբ որոշ գործ կատարվում է նաև մեզ մոտ. գիտական հետազոտությունների որոշ մասը կատարվում է պայմանագրային կարգով։ Այգեպտղագինեգործական ինստիտուտն անցյալ տարի Ժողտնտխորհի Սննդարդյունաբերության վարչության, «Հայկոոպի» և Պետտեսչության պատվերներով կատարեց 82 հազար ռուբլու աշխատանք։ Անհրաժեշտ է ընդլայնել արտադրության համար պատվերներով կատարվող աշխատանքը, ինստիտուտները աստիճանաբար փոխադրել տնտհաշվարկի։ Գիտական հիմնարկները դեռևս շատ քիչ են զբաղվում գյուղատնտեսության առաջավորների, փարոսների փորձի ընդհանրացման ու տարածման հարցերով։ Բավական է ասել, որ վերջին մեկ տարում ինստիտուտների աշխատողների կողմից ոչ մի գրքույկ չի գրվել առաջավորների փորձի մասին։

Լուրջ թերություններ կան հետազոտական ինստիտուտների գիտական կադրերի ընտրության ու պատրաստման բնագավառում։ Ինստիտուտների ավագ գիտաշխատողների մեկ երրորդը չունի բարձր որակավորում և գիտական աստիճան. մանավորապես Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտում շատ տեղեր մնում են թափուր, կամ զբաղեցնում են մարդիկ, որոնք չունեն բարձր որակավորում։ Միշտ չէ, որ ինստիտուտներն ասպիրանտներ են ընդունում արտադրական աշխատանքի փորձ ունեցող և գիտահետազոտական աշխատանք կատարելու ունակ մարդկանց։

Գյուղատնտեսության արագ զարգացումը հրամայաբար պահանջում է բարձրացնել գիտահետազոտական աշխատանքների մակարդակը։ Գիտական հիմնարկները և փորձակայանները գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում պետք է դառնան կարևոր օղակներ, իսկ գիտնականներն ու մասնագետները՝ գյուղատնտեսական արտադրության անմիջական կազմակերպիչներ։

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԷՋԵՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ

## ՈՒՇԱԳՐԱՎ ՆԱՄԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**(Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի նամակագրությունը Վլադիսլավ Կասպարովի հետ)**

Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում Անդրկովկասի աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը, ինչպես նաև նրանց անձնվեր ղեկավարների գործունեությունը: Անձնապես բազմաթիվ թելերով կապված լինելով Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժումների ու ռևոլյուցիոն գործիչների հետ, Վ. Ի. Լենինը միաժամանակ պարտիական կարեվոր հանձնարարություններով հաճախակի Անդրկովկաս էր ուղարկում իր պինակիցներին: Նա մշտական նամակագրական կապ ուներ երկրամասի ռևոլյուցիոն գործիչների, բոլշևիկյան կազմակերպությունների ու կոմիտեների հետ: Միայն ռուսական առաջին ռևոլյուցիային նախորդած ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինը տասնութ տարբեր հասցեներով գրականություն և թերթեր էր ուղարկում Անդրկովկաս (տե՛ս *Г. Жвания,* В. И. Ленин и Кавказский союз РСДРП, Госиздат Груз. ССР, 1956, էջ 57): ՌՍԴԲՊ Կենտկոմի՝ 1912—1914 թվականների՝ վերջերս հրապարակված հասցեների գրքում (տե՛ս «Исторический архив» № 1, 1959) կա անդրկովկասյան վայրերի և Անդրկովկասի հետ կապեր ունեցող ռևոլյուցիոն գործիչների ավելի քան քսանհինգ հասցե: Վ. Ի. Լենինը այդ և հետագա տարիներին (մինչև 1917 թ. մարտի վերջերը) գտնվելով արտասահմանում, վտարանդիության մեջ, մեծ ջանքեր էր գործադրում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հետ կապերը պահպանելու, անդրկովկասյան ռևոլյուցիոն գործիչների հետ նամակագրական կապը չընդհատելու համար: Այդ գործում Վ. Ի. Լենինին օգնող պարտիական ականավոր գործիչներից մեկը Վլադիսլավ Կասպարովն էր: Նա նույնպես այդ ժամանակ քաղաքական վտարանդի էր, սկզբում ապրում էր Բեռլինում, իսկ հետո, երբ սկսվեց համաշխարհային պատերազմը, հաստատվեց Շվեյցարիայում (Բեռնում, Դավոսում), որտեղ տեղափոխվեցին նաև Վ. Ի. Լենինն ու Ն. Կ. Կրուպսկայան:

Վլադիսլավ (պարտիական շրջաններում հայտնի՝ Սլավա) Մինասի Կասպարովը (Կասպարյանց) ծնվել է 1884 թվականի հունվարի 30-ին (նոր տոմարով փետրվարի 11-ին) Լեռնային Ղարաբաղի Խանքենդ (այժմ՝ Ստեփանակերտ) քաղաքում: Ավարտել է Շուշու քաղաքային ուսումնարանը, ապա՝ Գանձակի արհեստագործական ուսումնարանը և աշխատանքի անցել Շուշու գավառային վարչությունում որպես գրագիր: Շուշիում նա ծանոթանում է մարքսիստական գրականությանը, կապվում տեղի ռևոլյուցիոներների հետ: 1906 թվականին, տեղափոխվելով Բաքու, նա ծավալում է եռանդուն պարտիական գործունեություն և աչքի ընկնում որպես նավթաշխարհի պրոլետարիատի ականավոր կազմակերպիչներից մեկը: Նա մտերմանում է Ստ. Շահումյանի, Ալ. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Ի. Ֆիոլետովի, Ս. Սպանդարյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի, Ս. Ալիլուևի, Ս. Օրջոնիկիձեի և երկրամասի բոլշևիկյան մյուս ականավոր գործիչների հետ: Այնուհետև նա մեկնում է Պետերբուրգ, ընդունվում մայրաքաղաքի համալսարանը: Այնտեղ նա մասնակցում է քաղաքի բոլշևիկյան կազմակերպության աշխատանքներին և ընտրվում ՌՍԴԲՊ Պետերբուրգի կոմիտեի կազմում:

Ինչպես Բաքվում, այնպես էլ Պետերբուրգում ցարական ժանդարմերիան քայլ առ քայլ հետեվում է Վ. Կասպարովի գործունեությանը, քանիցս ձերբակալում նրան: Վ. Կասպարովը ստիպված է լինում Պետերբուրգից վերադառնալ Բաքու, շարունակելով ամենառևոլյուցիոն եռանդուն աշխատանքը պրոլետարիատի շրջանում:

1912 թվականին Վ. Կասպարովը վարչական կարգով արտաքսվում է Դոնի Ռոստով: Այնտեղ նա կապեր է հաստատում տեղի և Ուկրաինայի մի շարք քաղաքների (մասնավորապես Պոլտավայի) բոլշևիկների հետ: Կարճ ժամանակում նա դառնում է Դոնի Ռոստովի բոլշևիկների ղեկավար գործիչներից մեկը: Դոնի պահնորդական



բաժանմունքի պետը վերադասին ներկայացրած զեկուցագրերում Վ. Կասպարովին բնութագրում էր որպես «Սոցիալ-դեմոկրատ բոլշևիկների տեղական խմբի կազմակերպիչ», նշելով, որ «Սլավան» եռանդուն կազմակերպչի ղեկավար դեր է կատարում առափնյա բանվորների և երկաթուղային արհեստանոցների բոլշևիկյան բջիջների շրջանում»: Դոնի Ռոստովում աշխատելու ժամանակ, ինչպես նշված է պահնորդական բաժնի փաստաթղթերում, «Նրան հսկում էր տասներկու ոստիկանական գործակալ՝ օրական երկուական հոգի, իսկ երբեմն նաև՝ չորսական» (Տե՛ս Դոնի Ռոստովի ԿՊՊԱ, ֆ. 826, ց. 1, գ.գ. 281, 147, 165) *:

Ցարական իշխանությունների երկարատև հալածանքներից ու մի քանի անգամ ձերբակալվելուց հետո 1913 թվականին Վ. Կասպարովը որպես քաղաքական վտարանդի մեկնում է Գերմանիա և ընդունվում Բեռլինի համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը: Ուսանող Վ. Կասպարովը կապ է հաստատում արտասահմանի բոլշևիկյան խմբերի հետ: Ն. Կ. Կրուպսկայան իր հուշերի գրքում Վ. Կասպարովի մասին գրում է. «Պատերազմից առաջ, 1913 թվականին, Կասպարովը ապրում էր Բեռլինում: Նրա մասին Իլյիչը գիտեր մեր բաքվեցիներից՝ Ենուկիձեից, Շահումյանից և ուրիշներից: Այդ ժամանակաշրջանում Իլյիչի ուշադրությունը առանձնապես գամված էր ազգային հարցին, և նա ձգտում էր ավելի սերտորեն կապվել նրանց հետ, ովքեր հետաքրքրվում էին այդ հարցով և ճիշտ մոտեցում էին հանդես բերում դրա նկատմամբ» (տե՛ս Н. К. Крупская «Воспоминания о Ленине», М., 1957, էջ 240): Այնուհետև Ն. Կ. Կրուպսկայան նշում է, որ 1913 թվականի ամառը Վ. Կասպարովը ազգային հարցի վերաբերյալ մի հոդված է գրում «Պրոսվեշչենիե» ժուռնալին, որի կապակցությամբ Վ. Ի. Լենինը անում է իր դիտողությունները: Դրանից հետո, ինչպես գրում է Ն. Կ. Կրուպսկայան, «...Իլյիչը միանգամից Կասպարովի վրա բարդում է մի շարք գործեր ազգային հարցի վերաբերյալ նյութի հավաքման աշխատանքի գծով, արդեն կոնկրետացնելով այն, թե ինչ է հետաքրքրում իրեն, համոզված, որ Կասպարովը կնկատի ամենակարևորը, ամենաէականը: 1914 թվականի հունվարին, պատրաստվելով կարճ ժամանակով Բեռլին մեկնելու, Իլյիչը Կասպարովին գրում է տեսակցելու անհրաժեշտության մասին, նշելով, թե ինչպես կարելի է այդ անել» (նույն տեղում, էջ 240—241): Վ. Ի. Լենինի և Վ. Կասպարովի հարաբերությունները գնալով դառնում են ավելի ջերմ ու մտերմական: «Սուր պայքարի և վերելքի մոմենտները,— գրում է Ն. Կ. Կրուպսկայան,— մոտեցնում են մարդկանց: 1914 թ. հուլիսին բանվորական շարժումը Պիտերում սկսեց արագորեն կարգանալ, նամակ ստացվեց բարձրացող ռևոլյուցիոն ալիքի մասին: Մինչ այդ Իլյիչը Կասպարովին գրելիս սկսում էր «Թանկագին ընկեր» բառերով, իսկ այժմ արդեն այլ կերպ է գրում, իմանալով, որ Կասպարովը ռևոլյուցիոն վերելքը նույնպիսի հուզմունքով է վերապրում, ինչպես և մենք: «Թանկագին բարեկամ,— գրում է Իլյիչը:— Շատ եմ խնդրում Ձեզ նեղություն կրել Ռուսաստանում ռևոլյուցիոն օրերի ընթացքում ինֆորմացիա տալ մեզ: Նստած ենք առանց թերթերի: Խնդրում եմ Ձեզ...»: Եվ ապա տրվում է հարաբերություններ պահպանելու մի ամբողջ ծրագիր» (նույն տեղում, էջ 241): Ապա Ն. Կ. Կրուպսկայան հիշում է, թե ինչպես Վ. Կասպարովը դարձավ բոլշևիկների Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի (КЗО) անդամ: «Երբ բռնկվեց պատերազմը,— գրում է նա,— Կասպարովը ստիպված եղավ Գերմանիայից փոխադրվել Բեռն: Հանդիպեցինք ինչպես բարեկամներ: Բեռնում տեսնվում էինք ամեն օր, և շուտով Կասպարովը դարձավ ամենամոտ ընկերներից մեկը մեր խմբում: Եվ ահա նրան մտցրինք Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի մեջ» (նույն տեղում, էջ 241):

Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեն պատերազմից առաջ գտնվում էր Փարիզում, իսկ այնուհետև հաստատվում է Շվեյցարիայի Բեռն քաղաքում, որտեղ և գտնվում էր պարտիայի Կենտրոնական Օրգանի խմբագրությունը: Վ. Կասպարովը այդ կոմիտեի կազմում ընտրվում է ՌՍԴԲՊ (բ) արտասահմանյան կազմակերպությունների Բեռնի կոնֆերանսում (1915 թվականի փետրվարի 27-ից—մարտի 4-ը): Կոնֆերանսին մասնակցում էին Վ. Ի. Լենինը, Ն. Կ. Կրուպսկայան, Ի. Արմանդը, Գ. Բելենկին, Գ. Շկլովսկին, Ս Ն. Ռավիչը, Ե. Բոշը, Վ. Կասպարովը և ուրիշներ: Նորընտիր կոմիտեի կազմում Վ. Կասպարովից բացի ընտրվում են նաև Ն. Կ. Կրուպսկայան, Ի. Արմանդը, Գ. Շկլովսկին և ուրիշներ (տե՛ս «Пролетарская революция», № 5 (40). М.—Л., 1925, «Бернская конференция 1915 г.» հոդվածը, էջ 134—193): Կոնֆերանսի աշխատանքները ղեկավարում էր Վ. Ի. Լենինը: Վ. Ի. Լենինի՝ «Պատերազմն ու պարտիայի խնդիրները» զեկուցման առթիվ ընդունվում է լենինյան բանաձև, նշելով իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու կոնկրետ խնդիրները:

Վ. Ի. Լենինը Վ. Կասպարովի հետ նամակագրական կապ ուներ դեռ Պորոնինից: 1913 թվականի ապրիլի 18-ի թվակիր* նամակում Ն. Կ.

* Դոնի Ռոստովին վերաբերող նյութերը մեր խնդրանքով ուղարկել է ռոստովցի հին բոլշևիկ, Վ. Կասպարովին անձամբ ճանաչող Մ. Պ. Բատուրգինը:

* Նշվում է նոր տոմարով:

Կրուպսկայան, ամենայն հավանականությամբ Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ, Բեռլին՝ Վ. Կասպարովին գրում էր. «Թանկագին ընկեր, վերջապես Ձեզնից տեղեկություններ ստացվեցին: Ուղարկեցեք, խնդրեմ, արագ կերպով Շահումյանի հասցեն, շատ է հարկավոր: Իսկ ո՞րն է Ավելի * հասցեն՝ հի՞նն է, թե փոխվել է: Մեզ այժմ հարկավոր է որքան կարելի է շատ իմանալ Կովկասի մասին և կարծես դիտմամբ ոչ ոք ոչինչ չի գրում, այնպես որ նվազագույն պատկերացում անգամ չունենք այն մասին, թե ինչ է այնտեղ կատարվում...:

Պատասխանեցեք արագ կերպով» (ՍՄԿՊ ԿԿ-ին կից ՄԼԻ-ի Կենտ. պարտ. արխիվ, այսուհետև կնշվի՝ ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 7, գ. 27028): Ինչպես երևում է նամակից, Վ. Ի. Լենինին խիստ հետաքրքրում են Կովկասում տեղի ունեցող իրադարձությունները. նրան անհրաժեշտ էր կապվել կովկասյան բոլշևիկների հետ՝ որքան կարելի է շուտ, արագ: Եվ Ն. Կ. Կրուպսկայան հինգ օր հետո նույն շտապեցնող տոնով մի նոր նամակ է գրում Բեռլին, Վ. Կասպարովին. «Թանկագին ընկեր. ինչո՞ւ ոչինչ չեք պատասխանում իմ նամակին: Ձե՞ք ստացել այն: Ես այնտեղ շատ խնդրում էի. 1) արագ կերպով տալ Շ-ի ** հասցեն, 2) հաստատել Ավելի հասցեն կամ տալ նրա նոր հասցեն: Եթե ձեզ մոտ էլի կան կովկասյան կապեր, ուղարկեցեք դրանք ևս հասցեատիրոջ բնութագրությամբ: Եթե Կովկասի մասին որևէ տեղեկություններ ունեք, հաղորդեցեք: Այդ ամենը շտապ կարգով: Ընկերական ողջույն՝ Ն. Կ. Կրուպսկայա» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 5, գ. 27027):

Հայտնի է Ստ. Շահումյանի 1913 թվականի հունիսի 10-ի նամակը Վ. Ի. Լենինին, որտեղ նշվում է. «Մոտ օրերս նամակ ստացա, կարծում եմ, Ձեզնից է կամ Նադեժդա Կոնստանտինովնայից: Շատ շնորհակալ եմ հիշելու համար: Այժմ ապրում և ծառայում եմ Աստրախանից 20 վերստ հեռավորության վրա» և այլն (Ստ. Շահումյան, Նամակներ, Երևան, 1959 թ., էջ 29—30): Ամենայն հավանականությամբ պետք է ենթադրել, որ Ստ. Շահումյանի հասցեն Վ. Ի. Լենինին հաղորդել է Վ. Կասպարովը: Ըստ երևույթին Վ. Ի. Լենինն ու Ն. Կ. Կրուպսկայան այդ նամակով ցանկություն են հայտնել իմանալ Ստ. Շահումյանի կարծիքը Վ. Կասպարովի մասին: Այդ առթիվ Ստ. Շահումյանը գրում է. «Այն բեռլինցին, որի մասին Դուք հարցնում եք, մեր լավ բարեկամն է, կարող եք լիովին վստահել նրան» (նույն տեղը): Ստ. Շահումյանը միաժամանակ նամակ է գրել նաև Վ. Կասպարովին *:

Հենց այդ է ակնարկում Ն. Կ. Կրուպսկայան Վ. Կասպարովին 1913 թվականի հունիսի 22-ին գրած նամակում. «Թանկագին ընկեր... Ինչո՞ւ ոչինչ չեք գրում: Շ-ն ** գրում է, որ գրել է Ձեզ, որ իմ նամակները չի վերծանել և որ դա եղել է արդեն վաղուց»: Եվ դարձյալ նույն հարցը. «Ի՞նչ են գրում Ձեզ Կովկասից» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 5, գ. 27006): Վ. Կասպարովը շտապում է անմիջապես պատասխանել: Հունիսի 24-ին նա Ն. Կ. Կրուպսկայային հայտնում է.

«Մեծարգո Նադեժդա Կոնստանտինովնա: Ես, իրոք, այս ամբողջ ժամանակ շատ զբաղված եմ եղել՝ սկզբում Բեռնում ուսանողական կոնֆերանսի նախընտրական ժողովներով և Գերմանիայում շրջագայելով, հետո՝ բուն իսկ կոնֆերանսում և վերջապես, կոնֆերանսից հետո պեկուցումով դարձյալ շրջագայելով Գերմանիայում: Իհարկե, այդ ամենը արդարացնում չէ, և ինքս գոհ չեմ, որ այդպես գլխովին խրվել եմ ուսանողական գործերի մեջ»: Ապա Վ. Կասպարովը պատմում է Բեռլինի իր աշխատանքների մասին և անդրադառնալով կովկասյան հարցերին, գրում է. «Ստեփանից միայն մի բացիկ եմ ստացել, որտեղ նա Ձեր մասին ոչինչ չի գրում: Հնարավոր է, որ ինձ գրած նրա մյուս նամակը կորել է: Եթե նա Ձեզ չի հայտնել իր հասցեն, գրեցեք հետևյալով՝

Բաքու, Սպիտակ քաղաք, Շիբաևի գրասենյակ, Ստեփան Գևորգովիչ Շահումյանին» (նույն տեղը, ֆ. 17, ց. 2, գ. 231, թթ. 1—3):

Երեք օրից ստացվում է Ն. Կ. Կրուպսկայայի պատասխանը. «Շնորհակալություն տեղեկության համար: Ստեփանին արդեն գրել եմ...»: Ինչպես երևում է, նախորդ նամակներից մեկում Վ. Կասպարովը տեղեկություններ է հաղորդել Պոլտավայի մասին: Ի պատասխան դրա Ն. Կ. Կրուպսկայան գրում է. «Պոլտավան ինքնին ինձ համար այնքան հետաքրքիր չէ, որքան հետաքրքիր են կովկասյան թղթակցությունները»: Ապա նա հայտնում է, որ «Այժմ կապերի հավաքումով ենք զբաղված», ավելացնելով՝ «Օգնեցեք, ինչով կարող եք...» (նույն տեղը, ֆ. 17, ց. 5, գ. 27002):

Պորոնինից Վ. Կասպարովին նամակներ է գրել անձամբ Վ. Ի. Լենինը: Մի դեպքում նա Վ. Կասպարովին խնդրում է ուղարկել «Պրավդա»-ի իրեն հետաքրքրող համարը, մի այլ դեպքում՝ օգնել Պետրոգրադից ստանալու առանձին ամսագրեր և

* Ավել Ենուկիձե—հին բոլշևիկ, ականավոր պարտիական գործիչ:

** Ստ. Շահումյան:

* Բացի այդ, Վ. Կասպարովն էլ իր հերթին նամակ է գրել Ստ. Շահումյանին: Ինչպես երևում է, նրանք նամակագրական կապի մեջ են գտնվել ինչպես միմյանց, այնպես էլ Վ. Ի. Լենինի ու Ն. Կ. Կրուպսկայայի հետ: Վ. Կասպարովի Ստ. Շահումյանին գրած նամակներից մի քանիսը գտնվում են ՄԼԻ-ի ԿՊԱ-ում:

** Շահումյան:



այլն: «Թանկագին ընկեր,— գրում է Վ. Ի. Լենինը Վ. Կասպարովին 1913 թվականի հունիսի 14-ին:—Բարի եղեք ուղարկել ինձ Պրավդայի այն համարը, որտեղ տպագրված է «Կասկածելի վրիպում» հոդվածը: Ես մինչև այժմ այն չեմ տեսել:

Շա՜տ կպարտավորեցնեք:

Ձեր Լենին» (տես Լենինյան ժողովածու XIII, էջ 218):

Ահա և Վ. Ի. Լենինի 1913 թվականի սեպտեմբերի 11-ի նամակը Վ. Կասպարովին:

««Նովայա ռաբոչայա գազետա»-ն և «Ժիվայա միսլ»-ը ես այդպես էլ չեմ ստանում: Ուղղակի՜ դժբախտություն է: Խնդրեցեք Ավելին ամեն օր ուղարկի ինձ ուղղակի Պիտերից» (նույն տեղը, էջ 223):

Բայց ահա մի անգամ Վ. Կասպարովը պատշաճ ճշգրտությամբ չի կատարում հանձնարարությունը: Վլադիմիր Իլյիչը այդ կապակցությամբ նրան հանդիմանում է. «Հարգելի ընկեր. Դուք ուրիշ բան եք գրել Շկլովսկուն: Պահանջվում էր ինչպես գտնել, և ոչ թե կենսագրությունը: Եվ չեք տվել ձեր հասցեն Շկլովսկուն *: Կատարելով կարևոր հանձնարարությունը, հարկավոր է ճշտապահ լինել, այլապես Դուք 100 անգամ մեղավոր կլինեք, գործին օգնելու համար կարևոր մարդուն չգտնելիս:

Ուղղեցե՛ք սխալը անմիջապես:

Ձեր Լենին» (նույն տեղը, էջ 222):

Բարեկամաբար հանդիմանելով Վ. Կասպարովին, Վ. Ի. Լենինը գոհ է նրա գործունեությունից և ամեն առիթով իր ջերմ ու ոգևորիչ խոսքն է ուղղում նրան: «Մեծապես շնորհակալ եմ,— գրում է Վ. Ի. Լենինը Վ. Կասպարովին,— Կոստրովի ** մասին ուղարկած լուրերի համար: Բարի եղե՛ք, խնդրեցեք Ավելին՝ ավելի հաճախ գրել ու տեղեկություններ հաղորդել մեզ: Դա կարևոր է, իսկ մենք ոչինչ չգիտենք» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 36, էջ 280): Եվ կրկին մի նոր հանձնարարություն: «Արդյոք չե՞ք կարող ձեռք բերել և թարգմանել Կոստրովի վրացերեն հոդվածները՝ (ա) լիկվիդատորների դեմ, (բ) ազգային հարցի վերաբերյալ՝ հօգուտ կուլտուր-ազգային ավտոնոմիայի, (գ) — ամենակարևորը—Արկոմեդի պլեխանովյան առաջաբանի դեմ ***, հեգեմոնիայի պլեխանովյան պաշտպանության դեմ:

Ես մի քանի շաբաթով մեկնում եմ Բեռն: Վերադառնալուց հետո, հուսով եմ, մենք դեռ շատ կզրուցենք նամակներով:

Սեղմում եմ Ձեր ձեռքը: Ձեր՝ Լենին:

Շնորհակալություն «Պրավդա»-ի N-ի համար» (նույն տեղը):

1913 թվականի հունիսի 14-ին Ն. Կ. Կրուպսկայան դիմում է Վ. Կասպարովին՝ հայտնելու Ս. Օրջոնիկիձեի հասցեն և տեղեկություններ Ս. Սպանդարյանի (Տիմոֆեյի) մասին: «...Ոչինչ չգիտե՞ք արդյոք Սերգոյի մասին: Ինչպե՞ս կարելի է նրան փող ուղարկել: Նրանից բացի, գուցե դուք որևէ բան գիտեք Տիմոֆեյի մասին...» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 7, գ. 27005): Իսկ հաջորդ բառերը պայքարի ընկերների նկատմամբ լենինյան հոգատարության հույժ վկայությունն են. «Ձե՞ք նշի այն ընկերներին, որոնք բանտարկված են (ավելի ճիշտ՝ նրանց հարազատներին) կամ գտնվում են աքսորում ու աքսորաբնակության մեջ և օգնության կարիք են զգում: Այստեղ է Քաղաքական բանտարկյալներին ու աքսորյալներին օգնող Կրակովի միությունը, որը սիրով օգնում է բանտարկյալներին և առհասարակ հոգում է նրանց մասին»:

Ընտրվելով բոլշևիկների Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի անդամ, Վ. Կասպարովը ավելի լայն կապեր է հաստատում Ռուսաստանի, ինչպես և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հետ: Նա միաժամանակ մեծ աշխատանք է կատարում Վ. Ի. Լենինի աշխատությունները, պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նյութերը և մյուս բոլշևիկյան գրականության տպագրությունը կազմակերպելու և բաշխելու գործում:

Վլադիսլավ Կասպարովի հետ Վ. Ի. Լենինի ունեցած կապի մասին այսքանը վկայում են միայն մեր ձեռքի տակ եղած նամակները: Բայց չէ՞ որ Շվեյցարիայում ապրելու տարիներին (1914—1917 թթ.) Վ. Կասպարովը բազմաթիվ առիթներ է ունեցել անձամբ հանդիպելու Վ. Ի. Լենինին, լսելու նրան, զրուցելու նրա հետ, ստանալու հանձնարարություններ և այլն, և այլն: Եվ այդ ամենին հետևել է նրա եռանդուն ռևոլյուցիոն գործունեությունը...

Վ. Կասպարովը անձնվեր բոլշևիկ էր, լենինյան գործի անխոնջ մարտիկ: Նա վայելում էր բոլշևիկյան գործիչների ամենաջերմ սերն ու հարգանքը: Բոլշևիկների՝ Փարիզի սեկցիայի քարտուղար Գ. Յա. Բելենկին, որ մինչ այդ եղել էր Բեռնում, հանդիպել Վ. Կասպարովի հետ, վերադառնալով Փարիզ, 1915 թվականի մարտի 13-ին Ինեսա Արմանդին գրում է. «Ինձ վրա շատ լավ տպավորություն թողեց... Կասպարովի անձնավորությունը: ...Հատկապես այն պատճառով, որ նա աշխույժ խառնվածքի տեր մարդ է: Բարի եղեք իմ ջերմագին ողջույնը և լավագույն ցանկու-

* Գ. Շկլովսկի—ՌՍԴԲՊ (բ) Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի անդամ:

** Վրացական մենշևիկ Ն. Ժորդանիայի ծածկանունն է:

*** «Նկատի է առնվում Ս. Տ. Արկոմեդի «Բանվորական շարժումը և սոցիալ-դեմոկրատիան Կովկասում» գիրքը Գ. Վ. Պլեխանովի առաջաբանով, Ժնև, 1910 թվական» (Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 36, էջ 760, «Ծանոթագրություններ» բաժնից):

թյունները հաղորդելու նրան: Ես, իհարկե, շատ ուրախ կլինեմ, եթե նա երբևիցե մի երկու տող գրի» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 351, ց. 12, գ. 27551):

Բայց տարիներ շարունակ ոչ ոք չգիտեր, որ «աշխույժ խառնվածքի տեր մարդը» տառապում էր ծանր հիվանդությամբ՝ կոկորդի ախտով: Տարվելով իր ամենօրյա մեծ գործով, նա մոռանում էր իր անձնական կյանքը, դրանով իսկ խորացնելով իր հիվանդությունը: Վ. Ի. Լենինը և Ն.՝ Կ. Կրուպսկայան գիտեին այդ մասին, ամենայն հոգատարությամբ խորհուրդ էին տալիս նրան բուժվել, հանգստանալ: Բայց Վ. Կասպարովը տարված էր, կլանված իր գործով: Մշտապես հետաքրքրվելով նրա առողջական վիճակով, Ն. Կ. Կրուպսկայան հաղորդում էր Իլյիչի ջերմ խոսքը. «Վլադիմիր Իլյիչը հղում է մեծագույն ողջույններ» (նույն տեղը, ֆ. 17, ց. 7, գ. 27008), գրում է նա, իսկ մի ուրիշ անգամ ուղղակի հարկադրում, սպառնավորեցնում, որ նա լրջորեն բուժվի. «...անհրաժեշտ է, որ Դուք **անհապաղ** գնաք հանգստանալու: Փորձը ցույց է տալիս, որ դա մերժել չի կարելի: Ո՞ւր եք մտադիր գնալու: Ո՞ւր է ուղարկում բժիշկը: Գրեցե՛ք, խնդրեմ» (նույն տեղը, ֆ. 453, ց. 1, գ. 27018): Բայց անողոք պայմանները ծանր վիճակի մեջ էին դրել ռևոլյուցիոներներին և ամենամեծ կոհողության դեպքում անգամ հաճախ հնարավոր չէր լինում պատշաճ օգնություն ցույց տալ կարիքի մեջ գտնվող ընկերոջը: Մի անգամ Վ. Կասաարովը խնդրում է, որ իրեն ուղարկեն 150 ֆրանկ: Ն. Կրուպսկայան գրում է, որ հազիվ կարողացել է 100 ֆրանկ ձեռք բերել (նույն տեղը): Վ. Կասպարովը թանկ էր գնահատում ընկերների վստահությունը և, որքան էլ ծանր լիներ իր վիճակը, չէր չարաշահում այն: Կարիքը խեղդում էր նրան, հիվանդությունը գնալով սրվում, բայց պայքարի գաղափարական սինվորը դարձյալ մտածում էր պարտիայի, ընդհանուրի միջոցները խնայելու մասին: Նա նույնիսկ հրաժարվում է ՌՍԴԲՊ (բ) Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի նշանակած նպաստից (տե՛ս նույն տեղը, գ. 27023): Անձնազոհության այս բարձր հատկանիշները հուզում են ընկերներին. Վ. Կասպարովն է՛լ ավելի է բարձրանում ընկերների աչքում՝ որպես մարդ ու կոլեկտիվ պայքարի աներեր զինվոր: Ահա Վ. Կասպարովին Ցյուրիխից ուղարկված մի նամակ, որի հեղինակը Ն. Կ. Կրուպսկայան է և գրված է Վ. Ի. Լենինի գիտությամբ:

«30. 9. 1916 թ.: Թանկագին Կասպարով, ստացա Ձեր բացիկը, շնորհակալություն: Ինչպե՞ս է Ձեր առողջությունը: Ինեսան* գրել է, որ լավ չէ: Ի՞նչ է ասում բժիշկը: Պահպանո՞ւմ եք արդյոք ռեժիմ: Գրեցեք, խնդրեմ, գործի դրամական կողմի մասին: ...Ասում են, որ Ձեզ կանոնավոր կերպով 50 ֆրանկ են ուղարկում Բեռնից և 50 ֆրանկ էլ ձեռք են բերել Դավոսում*: Ճի՞շտ է արդյոք այդ: Մենք այստեղից ամսական կուղարկենք 65 ֆրանկ: Դա, իհարկե, քիչ է: Գրեցեք, որքան գումար է հարկավոր ապրուստի համար, ունե՞ք արդյոք պարտքեր և այլն... Ես գիտեմ, որ Դուք չեք սիրում այդ մասին խոսել: Բայց մի անգամ վճռեցեք ու գրեք և ես այլևս չեմ ձանձրացնի Ձեզ» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 7, գ. 27021):

* Ինեսա Արմանդ:

Այնուհետև շարունակվում են Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի հարցումները Վ. Կասպարովի առողջության, նյութական վիճակի մասին:

Վրա են հասնում 1917 թվականի տարեմուտի ռևոլյուցիոն իրադարձությունները: Ռուսաստանում պրոլետարիատը կրկին ոտքի է ելնում, ընթանալով դեպի մեծ շրջադարձի նախամուտքը: Արտասահմանում քաղաքական վտարանդի բոլշևիկները ոգևորության օրեր են ապրում. բոլորը շտապում են դեպի Ռուսաստան՝ անմիջապես մասնակցելու պրոլետարական մասսաների մեծ գոտեմարտերին: Իսկ Վ. Կասպարովը ծանր հիվանդ է, թեև նրա բաջակորով սրտի կարկերը ետ չեն մնում ժամանակի հևքից: Նրան հուսադրում է սիրելի Իլյիչի ոգևորիչ խոսքը: Պետրոգրադի փետրվարյան դեպքերից մի քանի օր առաջ Ն. Կրուպսկայան գրում է Դավոս՝ Վ. Կասպարովին. «Թանկագին Կասպարյանց, ինչպե՞ս եք ապրում: Ինչպե՞ս է Ձեր կոկորդը: ...Իսկ անհրաժեշտ է, որ Դուք կազդուրվեք և մեկնեք Ռուսաստան որքան կարելի է շուտ, այլապես կուշանաք «սկզբից»: Չէ՞, լրջորեն, Ռուսաստանից ստացվող նամակները միանգամայն ուրախալի են...

Ցանկանում եմ առողջություն, մեր ժամանակը մոտենում է...

Իլյիչը Ձեզ մեծ ողջույններ է հղում...» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 7, գ. 27024):

Անցնում են օրերը, և Ռուսաստան մեկնելու պատրաստություն է տեսնում նաև Վ. Ի. Լենինը: Իսկ Վ. Կասպարովը մեկնել չի կարող: Ցավալի է: Վ. Ի. Լենինը Ռուսաստան մեկնելու տառացիորեն վերջին պահին շտապում է իր հրաժեշտի խոսքն ասել Վ. Կասպարովին, քաջալերել նրան և հուսադրել պայծառ գալիքի վառ հեռանկարով: Նամակը սկսում է Ն. Կ. Կրուպսկայան.

«Նամակս ավարտում եմ մեկնելուց մեկ ժամ առաջ,— գրում է նա վերջում,— անհավատալի իրարանցում է, և ոչինչ չի կարելի հասկանալ:

Դե՛, ամուր, ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը, կազդուրվեցեք արագորեն: Կտեսնվենք Ռուսաստանում»:

* Այդ ժամանակ Վ. Կասպարովը ապրում էր Շվեյցարական Դավոս քաղաքում:



Վ. Ի. Լենինը շարունակում է.

«Թանկագի՛ն Կասպարով: Ամուր, ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը..., ցանկանում եմ առողջություն: Հարկավոր է համբերել: Հուսով եմ կհանդիպենք Պիտերում և այն էլ շուտով:

Մեկ անգամ ևս լավագույն ողջույններ...:

**Ձեր՝ Լենին»** (Լենինյան ժողովածու XIII, էջ 272):

Ցավոք սրտի, կրկին հանդիպելու՝ Վ. Ի. Լենինի ցանկությունը չիրականացավ: 1917 թվականի սեպտեմբերի 6-ին վախճանվեց Վլադիսլավ Մինասի Կասպարյանցը: Նրան թաղեցին Շվեյցարական Դավոս քաղաքի գերեզմանոցում:

Չորս տարի հետո՝ 1921 թվականի դեկտեմբերին, Վ. Կասպարովի քույրը մի անձնական գործով* դիմում է Ժողկոմսովետի նախագահ Վ. Ի. Լենինին, խնդրելով նրա օգնությունը: Այդ առթիվ Վ. Ի. Լենինը համապատասխան օրգաններին ուղարկած իր գրության մեջ նշում է. «Ես այդ Կասպարովային անձամբ չգիտեմ կամ մոռացել եմ նրան, բայց նրա եղբորը շատ լավ գիտեի արտասահմանում, որտեղ նա 1905 թվականի ռուսական առաջին ռևոլյուցիայից հետո գտնվում էր էմիգրացիայում, մտնում էր բոլշևիկյան կազմակերպության մեջ, վայելում էր նրա աշխատանքը տեսած բոլոր այն բոլշևիկների արժանի հարգանքը, որոնց հետ ես հանդիպել եմ: Այդ Կասպարովը մեռավ Շվեյցարիայում մինչև 17 թվականի ռևոլյուցիան (քայքայված լինելով էմիգրանտական կյանքի ծանր պայմաններից):

Ես կաշխատեմ տեղեկություններ հավաքել, թե ով կարող է մոտիկից ճանաչել Կասպարովի քրոջը» (Լենինյան ժողովածու XXXVI, էջ 379):

Այս ամենը ընդամենը մի էջ է, մի օրինակ պրոլետարական ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի հետ Անդրկովկասի բոլշևիկների ունեցած սերտ կապի հարուստ պատմությունից: Այստեղ երևում է, թե Վ. Ի. Լենինը ինչպիսի նշանակություն էր տալիս Անդրկովկասի պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարին և ինչպիսի հոգատարություն էր ցուցաբերում երկրամասում ռևոլյուցիայի ղեկավարների նոր սերունդ աճեցնելուն և, առհասարակ, պայքարող պրոլետարական մասսաների դաստիարակությանը: Անցնելով ուսուցման և դաստիարակության լենինյան դպրոցը, Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի շարքերից դուրս եկան լենինյան հին գվարդիայի շատ ականավոր ներկայացուցիչներ, որոնց անունները երկար կապրեն երախտագետ սերունդների սրտերում:

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

**Պատմական գիտությունների թեկնածու**

* Խոսքը վերաբերում էր պարտիայի զտման ժամանակ պարտիայի շարքերից Վ. Կասպարովի քրոջ դուրս մնալուն:

երկար ժամանակ գերի մնալ այդ հնամոլ գրելակերպին, և նա 1884 թվականին տպագրում է մի երգիծական ակնարկ՝ «Չինական նամականի» խորագրով, որի մեջ սրամիտ երգիծանքով, բայց և ցավի գիտակցությամբ փորձում է ներկայացնել Պոլսի ազգային-հասարակական կյանքը, քննադատում ժամանակի կյանքի ամլությունը, գրականության և լրագրության մեջ տիրող լճացումը, ծաղրում է Ազգային ժողովում սնամեջ վեճերով և հռետորական ապարդյուն մարզանքներով կրաղվող պահպանողական բուրժուակիայի ներկայացուցիչներին: Այս ակնարկում երևում է նաև հեղինակի ըմբոստ նկարագիրը, առաջին անգամ այստեղ է, որ նա արտահայտում է «բռնավորի» դեմ պայքարելու անհրաժեշտության միտքը:

Ամենից ուշագրավը այս նամականիի մեջ այն է, որ հայրենասեր հեղինակը նկարագրելով հայերի՝ պատմության խորթ կավակի վիճակը, կարողանում է նկատել գաղութահայության ամենատարածված հիվանդությունը՝ կոսմոպոլիտիզմը, թեև անտեղի է նրա կատարած ընդհանրացումը հայության վերաբերյալ ընդհանրապես: Բնաշխարհի հայությունը նույնը չէր, ինչ որ էր գաղութահայությունը:

1885 թ. Զոհրապը «Երկրագունտ» հանդեսում սկսում է տպագրել իր անդրանիկ վեպը՝ «Անհետացած սերունդ մը», որը սակայն, ամբողջությամբ լույս է տեսնում Արփիարյանի խմբագրած «Մասիս»-ի մեջ 1886 թ.: Վեպը գտնում է լավ ընդունելություն ո՛չ միայն այն պատճառով, որ դա ռեալիստական առաջին վեպն էր արևմտահայ գրականության մեջ, այլև իր արծարծած հարցերով, որոնք գրավում են ութսունական թվականներին նոր ձևավորվել սկսող գրական ռեալիստական շարժման մասնակիցներին: Վեպում հեղինակը փորձել է ներկայացնել ժամանակի երիտասարդության կերպարներ, անդրադարձել է ընտանեկան-ամուսնական հարաբերությունների հարցին, քննադատել պահպանողական տարրերի գործունեությունը Ազգային երեսփոխանական ժողովում, ճիզվիտների այլասերող ազդեցությունը և այլն: Վեպը հագեցած է ժամանակի առաջադիմական ձգտումներով, ուղղված է «մեծ» աղաների, հակասահմանադրական տարրերի, կրոնական մոլեռանդության, բուրժուական ընտանեկան-ամուսնական հարաբերությունների փըտածության, կարիերիզմի, այլասերվածության և անբարոյականության դեմ: Հարևանցի շոշափված են նաև սոցիալական հարցեր: Վեպի հերոսուհին՝ Սուրբիկը, պաշտպանում է «աշխատավորներու տառապյալ դասն ու հարստության ի գործ դրած բռնության դեմ կորոտար»,— գրում է հեղինակը:

1891 թ. Զոհրապը ընտրվում է Ազգային ժողովի երեսփոխան (պատգամավոր), սակայն պահպանողական տարրերից կազմված Ազգային ժողովի ղեկավարությունը բեկանում է նրա ընտրությունը՝ երեսուն տարին լրացած չլինելու պատրվակով, մինչդեռ բուն պատճառը, ինչպես գրում էր այդ առթիվ 80-ականների օրգան «Հայրենիք» օրաթերթը, այն էր, որ Զոհրապը «անոնցմե» չէր, չէր համապատասխանում երեսփոխանի այն մտատիպարին, որ պահանջում էին պահպանողականները:

Իբրև 80-ական թվ. գրական շարժման հիմնադիրներից և տեսաբաններից մեկը, Զոհրապը գրում է մի շարք գրականագիտական հոդվածներ, որոնց մեջ, ինչպես «Ծանոթ դեմքեր» խորագրով գրած գրական դիմանկարների մեջ արտահայտում է իր գեղագիտական հայացքները:

Զոհրապի գեղագիտական հայացքների ելակետը այն պահանջն է, որ գրականությունը պետք է արտացոլի ժողովրդի կյանքը և ծառայի ժողովրդին: Այդպես էլ ասում է նա «Մասիս» հանդեսի առաջին ծրագրային խմբագրականում՝ «**Գրականությունը ժողովրդյան կյանքեն պիտի բաղվի՝ ժողովրդյան կյանքին ծառայելու համար**»: Եվ, որպեսզի գեղարվեստական գրականությունը հասկանալի ու հարազատ լիներ լայն հանրությանը, Զոհրապը պահանջում էր, որ գրողները մոտենան «ժողովուրդին և անոր համեստ ըմբռնումին, եթե չեն ուզեր որ իրենք ըլլան միայն իրենց գործերուն ընթերցողները»:

Ռեալիզմի գեղագիտության կարևորագույն հարցերից մեկը՝ արվեստի դեպի իրականությունը ունեցած հարաբերության հարցն է, մի հարց, որի լուսաբանումը վճռական նշանակություն ունի պարզելու համար որևէ գրողի ստեղծագործական մեթոդի էությունը, ինչպես և նրա գեղագիտական հայացքների փիլիսոփայական հիմքը: Ի՞նչ մոտեցում ունի Զոհրապը այդ հարցին:

«Գրականությունը...,— ասում է նա,— պարտի ըլլալ այն **անխարդախ հայելին, որուն մեջ հասարակության բարքը կը ցոլանա..., ուր անոր հարափոփոխ դեմքին ամեն կծկումները մատնանիշ կըլլան, կը վերլուծվին**», հասարակություն, որի «անընդհատ կերպարանափոխությունը» տեղի է ունենում «նյութի ու բարոյականի կուգահեռական աշխարհներուն մեջ»:

Այս հակիրճ, բայց խիստ բովանդակալից տողերի մեջ արտահայտված են շատ կարևոր մըտքեր, որոնք վերաբերում են և՛ արվեստի, և՛ պատմության փիլիսոփայությանը: Զոհրապի կարծիքով որևէ հասարակություն անփոփոխ գոյություն չէ, և նրա զարգացումը տեղի է ունենում ոչ այլ կերպ, քան նյութի ու բարոյականի փոխադարձ պայմանավորվածության մեջ: Հասարակության զարգացման այնօրինակ ըմբռնումից բխում է և արվեստի էության, իրականության հանդեպ ունեցած նրա հարաբերության ըմբռնումը: Գեղարվեստական գրականությունը պետք է



պատկերի իրականությունը իր հարափոփոխության, իր շարժման մեջ և հանդիսանա նրա անխարդախ, ճշմարտացի արտացոլումը:

Իբրև քննադատական ռեալիզմի ներկայացուցիչ՝ Զոհրապը պահանջում էր, որ կյանքը ներկայացվի իր ամբողջության մեջ, իր բոլոր թերի ու բացասական կողմերով, որպեսզի երևային «**այն պակասությունները, որոնցմով վարակված**» էր տվյալ հասարակությունը: Քննադատական ռեալիզմի այս դերը շատ բարձր էր գնահատում Զոհրապը. սակայն իբրև ինքնատիպ մտածող նաև գեղագիտության մեջ, նա առաջ է անցնում քննադատական ռեալիզմի պահանջներից և գտնում, որ գեղարվեստական գրականությունը ո՛չ միայն պիտի ժխտի, այլև հաստատի, արտացոլի կյանքի ո՛չ միայն արատներն ու խոցերը, այլև դրական կողմերը, կյանքի գեղեցկությունները:

«**...Մարդոց և Իրերուն վերեն նայելու է միշտ,**— ասում է Զոհրապը,— նայիլ գիտնալու է. լա՜յն, ազա՜տ, մաքուր նայվածքով, որպեսզի ամեն ինչ ընդգրկես անոր մեջ, ոչ թե անձուկ ու հաչաղկոտ ակնարկով մը որով պզտիկությունները ու տգեղությունները միայն կը տեսնես միշտ, իսկ մեծությունները ու գեղեցկությունները՝ երբե՛ք»:

Զոհրապը շատ մեծ նշանակություն է տվել նաև գրականության գաղափարական հագեցվածությանը, գրականության բովանդակայնությանը. «Ֆիզիքի մեջ,— գրում է նա,— **կըսեն թե Բնությունը պարապութենե կը զարհուրի. գրականության մեջ՝ դատարկությունը շատ ավելի զարհուրելի է ընթերցողներուն համար**»:

Արևմտահայ գրականության մեջ ռեալիզմի արմատավորման ու զարգացման համար կենսական նշանակություն ունեցող գեղագիտական այս հայացքները, անտարակույս, կարևոր դեր են կատարել նաև հեղինակի ստեղծագործության համար:



Մեծ կտավը չէր համապատասխանում Զոհրապի ստեղծագործական հոգեբանությանը, նրա ուժը իրականության ծավալուն պատկերման մեջ չէր, այդ պատճառով էլ նրա վիպական փորձերը, փորձեր էլ մնացին: Զոհրապի ուժը իրականության գեղարվեստական ընկալման և պատկերման յուրահատկությունը խտացման մեջ է, հակիրճության մեջ: Կենսական մի կոնֆլիկտ՝ սյուժետային իր հանգույցի, զարգացման ու լուծման գեղարվեստորեն պատճառաբանված փուլերով խըտացնել մի քանի էջի մեջ, մի քանի հպանցիկ ուրվագծերով կերտել կենդանի կերպարներ՝ անհրաժեշտ միջավայրի և գործողության մեջ, վրձնի մի քանի շարժումներով բացահայտել նրանց հոգեբանության էությունը, նրանց վարքագիծը՝ իրենց տիպական դրսևորումներով — ահա Զոհրապի գրելակերպի ուժը և վարպետությունը, վարպետություն, որ դրսևորվել է ո՛չ միայն իր նորավեպերի (նովել), այլև փոքր տարափ իր կիրառած մյուս ժանրերի երկերի մեջ:

Զոհրապի հզոր տաղանդի ուժն ու հմայքը, անշուշտ, ամենից առաջ արտահայտվել է նորավեպերի մեջ, որոնցով նա դարձավ այդ ժանրի չգերազանցված վարպետը մեր գրականության մեջ, և ճանաչվեց իբրև համաշխարհային գրականության նույն ժանրի լավագույն ներկայացուցիչներից մեկը: Ակադեմիկոս Արսեն Տերտերյանը իր «Զոհրապի արվեստը» աշխատության մեջ ասում է, որ «Գրիգոր Զոհրապը ո՛չ միայն հայ նովելիստիկայի ամենակարկառուն դեմքն է եղել, տվել է դարագլուխ կազմող նովելներ, կանգնել է այնպիսի նշանավոր նովելիստների շարքում, ինչպես են Մոպասանը և Չեխովը, այլև իր գրվածքներով խորացրել է նովելի ժանրի տեսական ըմբռնումը»:

Զոհրապի նորավեպերը գնահատել են մեր գրականության ականավոր շատ ներկայացուցիչներ՝ համարելով դրանք «թանկագին գոհարներ», «անմրցելի հրաշակերտներ», գրականության «ակնախտիղ կարդեր»:

Զոհրապին բարձր է գնահատել նաև Շիրվանզադեն: Նրանք ծանոթանում են Փարիզում: Ականավոր վիպասանը հետագայում «Կյանքի բովից»-ի մեջ այսպես է նկարագրում այդ հանդիպումը. «Մի օր ...ն ինձ ծանոթացրեց պոլսահայ հայտնի վիպագիր Գրիգոր Զոհրապի հետ: Նա Պարիզ էր եկել անձնական գործով: Դա մոտ 45 տարեկան մի տղամարդ էր, միջահասակ, ամրակազմ, լի բացառիկ եռանդով և պատանեկական աշխուժությամբ: Խրոխտ և կտրուկ լեզու ուներ, ինչպես և գրիչ: Թրքական նորընտիր պառլամենտի անդամ էր, նշանավոր փաստաբան և տաղանդավոր հռետոր:

Ես Գրիգոր Զոհրապին ճանաչում էի հեռվեն, կարդացել էի նրա գեղեցիկ պատմվածքները Կ. Պոլսի կյանքից: Ուղղությամբ ռեալիստ էր, ուներ շատ սիրուն ոճ, միանգամայն վերծ... սեթևեթանքից և ավելորդ ու հակագեղարվեստական պերճանքից»:

Զոհրապի նորավեպերը քանակով մեծ չեն. քսանհինգ տարվա ընթացքում (1887—1912) նա գրել է ընդամենը քառասունմեկ նորավեպ, բայց դրանց մեջ ընդգրկել է երկարատև դիտողության և իր բազմաբնույթ գործունեությամբ կուտակած կենսափորձի արդյունքները, այդ պատճառով էլ նրա նորավեպերը խտացնում են մեծ բովանդակություն և վերաբերում են տվյալ ժամանակի համար բնորոշ բազմաթիվ երևույթների: Զոհրապի գրեթե ամեն մի նորավեպը կյանքի մի ուրույն հատված է բացահայտում, ներկայացնում է չկրկնվող տիպարներ՝ իրենց համար միանգամայն տիպական կյանքով և միջավայրով:

Զոհրապի նորավեպերի մեջ՝ քննադատական ռեալիզմի դիրքերից մերկացված են ժամանակի հասարակության խոցերն ու արատները, ցույց են տրված բուրժուական կյանքի գործնականը, շահագործումը, նրա բարոյական դիմագիծը, այլասերման ախտերը, աշխատավորության թշվառ վիճակը և գոյապայքարի դժվարությունները, երիտասարդության թպրտալը բռնակալական ճնշող ու այլասերող իրավահարաբերությունների նեղլիկ վանդակներում, կանանց, նույնիսկ վերնախավի կանանց իրավազուրկ վիճակը և դժբախտությունը. պանդուխտների և նրանց ընտանիքների ծանրը, անելանելի դրությունը, ժամանակի կենցաղը, բարքերը, ընտանեկան-ամուսնական հարաբերությունները, հոգեբանությունը, սերը՝ իր բազմերանգներով և այլն, և այլն:

Զոհրապի համար գաղտնիք չէին ժամանակի հասարակության սոցիալական էության բոլոր նրբերանգները, դասակարգային հակամարտությունները, «անիրավ կարգն ու սարքը», սոցիալական «ամեն վեճերը», հասարակության շերտավորումը «իր պառակտումներով ու չափազանց վերքերը» («Շիշլիի ազգային գերեզմանատունը...»): Գաղտնիք չէր նաև դրամի իշխանությունը և դրա հետևանքները: Իր փիլիսոփայական մի ակնարկում («Բեռին տակ») հեղինակը հետևյալ ձևով է նկարագրում դրամի իշխանության բացասական ազդեցությունը մարդկանց վրա. Պոլսի մի կամուրջի վրայով անցնում են երեք առույգ բեռնակիրներ, որոնք կքել են բեռան ծանրության տակ, թեև հեռվից այդ բեռը թվում է աննշան: Երբ հեղինակը մոտենում է նրանց, տեսնում է, որ ոսկի են փոխադրում: «Ու շատ մը անցորդներ,— գրում է հեղինակը՝ անելով իր հետևությունը և ընդհանրացումը,— ոչ նվազ կորաքամակ էին հարկավ. ոսկվո բեռը, անձկությամբ լեցուն բեռ մը, ամենուն ալ մտքին և հոգվույն մեջ կար, եթե ոչ ուսերնուն վրա: Եվ անոր ծանրության տակ, այդ սրտերը ու հոգիները կքեր, ծռեր, բաժնվեր էին իրենց նախնական շիտակութենեն. ոսկին՝ որ մարդիկը բարձրացնելու պետք էր. ծառայեր, ընդհակառակն, վանոնք կընկճեր, կը խոնարհեցներ, և ո՞վ գիտե, Ղալաթիո կամուրջին վրայեն անցնող սա երեք բեռնակիրները թերևս խորհրդանշաններն էին նյութապաշտ մարդկության»:

Այսպիսով, ըստ Զոհրապի, դրամը ճնշում է մարդկանց, բարոյապես այլասերում, դարձնում է, ինչպես ասում է հեղինակը իր հրապարակախոսական մի ակնարկում («Հակոտնյաներ»), «հավիտենական վարձկաններ»: Ահա թե ինչի դեմ է ընդվզում հեղինակը նաև իր նորավեպերի մեջ՝ նկարագրելով դրամի նույն ներգործությունը մարդկանց նկարագրի, վարքագծի և հոգեբանության վրա:

Իր նորավեպերի մեջ Զոհրապը ցույց է տալիս, որ դրամը իրար դեմ է հանում նույնիսկ հարազատների, եղբայրը կողոպտում է եղբորը («Վարդապետին մականունը»), դրամի պատճառով հարազատները թշնամանում են («Կանանց բժիշկը»), դրամի տերերը կորցնում են մարդկային ամեն մի առաքինություն («Մեղա տեր»), նրանց գործած «հապար տեսակ խարդախություններու աշտարակը» սպառնում էր «մինչև երկինքը հասնիլ» («Ժամին բակը»), նրանք արհամարհում են աշխատավորության մարդկային տարրական իրավունքները («Փոստալ», «Փոթորիկը»), որ կարիքը իր ոսկրոտ ճանկերով բռնում է շատերի կոկորդը և մղում նույնիսկ հանրատուն («Մագդաղինե») կամ ինքնասպանության («Ճիտին պարտքը»), որ գոյապայքարը ընդունել է դաժան ձևեր, հաճախ մի կտոր հացը պետք է վաստակել կյանքի գնով («Այինկա»):

Զոհրապը, որ արդարության այնքան նախանձախնդիր էր, չի կարողանում հանդուրժել ժամանակի իրականությանը հատուկ՝ աղաղակող անարդարությունները և «խղճմտանքի ձայներ»-ի թելադրությամբ նկարագրում է աշխատավորության ծանր վիճակը, իրավազրկությունը, նրանց մարդկային տարրական իրավունքների անտեսումը («Ներսես», «Փոթորիկը», «Փոստալ»): Աշխատավորության կյանքը նա նմանեցնում է «երկարատև խավարի... զոր ոչ մեկ լույսի ճառագայթ կուգա վայրկյան մը գեթ լուսավորել, ուրախացնել»:

Զոհրապի մի շարք նորավեպերը, ինչպես «Կանանց բժիշկը», «Պարահանդեսին վաղորդայնը», «Մառա», «Լուսահոգին», «Վերադարձը», «Հակոբիկը», «Անհավատարիմը» և այլն նվիրված են ժամանակի հասարակության ընտանեկան-ամուսնական հարաբերությունների, կենցաղի, բարքերի պատկերմանը: Դրանց մեջ նույնպես հեղինակը տեսնում է բարոյական սնանկություն, այլասերվածություն և կեղծիք:

Վերը նշած իր ակնարկներից մեկում նկարագրելով գերեզմանատանն անգամ շարունակվող խիստ տարբերությունը հարուստի և աղքատի միջև և հարուստների շքեղ մահարձանները՝ «մոռացության միայն արժանի» անուններով, հեղինակը կայրույթով ասում է. «Եվ այս լիրբ ու անպատկառ անձնագովությունները ու անձնապահպանումները այնքան կը հաճախեն չորս դիս ահա, որ սիրտս լեցնող զզվանքը շրթունքս կելլե մինչև, և ճշմարիտ ամոթ մը կը համարեմ, կատարյալ անվանարկություն մը, դասակցություն մը հոս՝ այս փառապանծ կոթողներուն քով»:

Իր ամբողջ կյանքի ընթացքում Զոհրապը միշտ եղել է ժողովրդի հետ, գործել է ժողովրդի համար, պաշտպանել է նրա շահերը: Այդ ակնարկում մի անգամ էլ ընդգծում է նա իր լիակատար հոգեհարազատությունը ժողովրդին՝ ասելով. «Տեղ մը միայն ուր ես... պիտի ուզեի հանգչիլ, եղբայրակցությունը կատարյալ է և գիրկընդխառնումը ճշմարիտ. հոն, ուր լացերը ու սուգերը ջեղջակույտերով կը լեցվին, հասարակաց փոսին մեջ»:

Այս հոգեհարազատությունից է բխում նաև այն հանգամանքը, որ իր դրական բոլոր հերոսներին նա վերցրել է բացառապես ժողովրդական խավերից: Նրանց մեջ է հեղինակը տեսել մարդկային բարձր արժանիքներ, ազնվություն, նվիրվածություն, շիտակ նկարագիր, մարդկային անաղարտ զգացումներ: Այդպիսի կերպարներից են՝ Աշխենը («Թեֆարիկ»), Տիգրանուհին («Փոստալ»), Պերճուհին, Հակոբոսը, Սահակը («Այինկա») և ուրիշներ:



1890-ական թթ. վերջերից մանավանդ Զոհրապը դառնում է կենտրոնական դեմք արևմտահայ գրական կյանքում, նրա շուրջն են համախմբվում ժամանակի գրական-հրապարակախոսական ուժերը, լայնորեն տարածվում է նրա հմայքը: Այդ երևույթը լավ է արտահայտել վիպասան Չիֆթե-Սարաֆը՝ Զոհրապին նվիրված դիմաստվերի մեջ: «Անոր անունը,— գրում է նա,— ծգողություն մը ունի: Հմայք մը կա անոր գրելակերպին, խորհելակերպին և ապրելակերպին մեջ: Հմայած է ան գրողն ալ, չգրողն ալ, բարոյամոլն ալ, հինն ալ, նորն ալ հավասարապես», և ապա ավելացնում է՝ «մենք նորերս՝ անվերապահ խանդով մը կը պաշտենք զայն...»:

Իսկ բանաստեղծուհի և մանկավարժ Սիպիլը՝ խոսելով Զոհրապի երկերի լայն տարածման մասին, ասում է. «Ամեն մարդ կը կարդա զինքը հաճույքով, անհամբերությամբ, սքանչանքով. ծերերն ալ, երիտասարդներն ալ, աղջիկներն ալ, դպրոցական տղաքն ալ... և գրագետն ալ, ռամիկն ալ, ու ամենքը կը հասկնան, ամենքը կը փնտրեն զինքը, և իր կարոտը կը զգան»:

Մեծ դեր է կատարում Զոհրապը 1898-ին իր, Սիպիլի և Հր. Ասատուրի խմբագրությամբ լույս տեսնող «Մասիս» օրաթերթում: 1895—96 թթ. կոտորածներից հետո հայ ժողովուրդը գտնվում էր սուգի և վհատության մեջ, անհրաժեշտ էր հույս ներշնչել, կենսունակության կոչել նրան, մղել՝ իր ավերված բույնը վերաշինելու: Զոհրապը կատարում է այդ պարտականությունը որդիական սիրով: «Մասիս»-ի առաջին իսկ խմբագրականում նա ասում է. «Տկարանալու, սայթաքելու չէ կյանքի պատահարներուն առջև, այլ պանոնք դիմավորելու է ինչպես անխուսափելի հյուրի մը ընդունելություն կըլլվի, զվարթ երեսով: Մեր հասարակությունն ալ ուրեմն պետք ունի... մտքի ու սրտի» առողջության, «առանց որուն հառաջադիմելու կարող չէ: Լալագին ազգ մը բանի մը օգտակար չէ կրցած ըլլալ աշխարհիս վրա»:

90-ական թվականներին Զոհրապն իր պայքարի մի սլաքն էլ ուղղում է միջազգային ռեակցիայի դեմ՝ Դրեյֆուսի հայտնի դատի առթիվ, որի մեջ նա տեսնում է փոքր ազգերին հալածելու փաստը ընդհանրապես: Զոհրապը, որ շատ հմուտ էր նաև միջազգային օրենսգիտության ասպարեզում, գրում է մի ընդարձակ պաշտպանողական և ուղարկում է Փարիզում կազմակերպված՝ Դրեյֆուսին պաշտպանող հրեական կոմիտեին, որից ստանում է շնորհակալագիր և կոճակ՝ Դրեյֆուսի մանրանկարով: Դրանք Զոհրապին է մատուցում Կ. Պոլսի հրեա գաղութի պատվիրակությունը: Մամուլում նույնպես Զոհրապը հանդես է գալիս Դրեյֆուսի դատի պաշտպանությամբ:

Զոհրապի փաստաբանական և հասարակական գործունեությունը կասկածելի են դարձնում նրան սուլթան Համիդի աչքին. մի քանի անգամ ձերբակալում են նրան: Վերջին անգամ ձերբակալում են 1905 թվականին, սուլթան Համիդի վրա կատարված մահափորձի առթիվ: Համիդը ցանկանում է Զոհրապին հեռացնել Պոլսից, իսկ կառավարությունը, ինչպես վերը ասվեց, մի բուլղար հեղափոխականի պաշտպանելու համար զրկում է նրան փաստաբանությամբ զբաղվելու իրավունքից: Իր իրավունքը վերստանալու համար կատարած բազմաթիվ ապարդյուն փորձերից հետո Զոհրապը մեկնում է Փարիզ, արտասահմանում հաստատվելու մտադրությամբ, սակայն պատմության անակնկալները այլ ճակատագիր էին սահմանել նրան:



1908—1915 թթ. Զոհրապի հասարակական-քաղաքական գործունեության ամենաբուռն շրջանն է: 1908 թ. պետական հեղաշրջումը, շատ վտարանդիների նման, Պոլիս է բերում նաև Զոհրապին, որը արժանանում է խանդավառ ցույցերի: Ենթադրելով, որ այդ հեղաշրջումը երեսուն տարիե ի վեր հայ ժողովրդի վրա ծանրացած «տապանաքարը» վերացրեց, Զոհրապը մեծ եռանդով ու նվիրվածությամբ նետվում է հանրային գործունեության ասպարեզ: Նրա քաղաքական առաջին ձեռնարկումն է լինում՝ համերաշխություն ստեղծել դարերով թշնամացած հայերի և թուրքերի միջև: Այդ նպատակով նա կազմակերպում է Պոլսում չտեսնված մի բազմամարդ ցույց, ուր արտասանում է իր քաղաքական առաջին ճառը:

Շուտով նա ընտրվում է Ազգային երեսփոխանական ժողովի և, հակառակ իթթիհատականների դիմադրության, թուրքական պառլամենտի անդամ:

Զոհրապի պառլամենտական գործունեությունը

շատ քիչ է ուսումնասիրված, մինչդեռ նա արժանի է հատուկ ուշադրության: Այդ գործունեությունը ցույց է տալիս առաջադիմության և ժողովրդի շահերի գիտակցությունն ունեցող մեծ գործչի նպատակներն ու ծրագրերը: Զոհրապի նպատակն էր նպաստել՝ երկրի քաղաքական, տնտեսական և մշակութային զարգացմանը, քաղաքակրթության նվաճումները լայն հոսանքով ներս բերելուն, բռնապետական կարգերին, համիդյան մտայնության ու գործելակերպին վերջ տալուն, կրթական գործի, օրենսդրության, դատական գործի վերակառուցմանը, արվեստների զարգացումը խրախուսելուն, առաջադիմությունն արգելակող հնավանդ հարկերը և ավատական մենաշնորհներն ու կամայականությունները վերացնելուն, արդյունաբերության և գյուղատնտեսության առաջընթացի հնարավորություններ ստեղծելուն: Նա պահանջում էր ճանաչել բոլոր հպատակ ազգերի քաղաքացիական և ազգային իրավունքները, որով նպաստել երկրի ներքին ուժեղացմանը:

Զոհրապը պառլամենտի անդամ է ընտրվում յոթ տարվա (1908—1915) ընթացքում բոլոր երեք ընտրություններին և շատ գործուն մասնակցություն է ունենում պառլամենտի գործունեությանը թե՛ իր ընդարձակ ելույթներով ու առաջարկներով, թե՛ իբրև ամենատարբեր հանձնաժողովների նախագահ կամ անդամ: Հիշենք մի քանիսը Զոհրապի պառլամենտում արած առաջարկներից—նահանգների իրավասության ընդլայնում, ժողովների և միտինգների ազատություն, բանվորների միության և գործադուլի ազատություն, ժողովրդի, հատկապես գյուղացիության վրա ծանրացող հարկերի թեթևացում: Զոհրապը պահանջում է հարկատու դարձնել ռանտիեներին, պահանջում է այնպիսի քաղաքականություն վարել, որ «ժողովուրդին ստվար մեկ մասին թշվառության ու ընչազրկության պատճառ» չդառնա: Առհասարակ Զոհրապը պահանջում էր, որ կառավարությունը մտածի ժողովրդի մասին: «Կուզենք որ ժողովուրդը սահմանադրության ոգին ըմբռնե և անոր հարի,— ասում է նա,— բայց ահա երեք տարին ի վեր ոչինչ ըրինք ժողովուրդին համար...»:

Մեծ շահեկանություն ունեն Զոհրապի պառլամենտում արած օրենսդրական առաջարկները, որոնց որոշ կետեր ավելի առաջադիմական էին, քան եվրոպական օրենքները: Զոհրապը պաշտպանում է նաև կանանց իրավունքները, պահանջում է վերացնել «ապօրինի ծնունդ» հասկացությունը, ինչպես և «ազնվականություն» ըմբռնումը: «Միջին դարուն էր,— ասում է նա,— որ ազնվականությունը նշանակություն մը ուներ... քսաներորդ դարուն փառքին համար պետք է խստիվ մերժել այս տեսակ բան մը: Ազնվականություն չկա»:

Իր օրենսդրական բազմաթիվ առաջարկներով Զոհրապը ցանկանում էր նպաստել նոր մտայնության առաջացման, ցանկանում էր վերացնել կղերա-ավատական ճնշիչ կապանքները: Իր օրենսդրական առաջարկների մեջ նույնպես Զոհրապը պաշտպանում էր աշխատավորության շահերը: «Ամենեն ավելի արդարության և պաշտպանության կարոտ դասակարգերուն, այսինքն գյուղացիներուն ոևէ կերպով արդարություն չէ ապահովված»,— ասում է Զոհրապը իր հատուկ տեղեկագրի մեջ: Զոհրապը իր օրենսդրական առաջարկներով ցանկանում էր դառնալ «Թուրքիո Պերանժեն», ասում է Զոհրապի կենսագիրը:

Զոհրապի պառլամենտական ճառերի մեծ մասը խիստ քննադատություններ էին՝ հօգուտ Թուրքիայի բոլոր ժողովուրդների ընդհանուր շահերի և հիացմունքով էին ընդունվում ժողովրդի առաջավոր խավերի կողմից: Այդ հիացմունքը հաճախ արտահայտվում էր տարբեր ազգի մամուլի միջոցով, որը զանազան առիթներով նշում էր՝ «Զոհրապի քաջաբար առաջ նետվելը», «կատաղի ընդդիմախոսներու դեմ կուրծք տալը», մինչև վերջ «բարիկադին վրա մենմենակ կանգուն» մնալը և այլն:

Կառավարության քննադատությունը հաճախ Զոհրապը վեր էր ածում ամենաբուռն մերկացումների, մանավանդ ազգային հարցում: Պառլամենտում Զոհրապը պաշտպանում է բուլղարների, հույների, ալբանացիների, մակեդոնացիների, հրեաների և, մանավանդ, հայերի շահերը: Զոհրապը զգալի դեր կատարեց Ադանայի կոտորածի ժամանակ: Նրա ջանքերի արդյունքն էր, որ կառավարությունը, որը մեղադրում էր Ադանայի հայերին ապստամբության մեջ, ընդունեց ջարդարարների մեղավորությունը: Եթե Զոհրապը չլիներ, ասում է Երվանդ Օտյանը, «թերևս ջարդվողները հանցավոր հռչակվեին»:

Իթթիհատական կառավարության հայահալած քաղաքականությունը համարձակորեն մերկացնում է Զոհրապը նաև 1911 թ. վարչապետին գրած իր «Հիշատակագրի» մեջ, ուր ասում է, որ «Համիտական ռեժիմին պարծանքը կազմող աղետաբեր քաղաքականությունը [ հայերի նկատմամբ ] սահմանադրական ռեժիմին մեջ ամենեն առաջ կենդրոնի իշխանության գործունեության մեջ երևան կուգա»:

Զոհրապը հատուկ հետաքրքրություն է ունեցել դեպի բանվորական հարցը: Թե՛ պառլամենտում, թե՛ նրանից դուրս նա պահանջում է, որ թույլատրվեն բանվորական կազմակերպություններ: Իր մի ատենախոսության մեջ, որ հրատարակվեց «Հայ պատգամավորի մը հաշվետվությունը» խորագրով, անդրադառնալով բանվորական հարցին, Զոհրապն ասում է. «Անտեղյակները միայն կրնան ըսել թե գործավորական [ բանվորական ] հարց չկա Թուրքիո մեջ: Թեև մեծ ճարտարարվեստը գոյություն չունի այս երկրին մեջ, բայց այսուհանդերձ գործավոր դասակարգ մը կա, և երկու միլիոնի մոտ կը հաշվեն զայն՝ հողային գործավորները միասին առնելով. երկու միլիոն գործավորը արհամարհելի դասակա՞րգ մըն է միթե»: Զոհրապը նույն ատենախոսության մեջ պահանջում է, որ չանտեսվի «գործավորական կազմակերպություններ» ստեղծելու հարցը, չմերժվեն «ամենեն արդար պահանջները աշխատավորներուն, ժողովուրդին, որոնք վերջապես երկրին էն մեծ ուժերն են»:

Աշխատավորության շահերը պաշտպանելու մտահոգությունից է բխում նաև նրա՝ պառլամենտում արած առաջարկը՝ Հանրօգուտ շինություանց մինիստրության մեջ «Աշխատանքի բաժանմունք» հաստատելու մասին, որը, ինչպես ինքն է ասում, «անհրաժեշտ է պաշտպանելու համար 600.000 բանվորներու աշխատանքը վեղծումներու դեմ»:

Զոհրապը դժգոհ էր նաև Եվրոպայի երկրների բանվորության վիճակից, որովհետև, ինչպես գրում է իր ճամփորդական նոթերի մեջ («Էջեր ուղևորի մը օրագրեն»), Եվրոպայումն էլ «աշխատությունը... մինչև ստրկության կը տարվի»:

Այդ նույն աշխատության մեջ Զոհրապը բարձր է գնահատում Կարլ Մարքսին և նրա կատարած մեծ դերը, ասելով, որ Ֆրանսիայում բանվորական «կյանքին դժբախտությունները» դեռ չքննված՝ «Քարլ Մարքս իր հոյակապ գործը... «Դրամագլուխը» հրատարակած էր, այսօրվան տնտեսագիտության հիմերը դնելով»:

Զոհրապի առաջավոր հայացքները արտահայտվել են նաև պատերազմի քաղաքականության դեմ մղած նրա պայքարում: Երիտասարդ տարիներից սկսած Զոհրապը դեմ է եղել միլիտարիզմին, առհասարակ ուժի քաղաքականությանը: Իր կյանքի վերջին տարիներին գրած «Էջեր ուղևորի մը օրագրեն»-ի մեջ նա մերկացնում է իմպերիալիստական պետությունների, հատկապես Գերմանիայի՝ պատերազմի դիմելու քաղաքականությունը, պատերազմի, որ նա համարում է «քսաներորդ դարուն մեծագույն եղեռնը»: Պատերազմը առհասարակ նա համարում էր դիվանագետների և դրամատերերի գործը, նրանց «կազմակերպված միջազգային դավադրությունը»: Զոհրապը լավ էր հասկանում, որ իմպերիալիզմի դարաշրջանում դրամն էր իշխում քաղաքականության վրա: Այդ նույն ճամփորդական ակնարկաշարի մեջ նկարագրելով Փարիզի սակարանը (բորսան) նա գրում է. «...դարավերջին մեհյան, որ իր քուրմերը, իր ծեսերն ունի և ուրկե ելած պատգամներուն առջև թագապսակ գլուխներն անգամ կը խոնարհին»:

Զոհրապը բարձր է գնահատում աշխատավորության մաքառումը պատերազմի դեմ, ասելով՝ «...մինչդեռ դրամի մարդիկ անհագ չարաշահություններու համար արյուն թափելու հարկը կը զգացնեն, աշխատանքի մարդիկ եղբայրասպան մարտին մեջ կը նետվին, կարգիլեն»:

Սկսվում է առաջին համաշխարհային պատերազմը: Զոհրապը հավատարիմ իր սկզբունքներին, նորից ձեռքն է առնում հրապարակախոսի գրիչը՝ պայքարելու համար գերմանական իմպերիալիզմի դեմ, իրավունքը հզորագույնին ըմբռնման դեմ, որոշակի գրելով, որ իմպերիալիզմի դարն անցել է: 1914 թ. (Թուրքիան դեռ պատերազմի մեջ չմտած) նա գրում է իր «Գիրեր պատերազմի դաշտեն» ակնարկ-նամակները, որոնց մեջ որոշակի հայտարարում է. «Եվրոպան և ոչ մեկ ազգի տիրապետությունը կընդունի, ազգերը գերի վարելու, աշխարհակալություն ընելու դարը իսպառ վերջացած է»: Իսկ այդ շարքի վերջին նամակում գրում է. «Մենք կը մարտնչենք լոկ մտայնության մը դեմ որ կըսե՝ իրավունքը հզորագունին»:

Առաջին աշխարհամարտի հավանականության լուրը առնելիս Զոհրապն ասել է. «Վա՜յ հայ ժողովրդին, եթե համաեվրոպական պատերազմ ծագի. թուրքերը՝ իթթիհատեն ղեկավարված՝ անպատճառ կը միանան Գերմանիո, և թրքահայության համար մահացու վտանգ կա այն ատեն»:

Պատերազմը սկսվում է, և մահացու վտանգը ուրվագծվում է հետզհետե: Պոլսում ձերբակալում են հարյուրավոր հայ մտավորականների: Վտանգ է սպառնում նաև Զոհրապին: Նրան հայերը առաջարկում են փախչել, հեռանալ Պոլսից, սակայն նա չի համաձայնում: «Ոչ՛, փախչիլ չեմ կրնար, պետք է, պարտքս է մինչև վերջը պատնեշին վրա կենալ», ասել է նա իրեն փախչել առաջարկողներից մեկին:

Եվ իրոք, Զոհրապը մինչև վերջ մնաց պատնեշի վրա: Այդ է ցույց տալիս այն փաստը, որ Զոհրապը, կյանքը վտանգելով, գնում է կոտորածի գլխավոր կազմակերպիչներից մեկի՝ Թալեաթի և իթթիհատի ընդհանուր քարտուղարի մոտ և բուռն կայրույթով բողոքում հայ մտավորականության ձերբակալման դեմ: Հաջորդ օրը (մայիսի 20-ին) Զոհրապին ձերբակալում են և աքսորում՝ ճանապարհին սպանելու համար: Աքսորի ճանապարհին հայերը ուզում են փրկել իրենց սիրելի Զոհրապին, բայց ապարդյուն:

Զոհրապի կյանքը եղել է մի նվիրում իր ժողովրդին, քանզի այդ մեծ արվեստագետն ու քաղաքացին լիովին համամիտ է եղել այն համոզմանը, որ մարդը աշխարհ է գալիս «պարտք մը կատարելու, քաղելե ավելի հերկելու համար»:

**Մ. ՀՑՈՒՍՅԱՆ**
Դոցենտ

լիզմ: Կարճ ժամանակից հետո Մարքսը ընթանում է այդ պայքարի առաջին շարքերում և որպես «Ռայնիշե Ցայտունգ»-ի խմբագիր, թերթը վարում է ռևոլյուցիոն-դեմոկրատական ուղղությամբ: Հետաքրքիր է Մերինգի այն դիտողությունը, որ թերթի մյուս աշխատակիցները՝ Բաուերը, Քյոպպենը, Ռուգեն, Ռուտենբերգը և ուրիշներ, տարիքով Մարքսից շատ ավելի մեծ լինելով, բոլորն էլ խոր հարգանք էին տածում նրա հրապարակախոսական տաղանդի նկատմամբ և ընդունում երիտասարդ ընկերոջ մտավոր գերազանցությունը:

Սակայն թերթը ռեակցիոն կառավարության կողմից փակվեց, և Մարքսը որոշեց թողնել բանաստեղծների և փիլիսոփաների երկրի հեղձուցիչ մթնոլորտը և կնոջ հետ մեկնել Փարիզ: Այդ կամավոր աքսորը պրուսական կառավարության ջանքերով շուտով վերածվեց պարտադիր, մշտական աքսորի: «Նրա փարիզյան աքսորը,— նկատում է այս առթիվ Մերինգը,— մի տարուց փոքր-ինչ ավելի տևեց, բայց դա նրա սովորելու և թափառումների ամենանշանակալի ժամանակն էր: Այդ մեկ տարին նրան հարստացրեց տպավորություններով ու փորձով և, որ ամենագլխավորն է, նրան տվեց զենքի ընկեր, որի կարիքը նա գնալով ավելի ու ավելի զգում էր այն բանի համար, որ իրականացնի իր կյանքի մեծագույն գործը» (էջ 156):

Իսկապես, 1844 թվականը նշանավոր է այն բեկումով, որ կատարվեց Մարքսի հայացքներում: Քաղաքական բնագավառում Մարքսը ռևոլյուցիոն դեմոկրատիզմի դիրքերից անցնում է պրոլետարական կոմունիզմին, փիլիսոփայական բնագավառում Մարքսը վճռականապես ձեռնամուխ է լինում մատերիալիստական աշխարհայացքի մշակմանը՝ հրաժարվելով հեգելյան իդեալիզմից: Այս շրջադարձը արտացոլվել է Մարքսի այն հոդվածներում, որ տպագրվեցին 1844 թվականին հրատարակված «Գերմանա-ֆրանսիական տարեգիրք» ժուռնալում: Այդ հոդվածներից հատկապես կարևոր նշանակություն ունի «Հեգելյան փիլիսոփայության իրավունքի քննադատության շուրջը: Ներածություն» աշխատությունը, որտեղ Մարքսը խոսում է պրոլետարիատի մասին որպես մի ուժի, որն ընդունակ է կատարելու սոցիալիստական ռևոլյուցիան: Վ. Ի. Լենինը հետևյալ կերպ է գնահատել այդ հոդվածների նշանակությունը. «Այդ ժուռնալում զետեղված իր հոդվածներում Մարքսը հանդես է գալիս արդեն որպես ռևոլյուցիոներ, ազդարարելով «...գոյություն ունեցող ամենի անխնա քննադատությունը» և մասնավորապես «...զենքի քննադատությունը», դիմելով մասսաներին և պրոլետարիատին» (Վ. Ի. ԼԵՆԻՆ, հատ. 21, էջ 45):

Այս շրջանին է պատկանում նաև «1844 թ. տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրեր» աշխատությունը, որը չի հիշատակվում Մերինգի գրքում պարզապես այն պատճառով, որ դա առաջին անգամ ամբողջությամբ հրատարակվել է միայն 1932 թվականին: Չնայած ֆոյերբախյան փիլիսոփայության ուժեղ ազդեցության, այս աշխատությունը նշանավոր է նրանով, որ այստեղ ուրվագծվում են մարքսիզմի հիմնական բաղկացուցիչ մասերը, որոնք հանդիսացան մատերիալիստական նոր աշխարհայացքի ամուր ելակետային դիրքերը:

Այդ նույն ժուռնալում տպագրվեցին նաև Էնգելսի երկու հոդվածները, որոնցից առաջինը՝ «Քաղաքատնտեսության քննադատության ուրվագծերը», ժամանակակից տնտեսական երևույթները դիտում է որպես հետևանք մասնավոր սեփականության տիրապետության: «Դեռ պատանեկան կրքոտությամբ է գրված նրա փոքրիկ հոդվածը,— ասում է Մերինգը,— բայց վկայում է դատողությունների արտակարգ հասունության մասին... Իրոք հանճարեղ էր բուրժուական էկոնոմիկայի բոլոր հակասություններն իրեն իսկական ակունքից՝ մասնավոր սեփականությունից դուրս բերելու փորձը» (էջ 166):

Մարքսի և Էնգելսի միաժամանակյա վճռական անցումը իդեալիզմից դեպի մատերիալիզմ և ռևոլյուցիոն դեմոկրատիզմից դեպի կոմունիզմ, որն արտահայտվել էր տպագրված հոդվածներում, ապացուցեց նրանց հայացքների կատարյալ միասնությունը քաղաքական, փիլիսոփայական հիմնական հարցերի շուրջը: Այդ հատկապես պարզվեց 1844 թվականի օգոստոս ամսի վերջերին, նրանց պատմական հանդիպման ժամանակ, որն սկիզբ դրեց նրանց համատեղ գիտական և ռևոլյուցիոն գործունեությանը:

Խոսելով Մարքսի մասին, Մերինգը չէր կարող չխոսել նաև նրա անձնվեր բարեկամ Էնգելսի մասին, ըստ ամենայնի լուսաբանելով նրանց անօրինակ բարեկամության արգասավորությունը ռևոլյուցիոն գործի ու մտքի զարգացման համար: «Իր նմանը չունեցող միություն»,— այդպես է անվանել Մերինգը այդ երկու մեծագույն մտածողների սրտառուչ բարեկամությունը, որը բարձրացրեց գիտական կոմունիզմի դրոշը և ազդարարեց կապիտալիստական աշխարհի անխուսափելի կործանումը: «Երկու բարեկամներն ամբողջովին լուծվում էին ընդհանուր գործի մեջ. յուրաքանչյուրը՝ առանց որևէ տրտունջի կամ սնապարծության, գործի համար ո՛չ թե նույնանման, այլ միատեսակ մեծ զոհաբերություն էր անում» (էջ 362):

Պատմաբանի և հետազոտողի մեծ էրուդիցիան հնարավորություն է տալիս Մերինգին բազմակողմանի լուսաբանելու Մարքսի թուռն կյանքի



ու գործունեության շրջանները՝ սերտորեն շաղկապված միջազգային բանվորական շարժման զարգացման հետ: Գրքի գլուխների և ենթագլուխների պարզ թվարկումը՝ «Փարիզյան աքսոր», «Բրյուսելյան աքսոր», «Կոմունիստների միությունը», «Լոնդոնյան տարագրություն», «Էնգելս—Մարքս», «Ինտերնացիոնալի սկիզբը», «Ինտերնացիոնալի անկումը» և այլն, և այլն, ընթերցողին արդեն իսկ մոտավոր պատկերացում է տալիս ամենալայն շրջանակների մասին, որոնց մեջ պարփակված է ներկա աշխատությունը: Մերինգը հանգամանորեն վերլուծում է Մարքսի այնպիսի աշխատությունները, ինչպիսիք են՝ «Սրբազան ընտանիքը», «Գերմանական իդեոլոգիան», «Փիլիսոփայության աղքատությունը», «Կոմունիստական մանիֆեստը», «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը», «Կապիտալը» և այլն, ցույց տալով նրանց տեղն ու դերը մատերիալիստական դիալեկտիկայի, մարքսիստական աշխարհայացքի զարգացման պրոցեսում:

Նպատակ չունենալով համառոտագրելու Մերինգի մատչելի և գեղեցիկ լեզվով գրած գիրքը, որի ընթերցումը, անկասկած, հաճույք կպատճառի յուրաքանչյուրին, նշենք նաև այն, որ գիրքը օգնում է ընթերցողին՝ պատկերացնելու Մարքսի հանճարեղ անձնավորությունը:

Գրքի էջերից հառնում է այն մարդու կերպարը, որը համապարփակ մտքի, հազվագյուտ ինտելեկտուալ կարողության տեր լինելով՝ օժտված պայծառ, դիալեկտիկական մտածողությամբ, միևնույն ժամանակ ինքնասիրահարված ինքնամփոփության և էժանագին ժողովրդականության կատաղի թշնամի էր՝ անընդունակ եսապաշտության և կեղծավորության: Բայց եթե Մարքսը անողոք էր անձնապաստան պարծենկոտների, տգետների նկատմամբ, ապա, հակառակը, ներողամիտ էր բարեխղճորեն մոլորվողների սխալների նկատմամբ, մեղմ և կարեկից՝ ընկերների հանդեպ:

Ինքնաքննադատականության զգացումը չափազանց զարգացած էր Մարքսի մոտ: «Գուցե երբեք,— ասում է Մերինգը,— չեն եղել ինքնաքննադատության մեջ այնքան անողոք կերպով անկեղծ քաղաքագետներ, ինչպես Մարքսն ու Էնգելսն էին: Նրանք միանգամայն ազատ էին այն անհիմն համառությունից, որը, հակառակ ամենադառն հուսախաբության, այնուամենայնիվ, աշխատում է շարունակել ինքնախաբեությունը, երևակայելով, որ իրավացի դուրս կգար, եթե այս կամ այն բանը կատարվեր այլ կերպ, քան դա փաստորեն կատարվել էր: Նրանք ազատ էին նաև ամեն մի էժանագին իմաստուն բացասումից, ամեն մի պարզունակ պեսիմիզմից. նրանք պարտությունից դասեր էին քաղում, որպեսզի ուժեղացրած եռանդով նորից ձեռնամուխ լինեն հաղթության նախապատրաստմանը» (էջ 301):

Մերինգը նշում է Մարքսի բացառիկ աշխատասիրությունն ու անօրինակ բարեխղճությունը. նա ընդունակ էր աշխատել գիշեր ու ցերեկ, չնայած առողջության վիճակին և կյանքի անասելի ծանր պայմաններին: «...Գիտելիքների անհագ ծարավը,— գրում է Մերինգը,— ստիպում էր նրան արագ կերպով նետվել ամենադժվարին պրոբլեմների վրա, իսկ անողոք ինքնաքննադատությունը խանգարում էր նրան նույն արագությամբ էլ հաղթահարել դրանք» (էջ 70): Քանի՛, քանի անգամ Էնգելսը փորձել է ազդել Մարքսի վրա, գտնելով, որ նրա արտակարգ բարեխղճությունը կարող է ձգձգել աշխատանքի ավարտումը, բայց վերջը՝ ստիպված, եզրակացրել է. «Քանի դեռ քեզ մոտ չկարդացված կմնա թեկուզ մեկ գիրք, որը դու կարևոր ես համարում, դու գրելու չես ձեռնարկի» (էջ 390):

Մարքսը աշխատել և ստեղծագործել է կյանքի ամենադժվարին պայմաններում: Հոգսը, կարիքը անբաժան են եղել Մարքսի ընտանիքից և միայն Էնգելսի անձնվեր օգնության շնորհիվ Մարքսը կարողացել է ավարտել իր հիմնական աշխատությունը՝ «Կապիտալը»:

Մեծ մարդկանց կյանքի պատմությունը միշտ էլ եղել է մարտիրոսության պատմություն, և այս ճշմարտությունը ամենից շատ հաստատվել է ամենահանճարեղ մարդու՝ Մարքսի կյանքի օրինակով: Փարիզյան աքսորից սկսած Մարքսը շարունակ պայքարել է ճնշող կարիքի դեմ, հաճախ ստիպված լինելով ընդհատելու իր գիտական աշխատանքը հանապազօրյա հացը վաստակելու համար: Մինչև իր կյանքի վերջը Մարքսին չհաջողվեց իր համար քիչ թե շատ տանելի գոյավիճակ ապահովել բուրժուական հասարակության մեջ: Մարքսը հիանալի հասկանում էր, որ բուրժուական հասարակությունը չի կարող երախտապարտ լինել մի մարդու, որը գուշակում և նախապատրաստում է այդ հասարակության մոտալուտ կործանումը, մահացու հարված հասցնում սեփականատիրության հիմքերին, բայց նա մերժում էր կոմպրոմիսային ուղին և այսպիսի դեպքերում սիրում էր կրկնել մեծ ֆլորենտացու հպարտ խոսքերը. «Գնա քո ճանապարհով, և թող մարդիկ ինչ ուզում են ասեն»:

Անողոք կարիքը չէր կարող նզմել այնպիսի հսկային, ինչպիսին Մարքսն էր, որը ամենադաժան պայմաններում իսկ, մեծ ռևոլյուցիոներին հատուկ կրքոտությամբ, անզիջում հետապնդում էր իր թշնամիներին. «Դուք ավելի լավ կգնահատեք բրոշյուրի հումորը (խոսքը «Մերկացումներ կոմունիստների Քյոլնի դատավարության մասին» բրոշյուրին է վերաբերում, որ նոր





50 տոկոսով։ ՍՍՌՄ-ի տեխնիկական օգնությամբ Ինդոնեզիայում կառուցվելու են սուպերֆոսֆատային պարարտանյութերի գործարան՝ տարեկան 100 հազար տոննա կարողությամբ, 660 կմ. երկարությամբ ավտոմոբիլային ճանապարհներ Կալիմանտան կղզում։ 100 հազար տեղանոց ստադիոն Ջակարտայում։ Կազմակերպվելու են բրինձ արտադրող երկու մեքենայացված տնտեսություններ, յուրաքանչյուրը 10 հազար հեկտար տարածությամբ և այլն։ Սովետական և ինդոնեզական մասնագետները համագործակցում են նաև ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու ասպարեզում։

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա: ՍՍՌՄ-ի և ՄԱՌ-ի տնտեսական համագործակցության վառ օրինակ է Ասուանի բարձր ամբարտակի կառուցումը, որը հնարավորություն կտա 800 հազար հեկտարով ավելացնելու մշակվող հողատարածությունը։ Այդտեղ կառուցվում է նաև 2 միլիոն կիլովատ հզորությամբ էլեկտրակայան, որի շնորհիվ էլեկտրաէներգիայի արտադրությունը երկրում մի քանի անգամ կավելանա։ Միաժամանակ, Սովետական Միության տեխնիկական օգնությամբ, նախատեսված է կառուցել կամ ընդլայնել տնտեսության տարբեր ճյուղերի մոտ 100 օբյեկտ։ Այդ թվում՝ մի քանի մետալուրգիական գործարան, 6 մեքենաշինական գործարան, քիմիական և նավթային արդյունաբերության 12 ձեռնարկություն, նավաշինարան, սննդի և տեքստիլ արդյունաբերության 3 ձեռնարկություն և այլն։ ՄԱՌ-ը Արևելքի պետություններից առաջինն է, որին ՍՍՌՄ-ն օգնել է ատոմային էներգիան օգտագործելու խաղաղ նպատակներով։

Աֆղանստան: Սովետական կազմակերպությունների օգնությամբ և նախագծերով 1957—1960 թթ. ընթացքում Աֆղանստանում կառուցվել և շահագործման են հանձնվել 15 օբյեկտներ։ 1957 թվականին Քաբուլում շահագործման հանձնըվեց երկրում առաջին հացի կոմբինատը։ Կառուցվել են ասֆալտ-բետոնային գործարան, նավթի 9 բազա, Խանաբադ գետի վրա՝ կամուրջ, Կզըլ-Կալայում՝ Փյանջ գետի վրա նավահանգստի առաջին հերթը և այլն։ ՍՍՌՄ-ի օգնությամբ Աֆղանստանում կառուցվող առավել խոշոր օբյեկտներից են՝ Ջալալաբադի 75 կմ. երկարությամբ ոռոգացիոն ջրանցքը, Պուլի-Խումրիի հիդրոկայանները և Նագլուի հիդրոէլեկտրակայանը, Քուշկա—Հերաթ—Քանդագար գծով, ինչպես նաև Հինդուկուշի լեռնաշղթայի վրայով անցնող ավտոմոբիլային ճանապարհները։ Սովետական Միության օգնությամբ Քաբուլում կառուցվել է երկրում առաջին ավտովերանորոգման գործարանը։

Իրաք: Իրաքում ՍՍՌՄ-ի տեխնիկական օգնությամբ կառուցվելու են՝ 35 արդյունաբերական և այլ օբյեկտներ։ Երկրի էկոնոմիկայի զարգացման համար առանձնապես մեծ նշանակություն կունենա մետալուրգիական գործարանի, Բասրայի ազոտային պարարտանյութերի և Կիրկուկի ծծմբի և ծծմբաթթվի գործարանների կառուցումը։ Բացի այդ, կառուցվելու են գյուղատնտեսական մեքենաների, էլեկտրատեխնիկական և էլեկտրալամպերի գործարաններ, թեթև արդյունաբերության ձեռնարկություններ (բամբակե գործվածքների կոմբինատ, գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկա, կարի գործարան և այլն)։ Սովետական կազմակերպությունները Իրաքին օգնում են գյուղատնտեսության զարգացման գործում, ինչպես նաև երկրաբանական-հետախուզական աշխատանքներում։

Ցեյլոն: ՍՍՌՄ-ը կօգնի կառուցելու արդյունաբերական ձեռնարկություններ և օբյեկտներ, այդ թվում՝ մետալուրգիական, ավտոդողերի և այլ գործարաններ։ Կմաքրվեն ջունգլիները, որը հնարավորություն կտա ընդլայնելու բամբակի և շաքարեղեգնի ցանքատարածությունները։ Արդեն մշակված են Մալվաթու-Օյա գետի վրա հիդրոտեխնիկական կառուցվածքների շինարարության նախագծերը։

Բիրմա: ՍՍՌՄ-ը կառուցել և որպես նվեր Բիրմայի ժողովրդին է հանձնել Ռանգունի տեխնոլոգիական ինստիտուտը (1000 ուսանողի և 100 ասպիրանտի համար). ավարտվում են Տաունջի քաղաքի հոսպիտալի և Ռանգունի հյուրանոցի շինարարական աշխատանքները։

Կամբոջա: Որպես նվեր Սովետական Միությունը Պնոմ-Պենում կառուցել է 500 մահճակալանոց հոսպիտալ՝ պոլիկլինիկայով։ Սովետական մասնագետները Կամբոջային օգնում են երկրաբանական-հետախուզական աշխատանքներում, հիդրոէլեկտրակայանների շինարարության գործում։

Նեպալ: Սովետական Միությունը տեխնիկական անհատույց օգնություն ցույց կտա շաքարի գործարանի, ծխախոտի ֆաբրիկայի, հիդրոէլեկտրակայանի և այլ օբյեկտների կառուցման համար։

Եմեն: ՍՍՌՄ-ի տեխնիկական օգնությամբ կառուցվում է Խոդեյդա նավահանգիստը Կարմիր ծովի ափին։

Թուրքիա: Սովետական կազմակերպություններն օգնում են Ստամբուլի շրջանում կառուցելու ապակու խոշոր գործարան։

Գվինեա: Սովետական Միությունը տեխնիկական օգնություն է ցույց տալիս արդյունաբերական մի շարք ձեռնարկությունների (ցեմենտի, պահածոների, փայտամշակման գործարաններ, կաշվի-կոշկեղենի կոմբինատ, սառցարան) շինարարական աշխատանքներին, ինչպես նաև պոլի-

